ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ



3
ՄԱՐՏ

ԵՐԵՎԱՆ 1958

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 3
ՄԱՐՏ
1958 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXV
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ԱՌԱՋՆՈՐԴ — *Կոլտնտեսային կարգի զարգացման նոր էտապը* . 3
Հ. ՄԻՐԶՈՅԱՆ — *Պրոլետարիատի մեծ ուսուցիչը և առաջնորդը* . . 9
Բ. ՍԱՐԳԻՍՈՎ — *Կադրերի բանիմաց աշխատանքը մեր հաջողությունների գրավականն է* . . . . . . . . . . 21
Ս. ՆԱԶԱՐՅԱՆ — *Դրայզերը ամերիկյան ռեակցիոն մամուլի դեմ* . 33
Ալ. ՍԱՐԳՍՅԱՆ—*Մեր օրերի Աֆրիկան* . . . . . . . 43
Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ — *Ժողովրդական տնտեսության զարգացման հարուստ աղբյուրը* . . . . . . . . . 53
Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ — *Արհեստագործական կոոպերացիայի վերակառուցման առթիվ* . . . . . . . . . 63
Ա. ՄԱՐԴՈՅԱՆ — *Պարտիական կազմակերպությունը և գյուղատնտեսության ռեզերվների օգտագործումը* . . . . . . . 69
Դ. ԳԱՍՊԱՐՅԱՆ — *Արտաշատը կուլտուրական վերելքի ճանապարհին* . 77
Ն. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ — *Վերակառուցումից հետո* . . . . . 85
Ա. ՓԻՐՈՒԶՅԱՆ — *Սովետական առևտրի կատարելագործման համար* . 89

### ՄՏՍ ԿԱՅԱՆՆԵՐԸ ՎԵՐԱԿԱԶՄԵԼՈՒ ՀԱՐՑԻ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ

Կ. ՄՈՎՍԻՍՅԱՆ — *Խոշոր քայլ սոցիալիստական գյուղատնտեսության մեջ*։ Ե. ՄԱՐԳԱՐՅԱՆ — *Իմաստուն որոշում*։ Յ. ԽԱՉԱՏՐՅԱՆ — *Մեր առաջարկությունները*։ Մ. ԱԴԱՄՅԱՆ — *Կարևոր միջոցառումներ* . 96

### ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ — *Աշխատանքի արտադրողականության հաշվարկումը* 106

---

Ա. ԱԴՈՅԱՆ — *Խոսենք ըստ էության* . . . . . . . . 114

---

## СОДЕРЖАНИЕ


| | Стр. |
|---|---|
| **Передовая** — Новый этап развития колхозного строя | 3 |
| **Г. Мирзоян** — Великий учитель и вождь пролетариата | 9 |
| **Б. Саркисов** — Умелая работа кадров — залог наших успехов | 21 |
| **С. Назарян** — Драйзер против американской реакционной печати | 33 |
| **Ал. Саркисян** — Африка наших дней | 43 |
| **А. Вартанян** — Богатый источник развития народного хозяйства | 53 |
| **С. Оганесян** — По поводу реорганизации промкооперации | 63 |
| **А. Мардоян** — Партийная организация и использование резервов сельского хозяйства | 69 |
| **Д. Гаспарян** — Арташат на пути культурного подъема | 77 |
| **Н. Киракосян** — После реорганизации | 85 |
| **А. Пирузян** — За усовершенствование советской торговли | 89 |

**Всенародное обсуждение вопроса реорганизации МТС**

**К. Мовсисян** — Крупный шаг в социалистическом сельском хозяйстве, **Е. Маргарян** — Мудрое решение, **Ц. Хачатрян** — Наши предложения, **С. Адамян** — Важные мероприятия . . . . . . . 96

**Консультация**

**В. Неркарарян** — Вычисление производительности труда . . . 106

**А. Адоян** — Поговорим по существу . . . . . 114




# ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ ԿԱՐԳԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ԷՏԱՊԸ

Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումի որոշումը և այդ առթիվ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները գտնվում են մեր ամբողջ հասարակայնության ուշադրության կենտրոնում։ Սովետական մարդիկ մեծագույն գոհունակությամբ ընդունեցին այդ կարևորագույն փաստաթղթերը, որոնք նոր, փայլուն հեռանկարներ են բացում կոլտնտեսությունների զարգացման, արտադրողական ուժերի առավել ռացիոնալ օգտագործման և գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշման մեջ նշված է, որ պարտիայի XX համագումարի պատմական որոշումների հետևողական կենսագործման շնորհիվ վերջին շրջանում նոր, խոշոր հաջողություններ են ձեռք բերվել սոցիալիստական էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման, աշխատավորների բարեկեցության հետագա վերելքի գործում։ Ինչպես և նախկինում, առջևից ընթանում է ՍՍՌՄ արդյունաբերությունը և, առաջին հերթին, ամբողջ ժողովրդական տնտեսության հիմքը կազմող ծանր ինդուստրիան։

Արդյունաբերության հետ միասին հաջողությամբ զարգանում է նաև սոցիալիստական գյուղատնտեսությունը։ ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումից հետո ծավալված համաժողովրդական պայքարը հանգեցրեց հողագործության և անասնաբուծության մթերքների արտադրության զգալի ավելացման, նշանավորեց կոլտնտեսային կարգի զարգացման նոր փուլի սկիզբը։ Խամ ու խոպան հողերի մեծ տարածությունների յուրացման շնորհիվ վերջին չորս տարում, նախորդ քառամյակի համեմատությամբ, երկրում հացահատիկի համախառն բերքը ավելացավ 27 տոկոսով։ Ավելացել է նաև շաքարի ճակնդեղի, բամբակի, կարտոֆիլի, բանջարեղենի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվությունը։

Պարտիայի և ժողովրդի հաստատակամ ջանքերով հաղթահարվեց անասնաբուծության տևական ետ մնալը։ 1953 թվականից մինչև 1957 թվականը խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 10,9 միլիոն գլխով, խոզերինը՝ 11 միլիոնով, ոչխարներինը՝ ավելի քան 20 միլիոնով։ Կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում մսի արտադրությունն աճել է 80 տոկոսով, իսկ կաթի արտադրությունը՝ ավելի քան երկու անգամ։ Այդ հաջողությունների հիման վրա երկրում կազմակերպված պայքար է տարվում մոտակա տարիներս բնակչության մեկ շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու համար։

Կոլտնտեսային էկոնոմիկայի վերելքի հիման վրա աճել են կոլտնտեսությունների եկամուտները, նրանց անբաժանելի ֆոնդերը, բարձրացել է կոլտնտեսականների աշխօրերի վարձատրությունը։ Չորս տարում կոլտնտեսություն-

ներում անբաժանելի ֆոնդն ավելացել է 35,5 միլիարդ ռուբլով, հասնելով 98,6 միլիարդ ռուբլու։

Ձեռք բերված այդ հաջողությունների գործում հսկայական դեր խաղացին գյուղատնտեսության պլանավորման նոր կարգը, կոլտնտեսությունները բանիմաց ղեկավարներով ու մասնագետներով ապահովելը, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը, մեխանիզատորական կադրերի աճը, և, հատկապես, գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազայի ամրապնդումը։ Պարտիայի ու կառավարության հոգատարության շնորհիվ վերջին չորս տարում երկրի գյուղատնտեսությունն ստացավ 908 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 293 հազար հացահատիկային կոմբայն, 467 հազար բեռնատար ավտոմեքենա և այլն։

Ժամանակակից պայմաններում կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը նոր, ավելի բարձր մակարդակի է հասել։ Խոշորացված կոլտնտեսությունները վերջին տարիներս դարձել են տնտեսապես ուժեղ, բազմաճյուղ, տեխնիկապես զինված տնտեսություններ, որոնք անհամեմատ լավ են օգտագործում ներքին ռեզերվները, բարձրացնում են աշխատանքի արտադրողականությունը և ընդլայնում գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Կոլտնտեսային կարգի ստեղծման ու ամրապնդման, գյուղատնտեսության տեխնիկական հագեցման, բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի ամրապնդման գործում պատմական հսկայական դեր խաղացին մեքենա-տրակտորային կայանները։ Դրանք հանդիսացան քաղաքական ու կազմակերպող այն մեծ ուժը, որի շուրջը գյուղացիները միավորվում էին կոլտնտեսություններում և համոզվում խոշոր մեքենայական գյուղատնտեսության առավելությունների մեջ։ Իրենց տրամադրության տակ եղած հարուստ տեխնիկայով ու որակյալ կադրերով սպասարկելով կոլտնտեսություններին, ՄՏ կայանները մեծ աշխատանք կատարեցին կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու գործում և այլն։

Սակայն պետք է նշել, որ «ներկա պայմաններում,— ասված է ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշման մեջ,— երբ կոլտնտեսությունների մեծամասնությունը կազմակերպական-տնտեսական տեսակետից ամրապնդվել է, երբ կոլտնտեսությունների էկոնոմիկան զգալիորեն բարձրացել է, ՄՏ կայանների միջոցով կոլտնտեսությունների արտադրա-տեխնիկական սպասարկման՝ գոյություն ունեցող ձևը այլևս չի համապատասխանում գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման պահանջմունքներին։ Ավելին. այդ ձևը շատ դեպքերում սկսում է արգելակել առաջավոր կոլտնտեսությունների հետագա վերելքը, կաշկանդել կոլտնտեսային կադրերի և բոլոր կոլտնտեսականների նախաձեռնությունը կոլտնտեսային արտադրության ռեզերվներն ավելի լավ օգտագործելու ասպարեզում։ Ավելի ու ավելի մեծ չափերով են երևան գալիս այն դրության բացասական հետևանքները, երբ միևնույն հողում տնտեսությունը վարում են սոցիալիստական երկու ձեռնարկություններ՝ կոլտնտեսությունը և ՄՏ կայանը, մի բան, որ հաճախ ծնում է դիմազրկություն արտադրության կազմակերպման ասպարեզում և նվազեցնում պատասխանատվությունը բերքատվության բարձրացման համար, առաջ է բերում զուգահեռաբար գործող կառավարչական ապարատի պահպանման



մեծ և ավելորդ ծախսեր։ Այդ պայմաններում մեքենա-տրակտորային կայաններում կուտակվում է նրանց համար ավելորդ մեծ քանակությամբ տեխնիկա, անարտադրողաբար են օգտագործվում մեքենաները»։

Հաշվի առնելով այդ բոլորը և ելնելով գյուղատնտեսության վերելքի ու կոլտնտեսային կարգի հետագա զարգացման շահերից, պարտիայի Կենտրոնական Կոմիտեն նպատակահարմար է գտնում փոխել կոլտնտեսությունների արտադրա-տեխնիկական սպասարկման գոյություն ունեցող կարգը և աստիճանաբար վերակազմել ՄՏ կայանները, որոնք, դրական մեծ դեր խաղալով, արդեն շատ բանով սպառել են իրենց հիմնական ֆունկցիաները։

Այժմ, երբ գյուղում արմատապես փոխվել է սոցիալ-տնտեսական իրադրությունը, երբ կոլտնտեսությունները զարգացած սոցիալիստական ձեռնարկություններ են, նրանց մեծ մասը ՄՏ կայանների ղեկավարության կարիք չի զգում։ Բացի այդ, երբ կոլտնտեսությունների մեծ մասն ի վիճակի է ձեռք բերելու և ավելի արտադրողաբար օգտագործելու գյուղատնտեսական մեքենաները, միանգամայն նպատակահարմար է տրակտորները, կոմբայնները, կալսիչները և մյուս մեքենաները անմիջականորեն վաճառել կոլտնտեսություններին։ Դա հնարավորություն կտա ավելի լավ օգտագործելու գյուղատնտեսական տեխնիկան, գյուղատնտեսության մեջ արագացնելու տեխնիկական առաջադիմությունը, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը և իջեցնելու նրանց ինքնարժեքը։ Ահա թե ինչու ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը գտնում է, որ նկատի ունենալով շրջանների ու կոլտնտեսությունների առանձնահատկությունները, տարբեր ժամկետներում ՄՏ կայանները պետք է վերակազմել նորոգման տեխնիկական կայանների, որոնք ապահովելու են տրակտորների և մյուս մեքենաների նորոգումը, կոլտնտեսությունների տեխնիկական սպասարկումը, կոլտնտեսություններին ու սովետական տնտեսություններին նոր տեխնիկայի, պահեստամասերի, վառելիքի, պարարտանյութերի, թունաքիմիկատների և այլ նյութերի մատակարարումը (վաճառքի միջոցով)։

Պլենումի որոշման մեջ նշված է, որ լենինյան կոոպերատիվ հանճարեղ պլանի հիման վրա իրականացված՝ գյուղատնտեսության կոլեկտիվացումից հետո այդ միջոցառումների կենսագործումը նոր, բացառիկ կարևոր և խոշոր քայլ կլինի սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում։

ՄՏ կայանների նախատեսվող վերակազմումը շատ մեծ ու պատասխանատու գործ է։ Այստեղ շտապողականությունն ու անմտածված աշխատանքը կարող են մեծ վնաս հասցնել։ Պահանջվում է այս հարցին առավել զգույշ մոտեցում ունենալ, հաշվի առնելով շրջանների առանձնահատկությունները։ Կոլտնտեսությունների մեծ մասը, որոնք տնտեսապես ուժեղ են, կարող են տեխնիկան միանգամից ձեռք բերել ՄՏ կայաններից։ Իսկ այն շրջաններում, որտեղ բոլոր կոլտնտեսությունները դեռ հնարավորություն չունեն տրակտորներ և այլ մեքենաներ ձեռք բերելու, իսկ որ գլխավորն է, չեն կարող ճիշտ օգտագործել այդ տեխնիկան, պետք է ժամանակավորապես պահպանվի ՄՏ կայանների միջոցով այդպիսի կոլտնտեսությունների արտադրա-տնտեսական սպասարկման գոյություն ունեցող կարգը։ ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական և սովետական ղեկավար օրգաններին հանձնարարել է առանձին շրջանների ու կոլտնտեսությունների էկոնոմիկայի խոր ուսումնասիրման հիման վրա որոշել, թե ո՛ր կոլտնտեսություններն իրենց տնտեսական հնարավորություններով

ի վիճակի են այս տարի գնելու տրակտորներ և այլ մեքենաներ և տնտեսա-
բար օգտագործելու դրանք, թե ո՛ր կոլտնտեսություններին ավելի շատ ժամա-
նակ է հարկավոր տեխնիկա ձեռք բերելու համար և ո՛ր կոլտնտեսություններ
համար նպատակահարմար է ժամանակավորապես պահպանել ՄՏ կայաններ
միջոցով արտադրա-տեխնիկական սպասարկման գոյություն ունեցող կարգը։

Չափազանց կարևոր նշանակություն ունի կոլտնտեսություններին տրակ-
տորների, կոմբայնների և մյուս մեքենաների վաճառքի կարգի մշակումը։ Դա
ինչ-որ սոսկ տեխնիկական գործ չէ։ Պետք է նկատի ունենալ, որ տեխնիկայի
վաճառքը կոլտնտեսություններին՝ տնտեսական-քաղաքական մեծ նշանակու-
թյուն ունեցող հարց է, որի լուծումը շոշափում է պետության ու միլիոնավոր
կոլտնտեսությունների շահերը։

Ընկեր Խրուշչովն իր զեկուցման թեզիսներում հանգամանորեն խոսում է
համաժողովրդական և կոլտնտեսային սեփականության փոխհարաբերության
հարցի մասին և ցույց է տալիս, որ չպետք է վախենալ կոլտնտեսային սեփա-
կանության ուժեղացումից։ Համաժողովրդական սեփականությունը սեփակա-
նության բարձրագույն ձևն է, որը, սակայն, չի կարելի հակադրել կոոպերատիվ
սեփականության։ Սեփականության այդ երկու ձևն էլ սոցիալիստական են և
ծառայում են կոմունիզմի կառուցման։ «Մեր առջև խնդիր է դրված,—ասում է
ընկեր Խրուշչովը,— համաժողովրդական սեփականության հետ միասին զար-
գացնել և ամրապնդել կոլտնտեսային սեփականությունը։ Դա համապատաս-
խանում է ժողովրդի շահերին, կոմունիզմի կառուցման շահերին։ Հետագա-
յում, կոլտնտեսությունների հանրային հարստության աճի համեմատ, նրանց
սեփականությունը կհասցվի համաժողովրդական սեփականության մակարդա-
կին։ Որքան մենք արագ զարգացնենք սոցիալիստական գյուղատնտեսության
արտադրողական ուժերը, այնքան արագ կհասնի այն պահը, երբ, ըստ էու-
թյան, կվերանա տարբերությունը համաժողովրդական ու կոլտնտեսային
սեփականության միջև։ Այս տեսանկյունով էլ պետք է քննության առնել ՄՏ
կայանների տեխնիկայի վաճառքը կոլտնտեսություններին, որպես մի միջո-
ցառում, որը կոչված է ամրապնդելու կոլտնտեսային սեփականությունը՝ հո-
գուտ ժողովրդի»։

ՄՏ կայանները վերակազմելու կապակցությամբ քննության են առնվում
գյուղատնտեսական մթերքների մթերումների մի քանի հարցեր։ Ի տարբերու-
թյուն մինչև օրս ՄՏ կայանների կատարած աշխատանքի դիմաց կոլտնտե-
սություններից ստացված բնավարձի, հարց է դրվում, որ պետությունը կոլ-
տնտեսություններից մթերքներ ստանա մեքենաների, պահեստամասերի, վա-
ռելիքի, պարարտանյութերի դիմաց և այլն։ Ընդսմին երկիրը պետք է ստա-
նա առաջվանից ոչ թե քիչ, այլ շատ գյուղատնտեսական մթերքներ։

ՄՏ կայանների նախատեսվող վերակազմումը լուրջ խնդիրներ է դնում
պարտիական և սովետական օրգանների առջև։ Պարտիական և սովետական
կազմակերպությունները ՄՏ կայանները վերակազմելու կապակցությամբ,
բնականաբար, հիմնական ուշադրությունը կենտրոնացնելու են գյուղատնտե-
սական տեխնիկա ունեցող կոլտնտեսությունների անմիջական ղեկավարման,
աշխատանքը նոր ձևով կազմակերպելու և նրանց գործնական օգնություն
ցույց տալու վրա։ Բայց պետք է նկատի ունենալ, որ դեռ կան ետ մնացող
կոլտնտեսություններ, որոնց վրա առաջվանից առավել մեծ ուշադրություն
պետք է դարձնել և նրանց հասցնել առաջավորների մակարդակին։ ՄՏ կա-



յանների վերակառուցումից հետո պարտիայի շրջկոմները և շրջգործկոմները
պետք է ամեն օր խորը թափանցեն նորոգման տեխնիկական կայանների գոր-
ծունեության մեջ, վերահսկեն նրանց աշխատանքը և ապահովեն այն բոլոր
խնդիրների կատարումը, որոնք դրվում են այդ կայանների առջև։

Ներկայումս ՄՏ կայաններում աշխատում են 186 հազար ղեկավար ու
ինժեներա-տեխնիկական անձնակազմ և մոտավորապես մեկ ու կես միլիոն
մեխանիզատոր, որոնց մեծամասնությունը ՄՏ կայանները վերակազմելու
ընթացքում աստիճանաբար կմտնեն կոլտնտեսությունները։ Պարտիական
կազմակերպությունները պետք է հոգ տանեն այդ կադրերի մասին և նրանց
տեղաբաշխեն կոլտնտեսային արտադրության վճռական տեղամասերում։ Առա-
ջին հերթին անհրաժեշտ է լավագույն կադրերով ապահովել ետ մնացող
կոլտնտեսությունները։

ՄՏ կայանները վերակազմելու կապակցությամբ առանձնահատուկ ուշա-
դրություն պետք է դարձնել շրջգործկոմները որակյալ կադրերով ապահովե-
լու, կոլտնտեսությունների սկզբնական պարտիական կազմակերպությունների
դերը բարձրացնելու, գյուղում կատարվող պարտիական քաղաքական-կազմա-
կերպական աշխատանքն ուժեղացնելու, կոլտնտեսականների և, առանձնապես,
գյուղական երիտասարդության դաստիարակությունը արմատապես բարելա-
վելու և նման մի շարք կարևոր խնդիրների վրա, որոնց հաջող կատարումը
լուրջ խթան կհանդիսանա սոցիալիստական գյուղատնտեսության հետագա
շեշտակի վերելքի գործում։

Յուրաքանչյուր նոր խոշոր միջոցառում անցկացնելիս Կոմունիստական
պարտիան դիմում է ժողովրդին, խորհրդակցում է նրա հետ, հաշվի առնում
նրա կարծիքը։ Դա հասկանալի է։ Լինելով երկրի տերը, ժողովուրդը իր հա-
րազատ պարտիայի ղեկավարությամբ մասնակցում է պետության կառավար-
մանը, առաջարկներ է անում այս կամ այն հարցի կապակցությամբ, որը մեծ
օգուտ է բերում մեր սոցիալիստական Հայրենիքին։ Ահա թե ինչու ՍՄԿՊ
Կենտկոմի պլենումը որոշել է. «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման
և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին» ՍՍՌՄ Գերա-
գույն Սովետի սեսիայում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները
դնել համաժողովրդական քննարկման։ ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլե-
նումը հաստատ վստահություն է հայտնել, որ կոլտնտեսականները և կոլտըն-
տեսուհիները, ՄՏ կայանների ու սովետական տնտեսությունների աշխատող-
ները, մեր երկրի բոլոր աշխատավորները ակտիվորեն կմասնակցեն կոլտնտե-
սային կարգի հետագա զարգացման և սոցիալիստական գյուղատնտեսության
նոր վերելքի միջոցառումների համաժողովրդական քննարկմանը և գործնական
իրականացմանը։ Կոմունիստական պարտիայի կողմից կազմակերպվող՝ գյու-
ղատնտեսության նոր վերելքը մեր երկրի եւ մեկ կարևոր հաղթանակը կլինի
կապիտալիզմի հետ սոցիալիզմի խաղաղ տնտեսական մրցության մեջ, կո-
մունիստական շինարարության խնդիրների լուծման գործում։

Արձագանքելով պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշմանը,
ռեսպուբլիկայի աշխատավորները ջերմորեն ողջունում են կոլտնտեսային կար-
գի հետագա զարգացման ուղղությամբ պարտիայի ձեռնարկած այդ կարևո-
րագույն միջոցառումը և ակտիվորեն մասնակցում են թեզիսների համաժողո-
վրրդական քննարկմանը։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների, ՄՏ կայան-
ների, սովետական տնտեսությունների, արդյունաբերական ձեռնարկություն-

ների և կառույցների, գիտական կազմակերպությունների, ուսումնական հաստատությունների և հիմնարկների ընդհանուր ժողովներում, ինչպես նաև թերթերի ու ամսագրերի էջերում այժմ քննարկվում են ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսները։ Քննարկման ընթացքում աշխատավորները հանդես են գալիս մի շարք առաջարկություններով։ Հենց մեր ամսագրի այս համարում տպագրված Էջմիածնի կոլտնտեսության նախագահ Ն. Մարգարյանի, Մարտունու շրջանի ՄՏ կայանի դիրեկտոր Ց. Խաչատրյանի, պարտիայի Ախուրյանի շրջկոմի քարտուղար Կ. Մովսիսյանի, Ախտայի շրջանի Ալափարս գյուղի կոլտնտեսության № 2 բրիգադայի բրիգադավար Մ. Ադամյանի ելույթները ցույց են տալիս, թե աշխատավորները ինչպիսի մեծ ակտիվությամբ են մասնակցում թեզիսների համաժողովրդական քննարկմանը։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշման համաձայն պարտիայի քաղկոմները, շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները պարտավոր են աշխատավորներին լայնորեն պարզաբանել ՄՏ կայանների նախագծվող վերակառուցման իմաստն ու նշանակությունը, ամենուրեք կազմակերպեն թեզիսների համաժողովրդական քննարկումը։ Պարտիական և սովետական օրգանները պետք է ուշի-ուշով ուսումնասիրեն և ընդհանրացնեն աշխատավորների բոլոր կոնկրետ առաջարկները, որպեսզի գտնեն կոլտնտեսային կարգի հետագա զարգացման, երկրում գյուղատնտեսական մթերքների առատության ստեղծման շահերի օգտին կոլտնտեսությունների նյութա-տեխնիկական սպասարկումը վերակառուցելու առավել նպատակահարմար կազմակերպական ձևեր։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների համաժողովրդական քննարկումը ամենուրեք առաջ է բերել աշխատանքային խանդավառություն։ Պարտիական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների խնդիրն է՝ բոլոր աշխատավորների ստեղծագործական եռանդը և ակտիվությունն ուղղել պետական պլանների կատարման ու գերակատարման նպատակին, բոլոր կոլտնտեսականների, կոլտնտեսուհիների, ՄՏ կայանների ու սովետական տնտեսությունների աշխատողների ուժերը մոբիլիզացնել գարնանացանը հաջող անցկացնելու և գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման պարտավորությունները պատվով կատարելու համար։

Ամենայն համոզվածությամբ կարելի է ասել, որ Կոմունիստական պարտիայի կողմից կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և ՄՏ կայանները վերակազմելու միջոցառումները ջերմ պաշտպանություն կգտնեն ամբողջ սովետական ժողովրդի կողմից։ Այդ միջոցառումների իրականացումը մի նոր խոշոր քայլ կլինի սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ասպարեզում և կարագացնի մեր երկրի առաջընթացը դեպի կոմունիզմ։

---

# ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ՄԵԾ ՈՒՍՈՒՑԻՉԸ ԵՎ ԱՌԱՋՆՈՐԴԸ

(Կ. Մարքսի մահվան 75-ամյակի առթիվ)

## Հ. ՄԻՐԶՈՅԱՆ

Маркс
раскрыл
истории законы,
Пролетариат
поставил у руля.
В. МАЯКОВСКИЙ

Անցյալ դարի 40-ական թվականների սկզբին Գերմանիայի ռևոլյուցիոն-դեմոկրատական շրջաններում տարածված էր «Շղթայված Պրոմեթևսը» այլաբանական նկարը։ Նկարիչը հունական դիցաբանության հերոսի կերպարանքով պատկերել է Կարլ Մարքսին։ Նա շղթայակապ գամված է տպագրական մեքենային, որը նույնպես շղթայված է։ Անգղը հոշոտում է տիտանի առնական կուրծքը։ Պրոմեթևս-Մարքսը լարել է մկանները՝ փշրելու համար կաշկանդիչ կապանքները···

Մեծ մարտիկի և հանճարեղ մտածողի ռևոլյուցիոն գործունեության արշալույսին կերտված այդ պատկերը իրոք որ սիմվոլիկ է։ Դա վառ կերպով բնութագրում է գիտական կոմունիզմի մեծ հիմնադիր Կարլ Մարքսին, որի տարերքը պայքարն էր, ռևոլյուցիոն պայքարը բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների ազատագրության համար։

Իրավի, մարքսիստական ուսմունքը՝ բանվոր դասակարգի գաղափարախոսությունը, մշակվել է ոչ թե գիտնականի խաղաղ կաբինետում, այլ անհաշտ պայքարում, որ նրա հիմնադիրները իրենց ամբողջ կյանքի ընթացքում մղել են տիրապետող դասակարգերի ռեակցիոն գաղափարախոսության, մանրբուրժուական սոցիալիզմի, բանվորական շարժման թշնամի բազմաթիվ հոսանքների ու թեորիաների դեմ։

Մարքսի հանճարը ծավալեց իր տիտանական ուժերը պատմական մեծ իրադարձություններով հղի մի դարաշրջանում։ Եվրոպայում ծայր էին առնում բուրժուական-դեմոկրատական և ազգային-ազատագրական շարժումները, հասունանում էր 1848 թվականի ռևոլյուցիան։ Դասակարգային պայքարի ասպարեզ էր դուրս գալիս պրոլետարիատը։ Ամբողջ Գերմանիայում ինչպես ահազանգ հնչում էին դարաշրջանի ամենազգայուն բանաստեղծի՝ Հենրիխ Հայնեի շեփորող, մարտաշունչ երգերը։

Եվ ահա ռևոլյուցիոն փոթորիկներով հղի այդ դարաշրջանում երիտասարդ Կարլ Մարքսը հանդես եկավ որպես հրապարակախոս և 1842 թվականին սկսեց աշխատակցել Քյոլնում հրատարակվող «Հռենոսյան Լրագիր» թերթին։ Նրա խիզախ ու համարձակ, մարտական ավյունով լի հոդվածները ուղղված էին Պրուսիայում և ամբողջ Գերմանիայում տիրող ռեակցիայի դեմ։ Շուտով

Մարքսը դառնում է «Հռենոսյան Լրագրի» խմբագիրը և թերթին տալիս է ռևոլյուցիոն-դեմոկրատական ուղղություն։ Մարքսը հենց իր առաջին հոդվածներում վերլուծում է աշխատավորների նյութական ծանր դրությունը և մեծ կրքոտությամբ պաշտպանում «աղքատ, քաղաքականապես և սոցիալապես իրավազուրկ մասսաների» կենսական շահերը։ Աշխատանքը «Հռենոսյան Լրագրում», անմիջական շփումը կյանքի, աշխատավորների լայն զանգվածների հետ, խոշոր նշանակություն ունեցան երիտասարդ հրապարակախոսի հայացքների ձևավորման համար։ Հենց այդ ժամանակ էլ նկատվում է Մարքսի անցումն իդեալիզմից մատերիալիզմին, ռևոլյուցիոն դեմոկրատիզմից՝ կոմունիզմին։

Պրուսական կառավարությունը փակեց լրագիրը։ Մարքսը տեղափոխվեց Փարիզ (1843 թ.), որպեսզի շարունակեր իր հրապարակախոսական գործունեությունը։ 1844 թվականին մի քանի օրով Փարիզ է գալիս Ֆրիդրիխ Էնգելսը, որի հետ Մարքսը ծանոթացել էր դեռևս Գերմանիայում։ Փարիզում սկըսվում է երկու մեծ մարտիկների բարեկամությունը, որը միաձուլում է նրանց ամբողջ կյանքն ու գործունեությունը։ «Հնագույն ավանդությունները,— գրել է Լենինը,— պատմում են բարեկամության զանազան սրտաշարժ օրինակների մասին։ Եվրոպական պրոլետարիատը կարող է ասել, որ նրա գիտությունն ստեղծել են երկու գիտնականներ ու մարտիկներ, որոնց հարաբերությունները գերազանցում են հնադարյան մարդկանց բոլոր ամենասրտաշարժ զրույցներից՝ մարդկային բարեկամության մասին»։

Փարիզում Մարքսը հարստացավ նոր տպավորություններով, քաղաքական պայքարի նոր փորձով։ Մարքսը մոտիկից ծանոթացավ ռևոլյուցիոն մեծ տրադիցիաներ ունեցող այդ հսկայական քաղաքի արվարձանների կյանքին, ամենասերտ կապեր հաստատեց բանվորների ու արհեստավորների հետ, մասնակցելով նրանց ռևոլյուցիոն կազմակերպությունների ժողովներին ու հավաքույթներին։ Նա ուսումնասիրում է սոցիալիստական գրականությունը, ֆրանսիական բուրժուական մեծ ռևոլյուցիայի պատմությունը, բուրժուական քաղաքատնտեսության կլասիկների՝ Ա. Սմիտի, Դ. Ռիկարդոյի, Ջ. Միլլի աշխատությունները։ Այդ շրջանում ավարտվում է Մարքսի վերջնական անցումը իդեալիզմից դեպի մատերիալիզմ և ռևոլյուցիոն դեմոկրատիզմից դեպի կոմունիզմ։ Այդ հողի վրա գնալով ավելի խորացան Մարքսի և իր նախկին համախոհների՝ ձախ հեգելականների տարաձայնությունները։ Շատ չանցած, նա խզեց իր հարաբերությունները նրանց հետ։ Մարքսը հանդես եկավ մի շարք փայլուն հոդվածներով, շարադրելով նոր աշխարհայացքի՝ դիալեկտիկական մատերիալիզմի հիմունքները։ Այդ հոդվածներում Մարքսը բանվոր դասակարգին մոտենալու վճռական քայլ կատարեց։ Դրանք նախ և առաջ մասսաներին, պրոլետարիատին ուղղված բոցաշունչ կոչեր էին «գոյություն ունեցող ամեն ինչի անխնա քննադատությանը», «զենքի քննադատությանը» դիմելու մասին։ Այնուհետև Մարքսը հրապարակեց «Հեգելի իրավունքի փիլիսոփայության քննադատության շուրջը» հայտնի աշխատության ներածությունը և «Նամակները», որտեղ նա մերկացրեց դոգմատիզմը, որը հին փիլիսոփայության, ինչպես նաև ուտոպիական սոցիալիզմի ամենաարատավոր կողմն էր։ Մենք, հայտարարում է Մարքսը, դոկտրինյորներ չենք և չենք մատուցում պատրաստի սխեմաներ ու վճիռներ, որոնք պարտադիր են բոլոր ժամանակ-



ների համար։ Այսպիսով, Մարքսն ընդգծում է, որ գիտական կոմունիզմը ոչ թե դոգմա է, այլ կենդանի, ստեղծագործական մի ուսմունք, որն անհրաժեշտ է շարունակ զարգացնել ու կատարելագործել։

Մարքսը հանդես եկավ «պարտիական որոշակի դիրքավորումից» և ժխտելով կյանքից, մասսաների պրակտիկ պայքարից կտրված հայեցողական թեո-
րիաները, ցույց տվեց, որ իր ուսմունքի գլխավոր առանձնահատկությունը
ռևոլյուցիոն թեորիայի և ռևոլյուցիոն պրակտիկայի օրգանական միասնու-
թյունն է։

«ՄԵՆՔ ՉԵՆՔ ԱՍՈՒՄ ԱՇԽԱՐՀԻՆ՝ ԴԱԴԱՐԻ՛Ր ՊԱՅՔԱՐԵԼՈՒՑ. ՔՈ ԱՄԲՈՂՋ ՊԱՅՔԱՐԸ ԴԱՏԱՐԿ ԲԱՆ Է։ ՄԵՆՔ ՄԻԱՅՆ ՏԱԼԻՍ ԵՆՔ ՆՐԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՃՇՄԱՐԻՏ ԼՈԶՈՒՆԳ»։

Այստեղ Մարքսը հանճարեղ կերպով հիմնավորել է ռևոլյուցիոն թեո-
րիայի դերն ու նշանակությունը պրոլետարիատի դասակարգային պայքարում։
Մարքսիստական թեորիայի անհաղթելի գրավիչ ուժը, ընդգծել է Լենինը, հենց
այն է, որ նա բուն իսկ թեորիայի մեջ ներքնապես ու անխզելիորեն միացնում
է խիստ ու բարձրագույն գիտականությունը ռևոլյուցիոնականության հետ։

Մարքսը քննադատաբար վերամշակեց և ընդհանրացրեց այն ամբողջ
լավագույնն ու առաջավորը, որ մարդկային միտքը նվաճել էր փիլիսոփայու-
թյան, քաղաքատնտեսության և սոցիալիզմի զարգացման բնագավառում և
ստեղծեց գիտական կոմունիզմի ուսմունքը։ Լենինը բազմիցս ցույց է տվել,
որ ռևոլյուցիոն մարքսիզմի տարբերիչ գիծն այն է, որ նա բոլոր հարցերին
մոտենում է պատմականորեն ոչ միայն անցյալը բացատրելու իմաստով, այլև
ապագան աներկյուղ կերպով կանխատեսելու և նրա իրականացման համար-
ձակ պրակտիկ գործունեության իմաստով։

Մարքսը խորացնում և զարգացնում է փիլիսոփայական մատերիալիզմը,
այն հարստացնում է դիալեկտիկայի ուսմունքով, որը գերմանական կլասիկ,
հատկապես հեգելյան փիլիսոփայության մեծագույն նվաճումն էր։ Մարքսը
հիմնավորելով իր դիալեկտիկական մեթոդը, ցույց տվեց, որ վերջինս ոչ միայն
արմատապես տարբեր է հեգելյան դիալեկտիկական մեթոդից, այլ նրա ուղ-
ղակի հակադրությունն է։ «Հեգելի համար,— գրել է Մարքսը,— մտածողու-
թյան պրոցեսը, որ նա իդեայի անվան տակ դարձնում է նույնիսկ ինքնուրույն
սուբյեկտ, դեմիուրգն է (արարիչ, ստեղծող) իրականի, որը լոկ նրա արտա-
քին արտահայտությունն է։ Իսկ ինձ մոտ, ընդհակառակը, իդեալականը ոչ
այլ ինչ է, քան մարդկային գլխի մեջ փոխադրված և այնտեղ փոխակերպված
նյութականը»։

Գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրները, նշել է Վ. Ի. Լենինը, սկզբից
մինչև վերջ պարտիականներ էին փիլիսոփայության մեջ։ Մարքսը և Էնգելսը
միշտ մերկացրել են ամեն մի նահանջ մատերիալիզմից, ամեն մի զիջում
իդեալիզմին։ Գրեթե կես դար նրանք պայքարել են դիալեկտիկական մատե-
րիալիզմի սկզբունքների անաղարտության ու մաքրության համար, միշտ ան-
շեղ կերպով առաջ են գնացել մի ուղիով, դիալեկտիկական մատերիալիզմի
խորացման ու զարգացման ուղիով։ Մարքսը և Էնգելսը կանգ չառան կես
ճանապարհին։ Նրանք դիալեկտիկական կյանքի երևույթների ճանաչման, պատմու-
և այն տարածեցին հասարակական կյանքի երևույթների ճանաչման, պատմու-
թյան ուսումնասիրության վրա։

Պատմական մատերիալիզմը, Մարքսի այդ մեծագույն հայտնագործությունը, արմատական հեղաշրջում, իսկական հեղափոխություն էր պատմական գիտության մեջ: «Պատմության և քաղաքականության մասին գոյություն ունեցող հայացքներում... տիրող քաոսն ու կամայականությունը,—գրել է Լենինը,— փոխարինվեցին զարմանալի ամբողջական և ներդաշնակ գիտական թեորիայով, որը ցույց է տալիս, թե ինչպես հասարակական կյանքի մի կացութաձևից, արտադրողական ուժերի աճման հետևանքով զարգանում է մյուսը, ավելի բարձրը...» (Երկեր, հ. 19, էջ 5):

Ելնելով պատմական զարգացման իր հայտնագործած օբյեկտիվ օրինաչափություններից, Մարքսը բացահայտեց պրոլետարիատի համաշխարհային-պատմական մեծ դերը, ցույց տալով, որ միայն պրոլետարիատը, որ կապիտալիստական հասարակության ամենահետևողական ռևոլյուցիոն դասակարգն է, որ կարող է համախմբել իր շուրջը բոլոր աշխատավորներին, բոլոր շահագործվողներին և գրոհի տանել կապիտալիզմի դեմ: Նա ապացուցեց սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի միջոցով կապիտալիզմի կործանման և սոցիալիզմի հաղթանակի անխուսափելիությունը:

Գիտական կոմունիզմի ուսմունքի հիմնադիրների մահվանից հետո սկսվեց պատմական նոր դարաշրջան՝ իմպերիալիզմի և պրոլետարական ռևոլյուցիաների դարաշրջանը: Մարտնչող պրոլետարիատի առջև կանգնեցին պատմական նոր խնդիրներ: Բնականաբար այդ նոր խնդիրների լրիվ և սպառիչ պատասխանը չէր կարելի գտնել Մարքսի և Էնգելսի աշխատություններում: Անհրաժեշտ էր պրոլետարիատի դասակարգային պայքարի նոր խնդիրներին համապատասխան ստեղծագործաբար զարգացնել մարքսիզմը: Իսկ սոցիալ-դեմոկրատական ֆիլիստերները, ինչպես արգահատանքով անվանում էր Ֆրիդրիխ Էնգելսը օպորտունիզմի և դավաճանության ուղին բռնած բանվորական պարտիաների լիդերներին, ճգնում էին մարքսիզմից դուրս մղել նրա կենդանի, ռևոլյուցիոն ոգին և Մարքսի ստեղծագործական ուսմունքը վերածել մեռյալ դոգմայի: Եվ ահա այդ պայմաններում հնչեց Լենինի համարձակ ձայնը.

«Մենք Մարքսի թեորիայի վրա բնավ էլ չենք նայում որպես մի ինչ-որ ավարտուն և անձեռնմխելի բանի. մենք համոզված ենք, ընդհակառակը, որ այն դրել է միայն անկյունաքարերն այն գիտության, որը սոցիալիստները պետք է առաջ շարժեն բոլոր ուղղություններով, եթե նրանք չեն ցանկանում կյանքից ետ մնալ» (Երկեր, հ. 4, էջ 262):

Վ. Ի. Լենինը ոչ միայն պաշտպանեց մարքսիզմը նրա թշնամիների հարձակումներից, այլև ամփոփելով ռուսական և միջազգային բանվորական շարժման փորձը, ստեղծագործաբար զարգացրեց մարքսիստական ուսմունքը և այն հասցրեց նոր, ավելի բարձր աստիճանի:

Մարքսը խոսելով հասարակական գիտությանը մատուցած իր ծառայության մասին՝ մատնանշել է, որ իրեն չի պատկանում կապիտալիստական հասարակության մեջ դասակարգերի գոյության և ոչ էլ նրանց միջև տեղի ունեցող պայքարի հայտնագործությունը:

Բուրժուական պատմագետները և տնտեսագետները Մարքսից շատ առաջ շարադրել են այդ բոլորը: Սակայն ո՞րն է Մարքսի մեծ ծառայությունը: «Այն նորը, որ կատարել եմ ես, եղել է այն, որ ես ապացուցեցի հետևյալը. 1) որ դասակարգերի գոյությունը կապված է միայն արտադրության զարգացման



որոշ պատմական փուլերի հետ, 2) որ դասակարգային պայքարն անհրաժեշտորեն տանում է դեպի պրոլետարիատի դիկտատուրան, 3) որ այդ դիկտատուրան ինքը սոսկ մի անցումն է դեպի ամեն տեսակ դասակարգերի ոչնչացում և դեպի անդասակարգ հասարակություն...» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Նամակներ «Կապիտալի» մասին, էջ 50):

Եվ ահա ելակետ ընդունելով Մարքսի այս հանճարեղ դրույթը՝ Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ սահմանափակել մարքսիզմը դասակարգային պայքարի ուսմունքով, նշանակում է խեղաթյուրել այն և ընդունելի դարձնել բուրժուազիայի համար: «Մարքսիստ է միմիայն նա,— ասել է Լենինը,— ով դասակարգերի պայքարի ընդունումը տարածում է մինչև պրոլետարիատի դիկտատուրայի ճանաչումը»:

***

Սովետական Միության Կոմունիստական պարտիան աճել ու կոփվել է ինչպես թեորիայի, այնպես էլ քաղաքականության ասպարեզում դոգմատիզմի և ռևիզիոնիզմի, նրա զանազան դրսևորումների դեմ մղվող բազմամյա պայքարում: Մեր պարտիայի հերոսական պատմությունը լի է մարքսիստական ուսմունքի անաղարտության, նրա ռևոլյուցիոն ոգու պաշտպանության համար մղվող բազմամյա պայքարի վառ և անմոռանալի էջերով:

Մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը, նրա զարգացման գըլխավոր գիծը, ինչպես նշեց ՍՄԿՊ XX համագումարը, անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին: Այդ նոր դարաշրջանի սկիզբը դրեց Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, աշխարհում առաջին սոցիալիստական պետության՝ Սովետական Միության ստեղծումը:

Ներկայումս, երբ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների ժողովուրդները, գրեթե մեկ միլիարդ մարդ, մարքսիզմ-լենինիզմի դրոշի ներքո կառուցում են նոր կյանք, նոր աշխարհ, երբ այսօր սոցիալիզմի գաղափարները բազմամիլիոն կողմնակիցներ են նվաճում կապիտալիստական երկրներում, իմպերիալիստական ռեակցիան ուժեղացրել է իր հարձակումը մարքսիզմ-լենինիզմի դեմ:

Մասսաներին խաբելու, բարոյալքելու, նրանց գիտակցությունը թունավորելու նպատակով իմպերիալիստական պրոպագանդան դիմում է ամենախորամանկ մեքենայությունների, ամենաստոր կեղծիքի և շանտաժի, խաբեության և սոցիալական դեմագոգիայի: Այստեղ բնորոշն այն է, որ իմպերիալիզմի իդեոլոգները բացարձակ հանդես չեն գալիս մարքսիզմ-լենինիզմի դեմ: Նրանք հաճախ հագնում են բանվոր դասակարգի բարեկամի, սոցիալիստի և նույնիսկ մարքսիստի դիմակ: Այդ պայքարում նրանք օգտագործում են բանվորական շարժման մեջ գոյություն ունեցող օպորտունիստական զանազան հոսանքները, ռևիզիոնիստական տարրերին: Ահա ինչու կոմունիստական և բանվորական պարտիաները իրենց գլխավոր խնդիրն են համարում անհաշտ պայքարը օպորտունիզմի ամեն տեսակի դրսևորումների և ամենից առաջ՝ ռևիզիոնիզմի դեմ:

Մեր օրերի ռևիզիոնիստները հետևելով իրենց նախորդներին՝ «նեղ» և «միակողմանի» են հայտարարում մարքսիստական-լենինյան փիլիսոփայությունը: Կոմունիզմի ռենեգատները և ռևիզիոնիստները նորից բարբաջում են

մարքսիզմի «ճգնաժամի» մասին և փորձում հավասարեցման գիծ անցկացնել պրոլետարական ու բուրժուական իդեոլոգիաների միջև։ Նրանք նախապաշարմունք, դոգմատիզմ են համարում փիլիսոփայական ուղղությունները մատերիալիզմի և իդեալիզմի բաժանելը, որ իբր թե մարքսիզմը վաղուց արդեն ներթափանցել է փիլիսոփայական և սոցիոլոգիական արդի սիստեմների մեջ և բուրժուական փիլիսոփաներից ոչ ոք իրեն իդեալիստ չի համարում։

Մեր մեծ ուսուցիչները կոմունիստներին սովորեցնում են մարքսիստաբար-լենինաբար պայքարելու բանվոր դասակարգին ու կոմունիզմին խորթ և թշնամական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի ամեն տեսակի դրսևորումների դեմ։

***

Վերևում մենք տեսանք, որ Մարքսը և Էնգելսը թեորիայի, գիտության ուղղակի խնդիրն էին համարում բանվոր դասակարգին զինել «պայքարի ճշմարիտ լոզունգով», այլ խոսքով՝ կազմակերպել պրոլետարիատի դասակարգային պայքարը։ Իսկ այդ խնդիրը իրագործելու համար անհրաժեշտ էր գիտական սոցիալիզմը միացնել բանվորական շարժման հետ։ Ահա անդուլ պայքարը առաջավոր ռևոլյուցիոն թեորիայով ղեկավարվող պրոլետարական մարտական պարտիայի ստեղծման համար դառնում է Մարքսի և Էնգելսի կյանքի գործը։ 1847 թվականին Մարքսը և Էնգելսը մտնում են Կոմունիստների միության մեջ, որը բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պարտիայի ստեղծման հիմք հանդիսացավ։ Մարքսը և Էնգելսը գտնում էին, որ պարտիական ուժերի համախմբումն ու միավորումը պետք է տեղի ունենա գաղափարական ամուր բազայի, թեորիական և տակտիկական որոշակի հիմունքների վրա։ Հետևապես կոմունիստների միավորումը մարտական կազմակերպության մեջ կարող էր կատարվել միայն բանվորական շարժմանը խորթ, թշնամի հոսանքների դեմ մղվող անդուլ պայքարում։ Այդ միտքը հստակ ու պարզորոշ կերպով արտահայտեց Էնգելսը 1847 թվականի ամառը Լոնդոնում ունեցած իր մի ելույթում. «Առանց բննադատության չկա փոխադարձ ըմբռնում, հետևապես չկա և միավորում»։

Կոմունիստների միությունում Մարքսը գաղափարական և կազմակերպական վիթխարի աշխատանք ծավալեց։ Նա մերկացրեց գերմանական այսպես կոչված «ճշմարիտ» սոցիալիստներին, որոնք «սիրո», «մարդկային արդարության» ու «եղբայրության» մասին սենտիմենտալ քարոզներով ձգտում էին գերմանական բանվորական շարժումը ենթարկել բուրժուազիայի դասակարգային շահերին, և վերածել կոմունիզմը մի նոր կրոնի։ «Փիլիսոփայության աղքատությունը» հայտնի աշխատության մեջ Մարքսը ոչնչացնող քննադատության ենթարկեց Պրուդոնի՝ մանր բուրժուական սոցիալիզմի այդ տիպիկ ներկայացուցչի հայացքները։

1847 թվականի նոյեմբերին կայացավ Կոմունիստների միության երկրորդ կոնգրեսը, որը Մարքսին և Էնգելսին հանձնարարեց մշակել միջազգային կոմունիստական առաջին կազմակերպության ծրագիրը՝ Մանիֆեստը։ 1848 թվականի փետրվարին Լոնդոնում լույս տեսավ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստը», մարքսիզմի ծրագրային առաջին փաստաթուղթը։ Առաջին անգամ այդ աշխատության մեջ Մարքսը և Էնգելսը տվեցին իրենց ուսմունքի սիստեմատիկ և ամբողջական շարադրությունը։



«Այս աշխատության մեջ,— գրել է Լենինը,— հանճարեղ պարզությամբ ու ցայտունությամբ ուրվագծված է նոր աշխարհայեցողությունը, նաև սոցիալական կյանքի բնագավառը ընդգրկող հետևողական մատերիալիզմը, դիալեկտիկան, որպես ամենաբազմակողմանի ու խոր ուսմունք զարգացման մասին, դասակարգային պայքարի և նոր, կոմունիստական հասարակություն ստեղծող պրոլետարիատի համաշխարհային-պատմական ռևոլյուցիոն դերի թեորիան» (Երկեր, հ. 21, էջ 45—46)։

«Մանիֆեստի» ստեղծողները գիտականորեն հիմնավորեցին կապիտալիզմի կործանման, սոցիալիստական ռևոլյուցիայի պատմական անխուսափելիությունը և ապացուցեցին, որ բանվոր դասակարգի հաղթանակի անհրաժեշտ պայմանը նրա կողմից քաղաքական իշխանության նվաճումն է, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, որը ուղի է հարթում դեպի մի այնպիսի հասարակության ստեղծումը, որտեղ «յուրաքանչյուրի ազատ զարգացումը հանդիսանում է բոլորի ազատ զարգացման պայմանը»։

«Մանիֆեստում» Մարքսը և Էնգելսը շարադրեցին իրենց հիմնական հայացքները Կոմունիստական պարտիայի՝ բանվոր դասակարգի ավանգարդի մասին, առանց որի պրոլետարիատը չի կարող իրագործել իր համաշխարհային, պատմական միսիան։ «Մանիֆեստում» շարադրված է ոչ միայն Կոմունիստական պարտիայի ծրագիրը, այլև ուրվագծված են պրոլետարական պարտիայի տակտիկայի հիմունքները։ Այդ տակտիկայի հիմնական սկզբունքը ձևակերպված է այսպես.

«Կոմունիստները պայքարում են հանուն բանվոր դասակարգի մերձավորագույն նպատակների և շահերի, բայց այսօրվա շարժման մեջ նրանք պաշտպանում են և շարժման ապագան»։ Մարքսը և Էնգելսը կոմունիստների առաջնահերթ խնդիրը համարեցին պաշտպանել տիրապետող ռեակցիոն կարգերի դեմ ուղղված ամեն մի պրոգրեսիվ և ռևոլյուցիոն շարժում։

«Մանիֆեստը» ավարտվում է պրոլետարների միջազգային համերաշխության կոչով.

ՊՐՈԼԵՏԱՐՆԵ՛Ր ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք։

***

Մարքսը պատմությունը դիտում էր նախ և առաջ որպես ժողովրդական մասսաների պատմություն։ Նա ապացուցեց, որ ոչ թե ընտրյալ անհատները՝ «ոգու կրողներն» են կերտում պատմությունը, այլ ընդհակառակը, վերջինս հանդիսանում է ժողովրդական մասսաների ստեղծագործության արդյունք։ Մարքսը ոչ միայն սովորեցնում էր մասսաներին, այլև ինքը սովորում էր նրանցից, հատկապես պատմության շրջադարձային մոմենտներին, ռևոլյուցիոն բուռն ցնցումների և փոթորիկների ժամանակ, երբ մասսաների պատմական ստեղծագործությունը դրսևորվում է ավելի լայնորեն ու խորությամբ։

Երբ 1848 թվականին Իտալիայում, Ֆրանսիայում և Գերմանիայում պայթեց ռևոլյուցիան, Մարքսը և Էնգելսը վերադարձան հայրենիք և ռևոլյուցիոն ամբողջ եռանդով մասնակցեցին ժողովրդական մասսաների պայքարին։ Այդ ժամանակ գերմանական բանվոր դասակարգը դեռ շատ էր թույլ, անկազմակերպ, քաղաքականապես անզարգացած և դեռևս պայմաններ չկային պրոլե-

տարական ինքնուրույն պարտիա ստեղծելու համար: Մարքսը և Էնգելսը գա-լով Քյոլն հարեցին դեմոկրատական շարժմանը, գլխավորեցին նրա ամենա-ռևոլյուցիոն, պրոլետարական թևին: Մարքսի ստեղծած «Նոր Հռենոսյան Լրագիրը» դեմոկրատիայի օրգանն էր, բայց, ինչպես ասում է Էնգելսը, այն դեմոկրատիայի, որն ամենուրեք, ամեն մի առանձին առիթով, ցուցադրում էր իր սպեցիֆիկ պրոլետարական բնույթը:

«Նոր Հռենոսյան Լրագիրը» իր պրոլետարական բնույթը ցույց տվեց Փարիզի բանվորների հունիսյան ապստամբության օրերին: Մարքսը և Էնգելսը գնահատելով այդ ապստամբության պատմական նշանակությունը, ընդգծում էին, որ դա առաջին քաղաքացիական պատերազմն էր բուրժուազիայի և պրոլետարիատի միջև:

Պայքարելով գերմանական միասնական դեմոկրատական ռեսպուբլիկայի ստեղծման համար, Մարքսը և Էնգելսը մերկացնում էին գերմանական բուրժուազիայի երկչոտությունն ու դավաճանությունը, մանրբուրժուական դեմոկրատների տատանումներն ու անվճռականությունը: Մարքսն ու Էնգելսը վճռաբար դատապարտում էին նրանց, ովքեր շեղում էին բանվորներին ռևոլյուցիայի հիմնական խնդիրներից: Մարքսը իր հոդվածներում կոչ էր անում ամեն մի «բռնության պատասխանել բռնության բոլոր միջոցներով: Պասսիվ դիմադրությունը պետք է հենվի ակտիվ դիմադրության վրա: Հակառակ դեպքում այն կնմանվի այն հորթի դիմադրությանը, որին մսագործը մորթելու է տանում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, հ. 6, էջ 32):

1849 թվականի օգոստոսի վերջին Մարքսը և Էնգելսը արդեն Լոնդոնում էին և եռանդուն գործունեություն էին ծավալում պրոլետարական պարտիան ամրապնդելու համար: Նրանք միաժամանակ հանրագումարի էին բերում անցած ռևոլյուցիոն շրջանի արդյունքները:

«Դասակարգային պայքարը Ֆրանսիայում» և «Լուի Բոնապարտի բրյումերի 18-ը» կլասիկ աշխատությունների մեջ Մարքսը գիտնականի խստագույն օբյեկտիվությամբ և քաղաքական մարտիկի ռևոլյուցիոն կրքոտությամբ վերլուծում է մի ամբողջ պատմական փոթորկալի շրջանի քաղաքական իրադարձությունները, բացահայտում նրանց պատճառական ներքին կապակցությունները, որոնց հիմքը տնտեսական պատճառներն են: Վերլուծելով Ֆրանսիայի գյուղացիության դրությունը՝ Մարքսը ցույց տվեց կապիտալի կողմից նրա դաժան շահագործումը և առաջ քաշեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի անհրաժեշտության գաղափարը, որ առանց այդ դաշինքի պրոլետարիատը չի կարող հաղթել ռևոլյուցիայում:

1848—49 թվականների ռևոլյուցիաների փորձի հիման վրա «Լուի Բոնապարտի բրյումերի 18-ը» աշխատության մեջ իր հետագա կոնկրետացումն ու զարգացումն ստացավ մարքսիստական ուսմունքը պետության մասին: Մինչ այժմ եղած բոլոր ռևոլյուցիաները լոկ կատարելագործել և ամրապնդել են հին պետական մեքենան: Պրոլետարական ռևոլյուցիայի խնդիրն է փշրել շահագործվող մասսաներին ճնշող այդ ապարատը: Ընդգծելով Մարքսի այդ եզրակացության հսկայական նշանակությունը, Լենինը գրել է. «Այս երևելի դատողության մեջ մարքսիզմը մի վիթխարի քայլ է անում դեպի առաջ «Կոմունիստական Մանիֆեստի» համեմատությամբ: Այնտեղ պետության հարցը դրվում էր դեռևս ծայրահեղ վերացականորեն, ամենաընդհանուր հասկացո-



ղություններով ու արտահայտություններով: Այստեղ հարցը դրվում է կոնկրետ կերպով և չափազանց ճշգրիտ, որոշ, պրակտիկորեն-շոշափելի եզրակացություն է արվում. բոլոր նախկին ռևոլյուցիաները կատարելագործել են պետական մեքենան, մինչդեռ պետք է ջարդել, փշրել այն» (Երկեր, հ. 25, էջ 524):

Այս եզրակացությունը գլխավորը, հիմնականն է պետության մասին մարքսիզմի ուսմունքի մեջ: Այստեղ նա առաջին անգամ գործածում է «պրոլետարիատի դիկտատուրա» տերմինը և բացահայտում նրա քաղաքական, տնտեսական և իդեոլոգիական բովանդակությունը:

Մարքսը և Էնգելսը որպես պրոլետարական ռևոլյուցիոներներ ուժեղ պայքար են մղել անհատի պաշտամունքի դեմ, մերկացրել են նրա սուբյեկտիվ-իդեալիստական էությունը, ցույց են տվել անհատի պաշտամունքի ամբողջ վնասակարությունը բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժման համար:

Մարքսը և Էնգելսը գույներ չեն խնայում ցույց տալու այդ «հերոսների» խական, ողորմելի կերպարանքը, ոչնչացնող ծաղրի են ենթարկում անհատի պաշտամունքը: Ահա թե ինչ են գրում նրանք իրենց մի հոդվածում. «Չափազանց ցանկալի կլիներ, որ շարժման պարտիայի գլուխ կանգնած մարդիկ, լինի դա ռևոլյուցիայից առաջ՝ գաղտնի ընկերություններում կամ մամուլում, թե ռևոլյուցիայի ժամանակ՝ որպես պաշտոնական անձինք, վերջապես պատկերվեն ռեմբրանդյան խիստ գույներով, իրենց կյանքի ամբողջ ճշմարտացիությամբ: Եղած բոլոր նկարագրություններում այդ անձինք միշտ պատկերվում են ոչ թե իրենց իրական, այլ սոսկ պաշտոնական տեսքով, ոտքերին՝ կոթուռն (բեմակոշիկ.— Խմբ.) և գլխին՝ լուսապսակ: Խանդավառորեն վերափոխված ռաֆայելյան այդ պորտրեններում կորչում է նկարագրության ամբողջ ճշմարտացիությունը»:

***

Ծանր վերապրեց Կարլ Մարքսը 1848—49 թվականների ռևոլյուցիաների պարտությունը հաջորդած համաեվրոպական ռեակցիան: Սակայն այդ մռայլ ժամանակաշրջանում Մարքսը երբեք չկորցրեց խոր, անընկճելի հավատը այն գործի նկատմամբ, որին նվիրաբերել էր նա իր ամբողջ կյանքը:

Եթե մինչև 1848 թվականը Մարքսը գերազանցապես զբաղվում էր փիլիսոփայական հարցերով, գիտական կոմունիզմի թեորիական հիմունքները մշակելու հարցերով, իսկ ռևոլյուցիայի տարիներին առաջնահերթ նշանակություն ստացան քաղաքական պրոբլեմները, ապա 50—60-ական թվականներին Մարքսը ձեռնամուխ եղավ տնտեսագիտական իր ուսումնասիրություններին: 1859 թվականին լույս տեսավ Մարքսի «Քաղաքատնտեսության քննադատության շուրջը» աշխատությունը, իսկ 1867 թվականին՝ «Կապիտալի» առաջին հատորը: Վ. Ի. Լենինը նկատում է, որ Մարքսի ստեղծագործական հանճարի այդ գլուխգործոցները ռևոլյուցիոնացրին քաղաքատնտեսությունը:

Ինչպես գրել է Մարքսը «Կապիտալի» առաջաբանում, այդ երկի վերջնական նպատակը կապիտալիստական հասարակության շարժման տնտեսական օրենքի բացահայտումն է: Մարքսը հայտնագործեց կապիտալիստական հասարակության շարժման տնտեսական օրենքը, հետազոտեց այդ հասարակությունը իր առաջացման, զարգացման և անկման մեջ: Մարքսը ապացուցեց, որ կապիտալիզմը իր զարգացման ընթացքում նյութական նախադրյալներ է

առեղծում գալիք սոցիալիստական հասարակության համար։ Ցույց տալով կապիտալիստական շահագործման ամբողջ մեխանիզմը, Մարքսը բացահայտեց հավելյալ արժեքի իսկական աղբյուրը։ «Հավելյալ արժեքի ուսմունքը Մարքսի տնտեսական թեորիայի անկյունաքարն է» (Լենին)։ Մարքսը ապացուցեց, որ արտադրության հասարակական բնույթի և յուրացման մասնավոր կպիտալիստական ձևի միջև եղած հակասությունը կապիտալիստական հասարակության գլխավոր հակասությունն է, որը գնալով ավելի է սրվում կապիտալիզմի զարգացման ընթացքում։ Աշխատանքի և կապիտալի, շահագործվողների և շահագործողների միջև եղած ներհակությունները գնալով ավելի և ավելի են խորանում և միայն սոցիալիստական ռևոլյուցիան կարող է ուղի հարթել մարդկության հետագա առաջադիմության համար։ «Կապիտալի մենաշնորհը,— գրել է Մարքսը,— կապանք է դառնում արտադրության այն եղանակի համար, որը փթթել էր նրա հետ ու նրա շնորհիվ։ Արտադրամիջոցների կենտրոնացումն ու աշխատանքի հանրայնացումը հասնում են մի կետի, երբ նրանք անհամատեղելի են դառնում իրենց կապիտալիստական պատյանի հետ։ Սա պայթում է։ Հնչում է կապիտալիստական մասնավոր սեփականության ժամը։ Ռմեզրկողներն ունեզրկվում են»։

***

Պրոլետարական միջազգային համերաշխության գաղափարները, որ անդուլ կերպով պրոպագանդում էին Մարքսը և Էնգելսը, գնալով ավելի խոր արմատներ էին գցում տարբեր երկրներում։ Պրոլետարական շարժման նոր վերելքի պայմաններում, 1864 թվականին հիմնադրվեց Առաջին Ինտերնացիոնալը՝ «Բանվորների միջազգային ընկերությունը»։ Մարքսը իր վրա վերցրեց Ինտերնացիոնալի ղեկավարությունը։ Նրա գրչին պատկանում են ընկերության «Հիմնադիր Մանիֆեստը», «Կանոնադրությունը» և ուրիշ բազմաթիվ փաստաթղթեր։ Ինտերնացիոնալի ներսում Մարքսը կատաղի պայքար է ծավալում ոչ պրոլետարական սոցիալիզմի զանազան հոսանքների դեմ, հանում պրոլետարական պարտիայի ռևոլյուցիոն ծրագրի և տակտիկայի։

Այդ պայքարում կոփվում էին պրոլետարական-մարքսիստական պարտիաների կադրերը։ Նրանք սովորում էին ռևոլյուցիոն թեորիան միացնել ռևոլյուցիոն քաղաքականության, պրակտիկայի հետ։ Մարքսը միաժամանակ պայքարում էր բուրժուական նացիոնալիզմի դրսևորումների դեմ, դաստիարակելով մասսաներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։

Երբ Լոնդոնում լուր ստացվեց Փարիզի բանվորների 1871 թվականի մարտի 18-ի ապստամբության, Կոմունայի հռչակման մասին, Մարքսը խանդավառությամբ ողջունեց Փարիզի բանվորներին, որոնք «պատրաստ են երկինքը գրոհելու»։

Մարքսը Կոմունայից շատ ամիսներ առաջ, ելնելով Ֆրանսիայի ներքին և արտաքին դրությունից, նախազգուշացնում էր ֆրանսիական բանվորներին, որ ապստամբությունն անմտություն կլինի։ Բայց երբ բռնկեց ժողովրդական ապստամբությունը, Մարքսը ուշի-ուշով հետևում էր Փարիզում ծավալվող մեծ դեպքերին, կանխատեսելով նրանց համաշխարհային-պատմական նշանակությունը։ Ավելին։ Ապրելով Լոնդոնում, Մարքսը Փարիզի Կոմունայի ամենաակտիվ մասնակիցն էր։ Նամակներով, խորհուրդներով նա օգնում էր կոմունարներին, նախազգուշացնում սխալներից։



— Որպիսի՜ ճկունություն, որպիսի՜ պատմական նախաձեռնություն, ինքնազոհության որպիսի՜ ընդունակություն ունեն այս փարիզցիները,— բացականչում էր Մարքսը Կուգելմանին գրած նամակներից մեկում։

Կոմունարների պատմական մեծագույն սխրագործությունը Մարքսը հա-
մարեց այն, որ նրանք առաջին անգամ փորձ կատարեցին խորտակելու բուր-
ժուական պետության բյուրոկրատական-ռազմական մեքենան։ Մարքսը քըն-
նադատում է Կոմունայի ղեկավարների սխալները, նրանց անվճռականությու-
նը։ Փարիզի Կոմունայի փորձին Մարքսը նվիրեց հատուկ աշխատություն՝
«Քաղաքացիական պատերազմը Ֆրանսիայում», որտեղ իր հետագա զարգա-
ցումն ստացավ մարքսիստական ուսմունքը պետության և պրոլետարիատի
դիկտատուրայի մասին։ Մարքսը եկավ այն եզրակացության, որ ոչ թե պառ-
լամենտական ռեսպուբլիկան, այլ Փարիզի Կոմունայի տիպի քաղաքական
կազմակերպությունը՝ պրոլետարիատի դիկտատուրայի առավել նպատակա-
հարմար ձևն է։ Սակայն այդ եզրակացությունը հետագայում իր զարգացումը
չստացավ, այն մոռացության մատնեցին Երկրորդ Ինտերնացիոնալի օպոր-
տունիստները։ Ելնելով ռուսական երկու ռևոլյուցիաների փորձից՝ Վ. Ի. Լենինը
ցույց տվեց, որ Սովետական իշխանությունը պրոլետարիատի դեկտատուրայի
լավագույն ձևն է։ Սակայն ժողովրդական մասսաների պատմական ստեղծա-
գործությունը կանգ չի առնում։ Նոր պայմաններում Եվրոպայի և Ասիայի
սոցիալիստական երկրներում մասսաների ստեղծարար նախաձեռնությունը
հայտնագործեց պրոլետարիատի դիկտատուրայի նոր ձև ի դեմս ժողովրդա-
կան դեմոկրատիայի։

Մարքսիստական գրականության մեջ հատուկ տեղ է գրավում «Գոթայի
ծրագրի քննադատությունը»։ Այս աշխատության մեջ Մարքսը ամենախիստ
կերպով քննադատում է գերմանական սոցիալ-դեմոկրատական պարտիայի
ղեկավարների՝ Ա. Բեբելի և Վ. Լիբկնեխտի անսկզբունքայնությունը, նրանց
օպորտունիստական կոմպրոմիսը լասսալականների հետ, որի արդյունքը եղավ
Գոթայի միացուցիչ համագումարին ներկայացնելու համար պատրաստված
պարտիայի ծրագրի նախագիծը (1875 թ.)։ Քննադատելով լասսալականների
օպորտունիստական հայացքները, Մարքսը թեորիական կարևոր եզրակացու-
թյունների հանգեց. նախ հիմնավորեց կոմունիզմի երկու ֆազերի դրույթները,
այնուհետև ապացուցեց, որ «կապիտալիստական և կոմունիստական հասա-
րակության միջև ընկնում է մի շրջան, երբ առաջինը ռևոլյուցիոն ձևով փո-
խակերպվում է երկրորդին։ Այդ շրջանին համապատասխանում է նաև անց-
ման մի քաղաքական շրջան և այդ շրջանի պետությունը ուրիշ ոչինչ չի կարող
լինել, բացի պրոլետարիատի ռևոլյուցիոն դիկտատուրայից»։

Լենինի աշխատություններում, մեր պարտիայի համագումարների, կոնֆե-
րանսների, Կենտկոմի պլենումների որոշումներում իրենց հետագա զարգա-
ցումն ստացան Մարքսի հանճարեղ դրույթները՝ անցման շրջանի, պրոլետա-
րիատի դիկտատուրայի, կոմունիզմի մասին։ ՍՄԿՊ XX համագումարի և
Կենտկոմի որոշումներում, պարտիայի ղեկավար գործիչների ծրագրային
ելույթներում և աշխատություններում ոչ միայն ամփոփվում է ՍՍՌՄ աշխա-
տավորների վիթխարի փորձը կոմունիզմի կառուցման տարբեր փուլերում,
այլև իրենց լուծումն են ստանում կյանքի, պրակտիկայի կողմից առաջա-
դրվող նոր, բարդ պրոբլեմները։ Պարտիայի կոլեկտիվ միտքը ստեղծագոր-
ծաբար զարգացնում, հարստացնում և առաջ է մղում մարքսիզմ-լենինիզմը։

***

1883 թվականի մարտի 14-ին Մարքսի սիրտը դադարեց բաբախելուց։ Վերջին հրաժեշտը տալով իր մեծ բարեկամին՝ Ֆրիդրիխ Էնգելսը ասաց.

— Ե՛վ նրա անունը, և՛ նրա գործը կապրեն դարեր։

Հարյուր տասը տարի առաջ միջազգային կոմունիստական շարժման ներկայացուցիչները, հավաքվելով Լոնդոնում, հրապարակեցին գիտական կոմունիզմի առաջին ծրագրային փաստաթուղթը։ Ամբողջ աշխարհով մեկ հնչեց ռևոլյուցիոն պրոլետարիատի մարտական կոչը. «Պրոլետարնե՛ր բոլոր երկրների, միացե՛ք»։ Կոմունիստական շարժումն այն ժամանակ իր առաջին քայլերն էր անում։ Նոսր էին պրոլետարական մարտիկների շարքերը։

Բազում փորձությունների, պարտությունների և հաղթանակների բովով է անցել միջազգային կոմունիզմը։ Քանի-քանի անգամ հին աշխարհի սև ուժերը փորձել են ոչնչացնել արդիականության հզոր շարժումը, որին պատկանում է ապագան։ Սակայն ապարդյուն։

Հարյուր տասը տարի անց միջազգային կոմունիստական շարժման ներկայացուցիչները հավաքվելով Մոսկվայում, հրապարակեցին գիտական կոմունիզմի մի այլ ծրագրային փաստաթուղթ. սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության դեկլարացիան և 64 երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության ընդունած Խաղաղության Մանիֆեստը։

Դեկլարացիան կոմունիստական պարտիաների կոլեկտիվ փորձի հանրագումարն է, մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման օրինակ։

Կոմունիստական և բանվորական պարտիաները վստահորեն շարունակում են իրենց պայքարը հանուն խաղաղության, հանուն դեմոկրատիայի և սոցիալիզմի։ Նրանք իրենց առջև տեսնում են պայծառ հեռանկարներ։ Դեռ երբեք կոմունիստական պարտիաները ամենալայն մասսաների մեջ մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների տարածման և դրանց իրագործման բարենպաստ այնպիսի պայմաններ չեն ունեցել, ինչպես այժմ։

Երբ սկսվեց ֆրանս-պրուսական պատերազմը, Մարքսը և Էնգելսը հպարտությամբ նշեցին, որ Ֆրանսիայի և Գերմանիայի առաջավոր բանվորները հավատարիմ մնացին պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներին։ «Հենց միայն այս մեծ փաստն արդեն,— գրում էին նրանք,— որ իր նմանը չունի պատմության մեջ, ավելի լուսավոր ապագայի հույսեր է ներշնչում։ Նա ցույց է տալիս, որ, ի հակադրություն հին հասարակության իր տնտեսական աղքատությամբ և քաղաքական խելագարությամբ, ծնվում է մի նոր հասարակություն, որի միջազգային սկզբունքը կլինի՝ խաղաղությունը, որովհետև ժողովուրդներից ամեն մեկի մոտ էլ կլինի միևնույն տիրապետողը՝ աշխատանքը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, հ. I, էջ 596)։

Ավելի մեծ հպարտությամբ այս խոսքերը կրկնում են այսօր սոցիալիստական երկրների և ամբողջ աշխարհի միլիոնավոր կոմունիստները։

Ապագան պատկանում է կոմունիզմին։

---

# ԿԱԴՐԵՐԻ ԲԱՆԻՄԱՑ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՄԵՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

Բ. ՍԱՐԳԻՍՈՎ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի Կոմունիստական պարտիայի պայքարի և հաղթանակների պատմության մեջ XIX համագումարը կմտնի որպես կարևորագույն ուղենիշ։

Համագումարը գոհունակությամբ արձանագրեց, որ ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումների կենսագործման, պարտիական և պետական ղեկավարման մեջ լենինյան սկզբունքների և նորմաների վերականգնման, մարքսիզմ-լենինիզմին խորթ՝ անհատի պաշտամունքի վնասակար հետևանքների վերացման համար մղվող պայքարում Հայաստանի Կոմունիստական պարտիան գաղափարապես է՛լ ավելի է կոփել, ամրապնդել իր շարքերը, ընդլայնել ու խորացրել է իր կապերը մասսաների հետ, է՛լ ավելի է բարձրացրել իր կազմակերպչական դերը և հեղինակությունը աշխատավորության ամենալայն խավերի շրջանում։

Համագումարի աշխատանքը հանդիսացավ այն բանի ակնառու արտացոլումը, որ հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ թափանցել է պարտիայի XX համագումարի ոգին, որը նպատակամղեց դեպի պարտիական կոմիտեների, կոմունիստ-ղեկավարների և շարքայինների նախաձեռնության լրիվ ծավալումը, պարտիական-քաղաքական և տնտեսական գործունեության ճիշտ զուգակցումը, ներպարտիական դեմոկրատիայի, քննադատության և ինքնաքննադատության հետագա զարգացումը, կադրերին տնտեսական շինարարության պրակտիկ հարցերի լուծման համար բարձր պատասխանատվության ոգով դաստիարակելը։ համագումարում, հաշվետու ժամանակաշրջանում

Ինչպես մատնանշվեց պարտիական կոմիտեների կազմակերպչական աշզգալիորեն բարելավվել է արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության առաջախատանքը արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության առաջավոր տեղամասերում։ Նկատելիորեն աճել են պարտիական կադրերը և, մասնավորապես, շրջանային օղակի կադրերը։ Նրանք սկսել են ավելի խորաթափանցորեն, գործիմացությամբ և օպերատիվ կերպով ղեկավարել տնտեսությունը, առավել հմտություն ցուցաբերել արտադրական պլանների կատարման համար աշխատավորներին կազմակերպելու գործում, աշխատանքը նպատակադրել դեպի տնտեսության աճը։

Հանրագումարի բերելով անցած երկու տարվա գործունեության արդյունքները, գնահատելով հաջողությունները և նշելով աշխատանքում եղած

*թերությունների ու բացերը, համագումարը կարևորագույն խնդիր դրեց՝ ապա-
հովել ռեսպուբլիկայի տնտեսության, կուլտուրայի հետագա հզոր զարգացու-
մը։ Դրա համար, ինչպես մատնանշվեց համագումարում, անհրաժեշտ է բար-
ձըր մոբիլիզացիոն վիճակում պահել մեր բոլոր պարտիական կազմակերպու-
թյունները, մշտապես բարելավել և կատարելագործել ամբողջ պարտիական-
կազմակերպչական աշխատանքը, հասնել այն բանին, որպեսզի մեր բոլոր
կադրերը խսկապես տիրապետեն գործի հաջող պրակտիկ կազմակերպական
արվեստին տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր տեղամա-
սերում։*

*Լիովին ակնհայտ է, որ եթե տնտեսության բնագավառում ռեսպուբլիկա-
յում ձեռք բերված հաջողությունների կարևոր պայմաններից մեկը եղել է
պարտիական կոմիտեների կազմակերպչական աշխատանքի բարելավումը,
ապա, ընդհակառակը, այդ աշխատանքում դեռևս տեղ գտած լուրջ թերու-
թյունների և բացերի մեջ է թաքնված այն բանի գլխավոր պատճառներից
մեկը, որ արդյունաբերության և, հատկապես, գյուղատնտեսության մեջ մեծ
ռեզերվներն ու հնարավորությունները ինչպես հարկն է չեն օգտագործվում
արտադրության ծավալը շեշտակիորեն ավելացնելու համար։*

*Կանգ առնենք կազմակերպչական աշխատանքում եղած մի քանի ընդ-
հանուր թերությունների վրա, որոնց մասին խոսվեց համագումարում։*

*Հայտնի է, որ արդի պայմաններում, երբ պարտիան մեծ մասշտաբնե-
րով աշխատանք է տանում երկրի էկոնոմիկայի բոլոր ճյուղերի հզոր վերելքի
ուղղությամբ, կազմակերպչական աշխատանքի բովանդակությունն անհամե-
մատ հարստացել է, նրան ներկայացնում են ավելի բարձր պահանջներ։ Սա-
կայն, ցավոք սրտի, մեզ մոտ գտնվում են աշխատողներ, որոնք կազմակերպ-
չական աշխատանքում դեռ մինչև այժմ էլ կառչում են հնացած հասկացո-
ղություններին և դոգմաներին։ Այդ աշխատանքի մակարդակը նրանք սովո-
րաբար չափում են պարզապես միայն արտաքին հատկանիշներով։ Ինչքա՞ն
ժողովներ և խորհրդակցություններ են անցկացվել, քանի՞ մարդ է այնտեղ
ելույթ ունեցել, ժողովներն արդյոք անցե՞լ են վերևից տրված բոլոր ցու-
ցումների համաձայն և այլն։ Այդպիսի աշխատողները հանդես չեն բերում
նորը ընկալելու զգացում, չեն համակերպում այժմյան պահանջները պար-
տիական-կազմակերպչական աշխատանքին, չեն մտահոգվում գլխավորի՝ այդ
աշխատանքի բովանդակության մասին, այն մասին, թե ինչպիսի քաղաքա-
կան և տնտեսական արդյունք է տալիս այն, արդյոք այդպիսի աշխատանքը
կարո՞ղ է մոբիլիզացնել մարդկանց՝ մեծ գործերի համար։*

*Իսկ ե՞րբ կարող են մարդիկ մոբիլիզացվել մեծ գործեր կատարելու հա-
մար։ Բնականաբար, այն ժամանակ, երբ նրանց առջև դնում ես նրա աշխա-
տամասի համար պարզ և որոշակի խնդիրներ, և ոչ թե ընդհանրապես կոչ ես
անում ավելացնել արտադրանքի արտադրությունը։ Այլ կերպ ասած, անհրա-
ժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները, ելնելով պարտիայի դի-
րեկտիվներից և որոշումներից, որոշեն իրենց սեփական կոնկրետ խնդիրնե-
րը։ Եթե այդ դրույթը փոխադրենք գյուղատնտեսության բնագավառը, ապա
հարկավոր է, որ յուրաքանչյուր շրջան, իսկ շրջանում յուրաքանչյուր կոլտըն-
տեսություն և սովետական տնտեսություն, բոլոր հնարավորությունների և ռե-
զերվների հաշվառման հիման վրա, ունենա երկար ժամանակի համար գյու-
ղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի զարգացման խնամքով մշակ-*



*ված, մտածված պլան, որի մեջ անհրաժեշտ է նախատեսել գյուղատնտեսա-
կան արտադրանքի բոլոր տեսակների արտադրության աճի տեմպերը՝ ըստ
տարիների։ Այդ պլանները պետք է ամրապնդվեն կազմակերպչական և ագրո-
զոոտեխնիկական միջոցառումների ամբողջ գումարով, նախատեսելով, թե ո՛ր
միջոցառումները ինչպիսի ժամկետներում պետք է կատարել, սահմանել, թե
ո՛վ է պատասխանատու այս կամ այն աշխատանքի համար։*

*Պարտիական կոմիտեների կազմակերպչական աշխատանքի բովանդակու-
թյունը ամենից առաջ պետք է կայանա նշված միջոցառումների պրակտիկ
կենսագործման մեջ, այն բանի վերահսկման մեջ, թե դրանք ինչպես են
օրեցօր կենսագործվում աշխատանքի կոնկրետ տեղամասում։*

*Մեզ մոտ կան պարտիայի շրջկոմների կողմից գյուղատնտեսության այդ-
պիսի մտածված ղեկավարման ոչ քիչ օրինակներ։ Վերցնենք, օրինակ, այգե-
գործության և, հատկապես, խաղողագործության զարգացման բնագավառում
Շամշադինի պարտշրջկոմի աշխատանքը։ Այստեղ խնամքով կազմվել է գյու-
ղատնտեսության այդ ճյուղերի զարգացման պլան ամբողջ շրջանի և առան-
ձին վերցրած յուրաքանչյուր կոլտնտեսության համար։ Պարտիայի շրջկոմը
հետևողականորեն և հաստատակամորեն գործի է անցել այդ պլանները կա-
տարելու համար։ Այդ ուղղությամբ կատարվող աշխատանքը հանդիսանում է
պարտիայի շրջկոմի կազմակերպչական գործունեության բովանդակության
գլխավոր գծերից մեկը։ Առկա են շոշափելի արդյունքները։ Կարճ ժամանա-
կամիջոցում շրջանն արդեն ունի 407 հեկտար խաղողի պլանտացիաներ և 370
հեկտար պտղատու այգիներ։ 1957 թվականին շրջանում միայն խաղողի
պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից միջինը ստացվել է 107 ցենտ-
ներ խաղող։ Առանձին կոլտնտեսություններ ավելի բարձր ցուցանիշներ ունեն։
Բավական է ասել, որ Այգեձորի կոլտնտեսությունը անցյալ տարի իր այգի-
ների յուրաքանչյուր հեկտարից պլանով նախատեսած 80-ի դիմաց ստացել
է 190 ցենտներ խաղող։ Խրախուսելին այն է, որ Շամշադինի կոմունիստները
չեն հանգստանում այս նախնական հաջողություններով, այլ ամբողջ աշխա-
տավորությանը պայքարի են հանել՝ մինչև 1965 թվականը շրջանում խաղողի
այգիների տարածությունը հասցնել 1000 հեկտարի։*

*Պարտիայի Կալինինոյի շրջկոմը մտածված աշխատանք է տանում կաթի
արտադրության ավելացման ուղղությամբ, իսկ Մարտունու շրջկոմը՝ խոշոր
եղջերավոր անասունների, առանձնապես կովերի գլխաքանակը կոլտնտեսու-
թյուններում ավելացնելու ուղղությամբ։*

*Սակայն, ցավոք սրտի, կան նաև ասվածին հակառակ փաստեր, որոնք
խոսում են այն մասին, որ մի քանի շրջկոմներ չափազանց դանդաղ են վե-
րակառուցում տնտեսության ղեկավարումը և իրենց կազմակերպչական աշ-
խատանքը՝ ժամանակակից այն մեծ խնդիրների լույսի տակ, որոնք դրել է
պարտիան գյուղատնտեսության առջև, և շարունակում են տնտեսությունը
ղեկավարել վաղուց քննադատված, մակերեսային, ձևական, դեկլարատիվ մե-
թոդներով։ Այդպիսի շրջկոմները չեն ապահովում գյուղատնտեսական արտա-
դրության բոլոր ճյուղերի զարգացման և մշտական վերելքի տնտեսական
ծրագրի մշակումը։ Հենց այդ հանգամանքն էլ նախորոշում է պարտիական-
կազմակերպչական աշխատանքի արատավոր ոճը, ցրվածությունը և անգործ-
նականությունը, որի հետևանքով շրջանի գյուղատնտեսությունը զարգանում*

է ծայրահեղ դանդաղ տեմպերով, համարյա առանց պարտշրջկոմի լրջորեն
ուղղություն տվող և կազմակերպող դերի։

Չի կարելի ասել, թե այդպիսի շրջանների ղեկավար և պատասխանատու
աշխատողները քիչ են լինում կոլտնտեսություններում։ Ոչ, նրանք լինում են
տեղերում, և այն էլ՝ շատ։ Բայց նկատելի արդյունքներ չեն զգացվում, որով-
հետև այդ այցելությունները, որպես կանոն, լինում են կարճատև և նրանք
սահմանափակվում են հիմնականում, «ընդհանրապես» աշխատանքների մա-
սին հարցափորձ անելով, կամ՝ վճռվում են սովորաբար ընթացիկ, մանր տըն-
տեսական հարցեր։ Իսկ որպեսզի երկար ժամանակ նստեն կոլտնտեսությու-
նում և նրա ղեկավարների, ակտիվի և կոլտնտեսականների հետ մեկտեղ
հաշիվներ անեն, որոշեն կոլտնտեսության կոնկրետ խնդիրները, մշակեն ագ-
րոզոոտեխնիկական և կազմակերպչական միջոցառումները, իսկ այնուհետև
ամբողջ պարտիական-քաղաքական և կազմակերպչական աշխատանքը են-
թարկեն դրանց կենսագործմանը,— ահա այդ հիմնականն ու պետքականը
բոլոր տեղերում չէ, որ կատարվում է։

Այդպիսի դեպքերում ձևականորեն բոլոր հիմնական հարցերը, որոնք
կապված են գյուղատնտեսության վերելքի մասին պարտիայի դիրեկտիվների
և որոշումների հետ, մեկ անգամ չէ, որ դառնում են շրջկոմի բյուրոների,
պլենումների և սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովների
քննարկման առարկա։ Այդպիսի ժողովների քանակի մեջ թերություններ չեն
լինում։ Բայց քանի որ պարտիական կազմակերպությունները չեն որոշում
իրենց սեփական, կոնկրետ խնդիրներն այդ դիրեկտիվների համաձայն և չեն
կազմակերպում դրանց պրակտիկ կենսագործումը, նման քննարկումները
սահմանափակվում են լոկ ընդհանուր, դեկլարատիվ դատողություններով, իսկ
պարտիական ակտիվը, կոմունիստները, կոլտնտեսությունների և ՄՏԿ-ների
հրամանատարական կազմը դաստիարակվում են ոչ թե պարտիայի որոշում-
ների պրակտիկ իրականացման համար մղվող իսկական պայքարում, այլ
այդ որոշումների կատարման անհրաժեշտության մասին ապարդյուն կոչերով
և խոսակցություններով։ Ստեղծվում է հանձնարարված աշխատամասի նկատ-
մամբ անպատասխանատվության վիճակ։ Կազմակերպչական աշխատանքը
դառնում է բովանդակազուրկ, գտնվում է համարյա դատարկ շարժընթացի
մեջ, ունենալով օգտակար գործողության ցածր գործակից։

Կազմակերպչական աշխատանքի այդպիսի ոչ-պիտանի ոճին պետք է
անհապաղ վերջ տալ։

Կազմակերպչական աշխատանքի թուլություն է նկատվում սոցիալիստա-
կան մրցության, մսի ու կաթի արտադրության ավելացման պարտավորու-
թյուններ ստանձնելու նկատմամբ մի շարք շրջկոմների ղեկավարման մեջ։
Այդ գործում աչքի են ընկել երկու խոշոր թերություններ, որոնք ժամանակին
նշվել են Կենտկոմի բյուրոյի համապատասխան որոշումներում, ինչպես նաև
ՀԿՊ XIX համագումարում։ Ամենից առաջ պետք է ասել, որ շրջանների, օրի-
նակ, Կրասնոսելսկի շրջանի մի շարք պարտիական և սովետական ղեկավար
աշխատողների մոտ մշակվել է, եթե կարելի է այսպես արտահայտվել, փոքր
թվերի, պարտավորություններ վերցնելու ժամանակ ցածր ցուցանիշների հո-
գեբանություն։ Դա եղավ այն բանի հետևանքը, որ անցյալում շրջանի ղեկա-
վարները իրենց ներդրություն չէին տալիս լավագույն ձևով, տնտեսվարի պես
հայտաբերելու Կրասնոսելսկի շրջանի վիթխարի ռեզերվները՝ նրա չափազանց



հարուստ հնարավորություններով ու կերային ռեսուրսներով հանդերձ, և
դրանք ակտիվ գործողության մեջ դնելու անասնաբուծության շեշտակի վե-
րելքի համար։ Դրա փոխարեն նրանք բավարարվում էին դեպի առաջ կատա-
րած աննշան քայլերով։ Եվ ահա, պարտավորություններ ստանձնելու ժամա-
նակ կողմնորոշվելով ոչ թե եղած ռեսուրսներով, այլ չարդարացված, անց-
յալում ունեցած աշխատանքի ցածր ցուցանիշներով, նրանք չեն «համարձակ-
վում» միանգամից մեծ թափ առնել՝ վերցնել լարված, իրական պարտավորու-
թյուններ և իսկական պայքար կազմակերպել նրանց կատարման համար։

Այնուհետև, պարտիայի մի քանի շրջկոմներ հաճախ գրեթե ձեռքից բաց
են թողնում կոլտնտեսությունների կողմից ստանձնած սոցիալիստական պար-
տավորությունների կատարման ուղղությամբ կազմակերպչական աշխատան-
քը։ Այդպիսի պարտիական կոմիտեների թողտվությամբ շատ կոլտնտեսու-
թյունների նախագահներ, սկզբնական պարտիական կազմակերպությունների
քարտուղարներ այդ պետականորեն կարևոր գործի նկատմամբ ցուցաբերում
են ձևական, բյուրոկրատական վերաբերմունք, սահմանափակվում են միայն
պարտավորություններ կազմելով, իսկ ամենագլխավորը՝ նրանց հետագա
պրակտիկ կատարումը, թողնում են, կարելի է ասել, ինքնահոսի, հանգա-
մանքների տարերային ընթացքին։ Բանն այնտեղ է հասել, որ մի շարք դեպ-
քերում կոլտնտեսությունների նախագահները, բրիգադիրները, գյուղատնտե-
սության մասնագետները վատ են պատկերացնում իրենց կոլտնտեսություն-
ների ստանձնած պարտավորությունները։ Մի՞թե հասկանալի չէ, որ այստեղ
չի կարող լուրջ խոսք լինել այն կազմակերպչական աշխատանքի մասին, որը
տարվում է անասնաբուծության մթերքների արտադրության բարձր ցուցա-
նիշների հասնելու համար։

Պարտիական կազմակերպությունները պետք է խստորեն հետևեն այն
բանին, որպեսզի սոցիալիստական պարտավորությունների կատարման գործը
գտնվի կոլտնտեսությունների պրակտիկ գործունեության կենտրոնում, միջո-
ցառումներ մշակվեն այդ պարտավորությունների կենսագործման համար,
հաշիվներ արվեն, թե ինչպիսի՞ միջոցներով պետք է կատարվեն պարտավո-
րությունները։ Պարտավորություններով նախատեսված ցուցանիշները ան-
պայմանորեն պետք է համաձայնեցվեն կոլտնտեսությունների տարեկան արտա-
դրական պլանների հետ։ Բոլոր կոլտնտեսականները պետք է իսկապես ոգևո-
րված լինեն սոցիալիստական պարտավորությունները կատարելու համար։ Այստեղ
պետք է օրենք դառնա այն, որ եթե վերցրել ես բարձր պարտավորություններ,
ապա դրանք պետք է կատարես։ Այս փորձաքարի վրա է ստուգվում, թե
պարտիական աշխատողներից ո՞րն է գործի իսկական կազմակերպիչը և
որը՝ ոչ։ Կազմակերպչական աշխատանքի և գյուղատնտեսության կոնկրետ
ղեկավարման, նրա վերելքի հեռանկարների միջև եղած անխախտ կապի բա-
ցակայությունն էլ հենց պրակտիկայում հասցնում է այն բանին, որ շրջան-
ների առանձին ղեկավարներ դադարում են տեսնել շրջանի էկոնոմիկայի
զարգացման հեռանկարները նույնիսկ այն ժամանակ, երբ շրջանի տնտեսու-
թյունը կամ նրա առանձին ճյուղերը չեն զարգանում։ Եվ, ընդհակառակը, երբ
պարտիայի շրջկոմն իր կազմակերպչական աշխատանքը տանում է խելամը-
տորեն, այն ենթարկում է կոլտնտեսությունների առօրյա գործերին, ապա
դրական արդյունքներն անհապաղ հանդես են գալիս։ 1956 թվականին Արտա-

շատ շրջանից Շահումյանի շրջանին անցած ութ կոլտնտեսությունների խոշոր
քայլը, որի մասին հիշատակվեց համագումարին տրված հաշվետու զեկուցման
մեջ, միանգամայն ուսանելի ու բնորոշ է։

Նշանակում է, բովանդակալից, կոնկրետ կազմակերպչական աշխատանքի
միջոցով պարտիայի շրջկոմը պետք է ամուր կերպով իր ձեռքը վերցնի տնտե-
սության կառավարման ղեկը և հաստատակամորեն այն առաջ տանի։

Հայաստանի Կոմպարտիայի XIX համագումարին տված Կենտկոմի հաշ-
վետվության և համագումարի բանաձևի մեջ հստակորեն նշված է, որ գյու-
ղատնտեսության մթերքների արտադրության շեշտակի ավելացման խնդիրնե-
րի պրակտիկ լուծումը, անտարակույս, պահանջում է տնտեսության վարման
բարձր կուլտուրա։ Մեր ռեսպուբլիկայում եղած սակավահողության պայման-
ներում այդ դրույթը, որպես գյուղատնտեսական արտադրության գլխավոր
ռեզերվ, ստանում է վճռական նշանակություն։ Նշանակում է, մեզ մոտ հար-
ցը վերաբերում է գյուղատնտեսությունը գիտության և արտադրության բարձր
կուլտուրայի հիման վրա առավել ինտենսիվ վարելուն։

Հողագործության բարձր կուլտուրան բաղկացած է զանազան կոնկրետ
տարրերից, որոնցից նույնիսկ մեկի խախտումը բացասաբար է անդրադառ-
նում բերքատվության վրա։

XIX համագումարում բավականաչափ պարզությամբ խոսվեց այն պայ-
մանների կարևորագույն նշանակության մասին, որոնք անհրաժեշտ են բարձր
և կայուն բերք ստանալու համար, այն է՝ ճիշտ ցանքաշրջանառությունների,
այսինքն՝ գյուղատնտեսական կուլտուրաների գիտականորեն և տնտեսապես
հիմնավորված հերթականության կիրառումը, սերմարուծության կազմակեր-
պումը հողային առանձնահատկություններն ու կուլտուրաները հաշվի առնե-
լով, պարարտանյութերի ճիշտ օգտագործումը, ինչպես նաև ագրոտեխնիկա-
կան կոմպլեքսի մի ամբողջ շարք միջոցառումների կիրառումը։ Համագումա-
րում ցույց տրվեց, որ ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններում խախտ-
վում են գյուղատնտեսությունը վարելու ամենատարրական ագրոտեխնիկական
կանոնները։ Դրա հետևանքով մենք դեռ ոչ ամեն տեղ է, որ ապահովում ենք
կայուն և բարձր բերք։ Ռեսպուբլիկայի մի ամբողջ շարք շրջաններում եղանակի
պայմանները դեռևս մնում են որպես վճռող ֆակտորներ։ Բայց անհրաժեշտ
է հողագործության կուլտուրայի ընդհանուր մակարդակի բարձրացման մի-
ջոցով հասնել այն բանին, որպեսզի եղանակի պայմանները դառնան բարձր
բերքի ստացման ոչ-գլխավոր ֆակտորներից մեկը։ Ժամանակակից գյուղա-
տնտեսական գիտությունը թույլ է տալիս նվազագույնի հասցնել եղանակի
բացասական պայմանների ազդեցությունը, և, ընդհակառակը, բազմապատ-
կել նրա դրական պայմանների արդյունքը։

Տվյալ հարցի մասին ամբողջ ասվածը մի ինչ-որ նորություն չէ։ Խնդիրն
այն է, որ այդ բանը որոշ տեղերում չի արվում կամ ոչ-լրիվ է արվում։
Ակներև է, որ գյուղատնտեսությունը վարելու բարձր կուլտուրան երկնքից չի
ընկնում, այն ստեղծում և արմատավորում են մարդիկ։ Դա նշանակում է,
որ անհրաժեշտ է բարձրացնել գյուղատնտեսության աշխատողների ընդհա-
նուր կուլտուրան, նրանց որակավորումը։ Իսկ այդ բանի համար հարկավոր
է հաստատակամորեն, մտածված կերպով և շատ աշխատել մարդկանց հետ,
պրակտիկորեն կազմակերպել, հետևողականորեն պատվաստել այդ կուլտու-
րան բոլոր հողագործների մեջ։



Այսպիսով, պարտիական և սովետական օրգանների, գյուղատնտեսության
բոլոր աշխատողների անհետաձգելի խնդիրն է՝ գյուղատնտեսական կուլտու-
րաների մշակման և անասնաբուծության զարգացման, գիտության և առաջա-
վոր պրակտիկայի հանձնարարած մեթոդների լայն ու ակտիվ կիրառման մի-
ջոցով սիստեմատիկորեն բարձրացնել գյուղատնտեսությունը վարելու կուլ-
տուրան։ Դա, ամենից առաջ, ենթադրում է գյուղատնտեսության բոլոր աշ-
խատողների ագրոզոոտեխնիկական և տնտեսագիտական գիտելիքների սիստե-
մատիկ աճ, վճռական տեղամասերի ամրապնդում մասնագետներով և գործի
լավագույն կազմակերպիչներով։

Դա մեր կենսական և կարևոր պրոբլեմներից մեկն է, և այն պետք է
պրակտիկորեն լուծենք շատ կարճ ժամանակամիջոցում, պարտիայի և կա-
ռավարության դիրեկտիվների կենսագործմամբ։ Շատ պարտիական կազմա-
կերպությունների կազմակերպչական աշխատանքի թուլությունն առավել ցայ-
տուն է արտահայտվում աշխատանքի առաջավոր փորձի տարածման բնագա-
վառում։ Այժմ յուրաքանչյուրի համար բացարձակապես պարզ է այդ գործի
կարևոր և վճռական նշանակությունը։ Բայց, չնայած դրան, շատ դեպքում
միայն խոսվում է բոլորի կողմից յուրացված այդ ճշմարտության մասին։
Իսկ ինչպե՞ս անել, որպեսզի կոլտնտեսություններում, սովետական տնտեսու-
թյուններում, ՄՏԿ-ներում, բրիգադաներում, ֆերմաներում տնտեսության վար-
ման առաջավոր փորձը, առաջավոր մարդկանց նվաճումները պրակտիկայում
արմատավորվեն ուրիշների մոտ. ահա դրա վրա է, որ քիչ են աշխատում։ Նախ
իրոք, աշխատանքի առաջավոր փորձը տարածելու համար հարկավոր է, որ
այդ փորձը սովորեն նրանք, ովքեր պետք է նրանից օրինակ վերցնեն։ Դրա
համար անհրաժեշտ է սովորեցնել, որպեսզի նրանք իմանան, թե ինչո՛ւմ է
կայանում այդ փորձի առաջավոր լինելը, ինչպե՛ս է այն ձեռք բերվել։

Սակայն, ինչպես դիպուկ կերպով մատնանշված է ՍՄԿՊ Կենտկոմի և
ՍՍՌՄ Մինիստրների Սովետի՝ գյուղատնտեսության բոլոր աշխատողներին
ուղղված դիմումի մեջ, հաճախ պարտիական կազմակերպություններն իրենց
խնդիրները սահմանափակում են նորը փոխ առնելու մասին կոչերով, զբաղ-
վում են, գլխավորապես, առաջավոր փորձի վերացական պրոպագանդայով,
ընդ որում երբեմն էլ պրոպագանդելով ոչ թե առաջավոր փորձի էությունը,
այլ միայն առաջավորների անունները։ Պարզ է, որ այդ քիչ է, որ դա գործի
միայն մի մասն է։ Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է կազմակերպել առաջավոր
փորձի պրակտիկ արմատավորումը, որպեսզի այն դառնա շրջանի բոլոր կոլ-
տնտեսությունների սեփականությունը։ Դրա համար հարկավոր է գտնել և
կիրառել աշխատանքի առավել գործնական և արդյունավետ ձևեր։

Մի շարք շրջաններում, օրինակ, աշխատանքի մեթոդներին ու ձևերին
ծանոթանալու համար ո՛չ միայն կազմակերպում են աշխատողների ուղար-
կում դեպի առաջավոր կոլտնտեսությունները, այլ դրա հետ մեկտեղ մի ուրիշ
բան ևս։ Իրենց տնտեսությունները օրինակելիորեն կազմակերպող և վարող
կոլտնտեսությունների նախագահներին որոշ ժամանակով ուղար-
կում են ետ մնացող կոլտնտեսություն, որտեղ նրանք մանրամասնորեն ծա-
նոթանալով գործերի վիճակին, կադրերին, նյութա-տեխնիկական հնարավո-
րություններին, այդ կոլտնտեսության ղեկավարության հետ միասին, պրակ-
տիկորեն, իրենց փորձի հիման վրա կազմում են տվյալ տնտեսության վերել-

քի պլաններ։ Իսկ պարտիական կազմակերպությունները պետք է օգնեն և
հետևեն այն բանին, որպեսզի այդ պլանը օրեցօր կենսագործվի։
Այս առումով խոշոր և արդյունավետ աշխատանք է կատարում Վեդիի
շրջանի «Նոր Կյանք» կոլտնտեսության նախագահ, բիոլոգիական գիտություն-
ների թեկնածու Զաքար Պետրոսյանը։ Սրանից երկու տարի առաջ, արձագան-
քելով պարտիայի կոչին, նա կամավոր կերպով մեկնեց գյուղ և համախմբե-
լով կոլտնտեսականներին, իր ամբողջ գիտելիքներն ու կազմակերպական
եռանդը ներդրեց հանրային տնտեսության զարգացման գործին, որի շնորհիվ
էլ կոլտնտեսությունն արդեն բռնել է վերելքի ուղին։ Ընկ. Պետրոսյանը ոչ
միայն հետևում է գիտության նվաճումներին, այլև դրանք գործադրում է իր
գլխավորած տնտեսության մեջ։ Այդ պրակտիկան ուսանելի է մյուս կոլտնտե-
սությունների նախագահների համար։

Առաջավոր փորձի տարածումը խոշոր կազմակերպչական և ստեղծագոր-
ծական աշխատանք է։ Կոլտնտեսությունների արտադրական կյանքը բաղկա-
ցած է տարրերի, կողմերի բազմապիսությունից։ Մի կոլտնտեսությունում
մշակված են աշխատանքի արդյունքների մեջ կոլտնտեսականների նյութական
շահագրգռվածության շատ հետաքրքիր ձևեր, որոնց շնորհիվ կարգավորվել
է աշխատանքի կազմակերպումը, մի ուրիշ կոլտնտեսությունում կադրերը
օրինակելիորեն են տեղաբաշխված արտադրության վճռական տեղամասերում,
երրորդում լավ է կազմակերպված ագրոզոոտեխնիկական կոմպլեքսի կիրառու-
մը և այլն։ Այդ ուղղությամբ կազմակերպչական աշխատանքի էությունը,
պայքարը արտադրության մեջ առաջավոր փորձը լայնորեն արմատավորելու
համար կայանում է նրանում, որպեսզի սիստեմատիկորեն, խնամքով ուսում-
նասիրվի կոլտնտեսությունների կյանքում, մարդկանց արտադրական գործու-
նեության մեջ, աշխատանքի այս կամ այն բնագավառում և տնտեսության
ճյուղում առաջ եկած նորը, առաջավորը, կարողանալ ընդհանրացնել այն և
ներդնել կոլտնտեսությունների, բրիգադաների, ֆերմաների աշխատանքում։
Հենց այստեղ էլ որոշակի է դառնում պարտշրջկոմի ուղղություն տվող, փորձ-
ված ձեռքը, որի օգնությամբ առանձին առաջավորների հաջողություններից
պետք է անցնել շրջանի ամբողջ գյուղատնտեսության ընդհանուր վերելքին։

Կազմակերպչական աշխատանքի մակարդակը վճռականապես կախված է
կադրերի ընտրության և դաստիարակության գործի դրվածքից։

Գյուղատնտեսությունը վարելու կուլտուրայի բարձրացման մեջ արտա-
կարգ կարևոր օղակ է գյուղատնտեսական և զոոտեխնիկական կադրերի ճիշտ
օգտագործումը։

Մեր ռեսպուբլիկայում կան բարձրագույն և միջնակարգ կրթությամբ ավե-
լի քան 6000 գյուղատնտեսներ, զոոտեխնիկներ, անասնաբուժական աշխա-
տողներ, այդ թվում՝ 3500 մասնագետ բարձրագույն կրթությամբ։ Սակայն
մենք դեռևս չենք կարողացել գյուղատնտեսական արտադրությունն այնպես
կազմակերպել, որպեսզի մասնագետների այդ մեծ բանակն իր կարևոր ու
պատասխանատու դերը խաղա հողի բերրիության, բերքատվության և անաս-
նաբուծության մթերատվության պրոգրեսիվ բարձրացման գործում։ Այստեղ
թաքնված է գյուղատնտեսության վերելքի համար անհրաժեշտ ուժերի մեծ ռե-
զերվ, որովհետև իրենք՝ գյուղատնտեսները պետք է հանդիսանան գիտության
և արտադրության կապող օղակը, գիտությունը գյուղատնտեսական կյանքում
տարածողները։ Պետք է ասել, որ մեծ մասամբ գյուղատնտեսներին, զոոտեխ-



նիկներին կոլտնտեսություններում և ՄՏԿ-ներում լավագույն դեպքում օգտա-
գործում են որպես կոնսուլտանտներ և ոչ թե արտադրության կազմակերպիչ-
ներ։ Բայց ահա Շամշադինի շրջանում գործարար կերպով մոտեցան հարցին.
այստեղ չկան կոլտնտեսությունների ազատված գյուղատնտեսներ և զոոտեխ-
նիկներ, նրանց նշանակել են դաշտավարական բրիգադաների բրիգադիրներ,
ֆերմաների վարիչներ, այսինքն՝ հանձնարարել են արտադրության կոնկրետ
տեղամասեր, և գործն էլ լավ է գնում։ Գործի վրա չափազանց բացասական-
րեն է ազդում մասնագետների նկատմամբ առանձին կոլտնտեսությունների
նախագահների հիմնովին սխալ, հետամնաց վերաբերմունքը։ Ոչ քիչ փաստեր
կան, երբ կոլտնտեսությունների նախագահները դիմադրություն են ցույց տա-
լիս և չեն ցանկանում կոլտնտեսությունում գյուղատնտեսներ և զոոտեխնիկ-
ներ ունենալ։ Դրանք հետամնաց տրամադրություններ են, որոնք խանգարում
են գյուղատնտեսական արտադրության կուլտուրայի բարձրացմանը. անհրա-
ժեշտ է դրանք վճռականապես հաղթահարել։ Գյուղատնտեսական և զոոտեխ-
նիկական անձնակազմը գյուղատնտեսության վրա գիտության ազդեցության
ամենամասսայական և կարևոր օղակն է, և պարտշրջկոմները պետք է միջոց-
ներ ձեռնարկեն, որպեսզի այն կայուն կերպով իր տեղը գրավի գյուղատըն-
տեսական արտադրության մեջ։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի դիմումի մեջ ասված
է. «Հարկավոր է ճիշտ օգտագործել գյուղատնտեսության մասնագետներին,
բարձրացնել նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի հա-
մար, ավելի շատ խորհրդակցել նրանց հետ։ Այդ կադրերը մեր ոսկե ֆոնդի՝
հիանալի պրակտիկների՝ կոլտնտեսությունների նախագահների, ՄՏԿ-ների ու
սովետական տնտեսությունների դիրեկտորների, բաժանմունքների կառավա-
րիչների, ֆերմաների վարիչների և տրակտորային ու դաշտավարական բրի-
գադաների բրիգադիրների հետ ընդունակ են որակյալ կերպով լուծելու բարդ
խնդիրներ գյուղատնտեսության ղեկավարման, հողագործության և անասնա-
բուծության մթերքների արտադրության ավելացման գործում»։

Պարտիայի որոշումների կատարման համար մղվող պայքարի պրոցե-
սում, մեզ մոտ, ռեսպուբլիկայում, ինչպես և մեր ամբողջ երկրում, կոփվել է
գյուղատնտեսական արտադրության խոշոր կազմակերպիչների՝ կոլտնտեսու-
թյունների նախագահների, սովետական տնտեսությունների և ՄՏԿ-ների դի-
րեկտորների մի ամբողջ սերունդ։ Այդպիսիներից են՝ Մարտունու ՄՏ կայա-
նի դիրեկտոր Յ. Խաչատրյանը, Արտաշատի Քաղցրաշենի կոլտնտեսության
նախագահ Ա. Գրիգորյանը, Սիսիանի կոլտնտեսության նախագահ Գ. Դոլու-
խանյանը, Շահումյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսության նախագահ
Ա. Մեժլումյանը և շատ ու շատ ուրիշներ։ Այդպիսի կադրերը, որոնք
մեզ մոտ շատ են, այսուհետև էլ հմտորեն կլուծեն իրենց առջև կանգնած
բարդ խնդիրները։ Բայց մեզ մոտ դեռևս կան նաև կոլտնտեսություն-
ների թույլ նախագահներ։ Այդ պատճառով էլ, ինչպես կոչ է անում ՍՄԿՊ
Կենտկոմը, կադրերի ընտրության բարելավումը, կոլտնտեսությունների
նախագահների պոստում առավել տաղանդավոր կազմակերպիչներ առաջ
քաշելը, ինչպես անցյալում, այնպես էլ այժմ, մնում է որպես գլխավոր
խնդիրներից մեկը, նկատի ունենալով, որ դա ոչ թե ինչ-որ կարճատև պրո-
ցես է, այլ ամենօրյա, ամենահրատապ գործ՝ պարտիական կոմիտեների կազ-

մակերպչական աշխատանքում, նրանց ձգտման մեջ՝ սիստեմատիկորեն բարձրացնելու տնտեսության ղեկավարման մակարդակը։

Կադրերի ընտրության և տեղաբաշխման հարցը շատ բարդ հարց է։
Առանց չափազանցելու կարելի է ասել, որ պարտիական կոմիտեների և նրանց աշխատողների մոտ թերությունները ու սխալները մեծ մասամբ լինում են այդ գործում։ Աշխատանքի համար մարդիկ ընտրելը տեղի է ունենում այս կամ այն պատասխանատու աշխատողի անձնական, կարելի է ասել, սուբյեկտիվ կարծիքի համաձայն։ Այդպիսի մարդու առաջարկությունն էլ քննարկվում է հաստատման ժամանակ։ Այդ պատճառով էլ նման հարցում պարտիական և սովետական աշխատողի մոտ պետք է լինի խոր իմացություն, որպեսզի ընտրվող մարդուն որոշակի ժամանակաընթացքում ուսումնասիրելու, նրա ուժեղ և թույլ կողմերը ճշգրիտ հաշվի առնելու հիման վրա կարողանա այնպիսի մարդ ընտրել, որպեսզի ընտրություն կատարողի անձնական կարծիքը լիովին համընկնի գործնական և քաղաքական հատկանիշներով կադրեր ընտրելու մասին պարտիական սկզբունքի հետ։

Ճանաչել կադրերին՝ այդ նշանակում է յուրաքանչյուրին գիտենալ աշխատանքի մեջ, խորամուխ լինել նրա ներքին հոգեկան աշխարհի, ապրումների մեջ, իմանալ նրա պոտենցիալ հնարավորություններն ու ընդունակությունները, հակումները։ Ուստի մեզ հարկավոր է ունենալ պարտիականի սուր, զննող աչք, որպեսզի արտադրական պրոցեսում մարդկանց հետ շփման ժամանակ կարողանանք տպավորություն ստանալ և կարծիք կազմել կադրերի մասին, նրանց՝ նպատակահարմար ձևով այնպիսի աշխատանքում օգտագործելու համար, որտեղ, իրենց անհատական հատկանիշների համաձայն, նրանք կարող են գործին ավելի շատ օգուտ տալ։ Կադրերի հետ տարվող աշխատանքի թույլ տեղը կին կադրերի հետ կատարվող անբավարար աշխատանքն է։ Չի կարելի անցնել այնպիսի փաստի կողքից, երբ պարտիական և սովետական մի շարք օրգաններում կանանց հազվադեպ են ղեկավար պոստի առաջ քաշում։ Կանայք քիչ են պարտիական կոմիտեների քարտուղարների կազմում, ղեկավար աշխատանքի մեջ՝ շրջսովետների գործկոմներում, կոլտնտեսությունների նախագահների, սովետական տնտեսությունների ու ՄՏԿ-ների դիրեկտորների պաշտոնում։ Անհրաժեշտ է այդ լուրջ թերությունը վճռականորեն վերացնել։

Պրակտիկան ցույց է տալիս և մեզ սովորեցնում է, որ եթե գործը գլխավորում է խելացի, գործարար, կազմակերպչական լավագույն տվյալներ ունեցող աշխատող, ապա նա, բնականաբար, մարդկանց ընտրում, դաստիարակում և կարևոր տեղամասերում է դնում յուրովի, իր ձևով։ Այդ դեպքում ստեղծվում է ուժեղ, գործի համար ընդունակ կոլեկտիվ։ Եվ, ընդհակառակը, եթե աշխատանքի այս կամ այն տեղամասում դրվում է թույլ, քիչ նախաձեռնություն ցուցաբերող մարդ, ապա, որպես կանոն, նա իր համար էլ ընտրում է հենց այդպիսի մարդիկ և, մեծ մասամբ, բնավ ոչ այն պատճառով, որ գիտակցաբար է ինքն այդ ցանկանում, այլ այն պատճառով, որ այլ չափանիշ նա չի տեսնում։ Հենց այդ դեպքում է գործը մեծապես վնասվում, ստեղծվում է դժվարին վիճակ այն իմաստով, որ եթե նույնիսկ փոխես էլ այդպիսի ղեկավարին, ապա, միևնույն է, նրանից հետո էլ թույլ մարդիկ շատ են մնում, որոնց դաստիարակելու կամ փոխելու համար մեծ ժամանակ է պահանջվում, և գործը կարգավորվում է չափազանց դանդաղ։ Այս հանգամանքները մեծ



նշանակություն ունեն, և մեր աշխատանքի պրակտիկայում մենք պետք է դրանք հաշվի առնենք։

Մեզ մոտ ավելի լուրջ թերություններ կան մարդկանց, և, հատկապես, կոլտնտեսությունների ղեկավար կադրերի հետ տարվող աշխատանքում։ Կազմակերպչական աշխատանքի կարևոր և բաղկացուցիչ մասը հոգատարությունն է կադրերի՝ կոլտնտեսությունների նախագահների, բրիգադիրների, օղակավարների որակավորման, նրանց կուլտուրայի բարձրացման իմաստով։ Գաղտնիք չէ, որ մի քանի պարտշրջկոմների քարտուղարներ լինելով կոլտնտեսություններում, բրիգադաներում, հարցնում են ընթացիկ գործերի մասին, որոնք կարևոր ու անհրաժեշտ են։ Բայց նրանք բոլորովին չեն հետաքրքրվում, թե կոլտնտեսությունների նախագահները, բրիգադիրները, ֆերմաների վարիչները ի՞նչ են կարդում գյուղատնտեսական արտադրության էկոնոմիկայի և ագրոտեխնիկայի մասին, հետևո՞ւմ են արդյոք գյուղատնտեսական և տնտեսագիտական գրականության նորություններին և այլն։ Բայց չէ՞ որ մեզ մոտ կան կոլտնտեսությունների նախագահներ, որոնք մասնագիտական ոչ մի գրականություն չեն կարդում, մնում են հին բագաժով, որն անբավարար չափով է համապատասխանում ներկայիս պահանջներին։

Եթե պարտիական կազմակերպությունները մեծ հոգատարությամբ վերաբերվեն կադրերի տնտեսագիտական և ագրոզոոտեխնիկական գիտելիքների բարձրացմանը, սիստեմատիկորեն, կոնկրետ օրինակների վրա նրանց մեջ ճաշակ պատվաստեն այդ գործի նկատմամբ, ապա կոլտնտեսությունների ստեղծագործական կյանքը, արտադրության զարգացումը ավելի մեծ բարձրության կհասնեն։ Այդպիսի աշխատանք մենք պետք է ամենուրեք կազմակերպենք, իսկ դա գյուղատնտեսության զարգացման պլանների հաջող իրականացման վճռական պայմաններից մեկն է։

Անհրաժեշտ է ամեն օր ուշադիր հետևել կադրերի աշխատանքին, նրանց աճին, օգնել նրանց՝ կատարելագործվելու, տիրապետելու մասսաների մեջ կազմակերպչական աշխատանքի արվեստին։

Հայտնի է, որ կան աշխատողներ, որոնք աշխատանքի ընթացքում շատ են կառչում հնից մնացած սխեմաներին ու տրաֆարետներին, խուսափում են ամեն մի նորից, կիրառում են աշխատանքի այնպիսի մեթոդներ, որոնք «պիտանի» են կյանքի բոլոր ժամանակների համար։ Այդպիսի աշխատողները գերադասում են միջին գիծ բռնել, միայն թե նկատողություն չստանան սխալների համար։ Արտաքուստ նրանք կարծես չեն էլ սխալվում, բայց միևնույն ժամանակ աշխատանքում շոշափելի արդյունքների էլ չեն հասնում, կորցնում են նորի զգացումը, դադարում են կյանքի կարևոր պահանջները տեսնելուց։ Մեզ մոտ կան նաև շատ ձեռներեց աշխատողներ, որոնք կարողանում են աշխատանքում հանդես բերել ստեղծագործական ակտիվություն, խելամիտ համարձակություն, մշտապես որոնում են աշխատանքի առավել նպատակահարմար արդյունավետ մեթոդներ։ Պարզ է և այն, որ ամեն մի նախաձեռնություն, ամեն մի նոր լավագույն արդյունքներով հանդերձ օժտված է նաև թերություններով և առանձին սխալներով։ Դրա համար պարտիական օրգանները, նրանց ղեկավարները պետք է հատկապես հոգատար և ուշադիր լինեն այսպիսի ղեկավարների հանդեպ, ժամանակին նկատեն և վերացնեն բացերն ու վրիպումները, նրանց մոտ ստեղծեն ինքնավստահություն, նրանց մեջ ամեն կերպ պատվաստեն ստեղծագործելու և նախաձեռնելու ունակություն-

ներ: Հարկավոր է ստեղծել այնպիսի մթնոլորտ, որտեղ աշխատողների մոտ չառաջանա սխալվելու վախ, նկատի ունենալով, որ առանձին սխալը ինքնըստինքյան սարսափելի չէ, եթե կարողանում ես այն տեսնել, վերլուծել նրա առաջացման պատճառները և որոշել նրա հաղթահարման ուղիները:

Կադրերի ճիշտ դաստիարակման գործում կարևոր պայմաններից մեկը հանձնարարված աշխատամասի համար նրանց նկատմամբ հանդես բերվող խիստ օբյեկտիվ պահանջկոտությունն է, որն, իհարկե, բացառում է կադրերին անհիմն կերպով անհանգստացնելը: Դրա բացակայությունը որպես կանոն հասցնում է այն բանին, որ ստեղծվում է անպատասխանատվություն, թերությունների փոխադարձ ներման, ցածր կարգապահության մթնոլորտ, որը, վերջին հաշվով, բացասաբար է անդրադառնում աշխատանքի վրա: Այդ տեսակետից խոշոր թերություններով է տառապում պարտիայի Աշտարակի, Հոկտեմբերյանի, Սպիտակի և մի քանի այլ շրջկոմների աշխատանքը: Այդ շրջկոմները անհրաժեշտ հաստատակամություն և հմառություն հանդես չեն բերում կադրերից՝ հանձնարարված աշխատամասի գործերի վիճակի համար լրիվ պատասխանատվություն պահանջելու համար, որպեսզի նրանք իրենց ամբողջ ուժերն ու ուշադրությունը կենտրոնացնեն տնտեսական կարևոր հարցերի լուծման վրա:

Օբյեկտիվ պահանջկոտությունը պարտիական աշխատողի համար հեղինակություն ստեղծելու կարևոր գործոններից մեկն է: Սկզբունքային և բացահայտ քննադատությունը, անաչառությունն ու պարզությունը մարդկանց հետ՝ գործարար մթնոլորտ ստեղծելու, կոլեկտիվը համախմբելու, թերությունները և սխալները արագորեն վերացնելու, աշխատանքի բոլոր տեղամասերում հաջողությունների հասնելու ճիշտ ուղին է:

Միանգամայն նոր և լուրջ խնդիրներ են դրվում շրջանային պարտիական կազմակերպությունների առջև ՄՏԿ-ների առաջիկա վերակառուցման առնչությամբ: Վերակառուցվող ՄՏԿ-ների մեքենաների և կադրերի առավել նպատակահարմար օգտագործումը, շրջանային Սովետների գործադիր կոմիտեները, կոլտնտեսությունները և վերջիններիս բրիգադները լավագույն ղեկավարներով ապահովելու հարցը շրջանային պարտիական կազմակերպությունների համար դառնում է հրամայական պահանջ:

ՄՏ կայանների վերակազմումը մի նոր էտապ է սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման գործում: Պարտիայի կողմից իրագործվող այդ միջոցառումն ավելի մեծ պարտավորություններ է դնում կոլտնտեսությունների ղեկավարների վրա, ավելի մեծ պահանջներ է հարուցում նրանց նկատմամբ: Գյուղում աշխատանքի ֆրոնտը ծավալվում է և խորանում, որի հետևանքով էլ անտեսությունը վարելու գործում ավելի քան մեծանում է կադրերի դերը:

Մենք կանգ առանք գլխավորապես պարտիական կազմակերպական աշխատանքի մի քանի թերությունների վրա: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները կուտակել են խոշոր փորձ, որից ելնելով նրանք բոլոր բնագավառներում առաջիկայում ավելի կբարձրացնեն պարտիական կազմակերպական աշխատանքը և այդպիսով լիովին կկենսագործեն ՀԿՊ XIX համագումարի որոշումները և ՍՄԿՊ Կենտկոմի դիրեկտիվները:

---

# ԴՐԱՅԶԵՐԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ ՌԵԱԿՑԻՈՆ ՄԱՄՈՒԼԻ ԴԵՄ

Ս. ՆԱԶԱՐՅԱՆ

Ամերիկյան գրող Թեոդոր Դրայզերը (1871—1945 թթ.) XX դարի պրոգրեսիվ գրականության փայլուն դեմքերից մեկն է: Նա իր ստեղծագործություններում պատկերել է ամերիկյան իրականությունը էական կողմերով, պատմել է ֆինանսական օլիգարխիայի կողմից անլուր տանջանքների դատապարտված հասարակ ժողովրդի կյանքի մասին:

Ժառանգելով ամերիկյան գրականության լավագույն տրադիցիաները, Դրայզերն առաջ անցավ իր նախորդներից, հետևողական ու անհաշտ պայքար մղեց իմպերիալիստական Ամերիկայի դեմ, կանգնեց ռևոլյուցիոն պրոլետարիատի դիրքերում, սոցիալիզմի դիրքերում:

1890-ական թվականներին, երբ Դրայզերը ձևակերպվում էր որպես գրող, Ամերիկան՝ Լենինի բնորոշմամբ, դառնում էր «առաջին երկրներից մեկը մի կողմից լկտիացած, կեղտի ու փարթամության մեջ խեղդվող մի բուռ միլիարդատերերի և մյուս կողմից հավերժապես աղքատության եզրին ապրող միլիոնավոր աշխատավորների միջև եղած անդունդի տեսակետից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 58):

Ամերիկյան իմպերիալիզմի առաջացման ու զարգացման պատմության, այդ պատմության հետ կապված շլացնող արտաքին կեղծ փայլի և անխուսափելի թշվառությունների վերարտադրությունը, ամերիկյան իրականության բազմակողմանի, անողոք քննադատությունը Դրայզերի ստեղծագործության բնորոշ գծերն են:

Մեծ արվեստագետն իր ստեղծագործություններով արտակարգ ուղղամտությամբ ոչնչացնում է Ամերիկայում տարածված «անսահմանափակ հնարավորությունների», «ամերիկյան դեմոկրատիայի» մասին հեքիաթը և ի ցույց դնում իրական Ամերիկան՝ ողբերգական Ամերիկան: Այդ անողոք դատավորը ամերիկյան ապրելակերպից առած իր կերպարների շարքով ու փաստերի դիպուկ կրակով քարուքանդ է անում դոլարով ընթացող մեխանիզմը և գծում ուոլլ-ստրիտյան Ամերիկայի իսկական դեմքը:

Այդ դեմքն ավելի ամբողջական, այսինքն՝ ավելի այլանդակ է դառնում, երբ Դրայզերը շոշափում է դոլարի մեխանիզմի հիմնական պտուտակներից մեկը՝ ռեակցիոն մամուլը:

Ամերիկյան ռեակցիոն մամուլի քննադատությունը Դրայզերի ստեղծագործության էական կողմերից մեկն է: Եվ այլ կերպ լինել չէր կարող. ամերիկյան իրականության դեմ ըմբոստացած հեղինակը չէր կարող անտեսել ռեակցիոն մամուլը, որի թույնով ներծծված է ամերիկյան ողջ իրականությունը:

Այդ թունոտ մթնոլորտն ուսումնասիրելու առումով Դրայզերը հարուստ ու

բազմակողմանի դպրոց է անցել։ Տասնվեց տարեկան հասակում սկսելով ինքնուրույն կյանք, աննշան վարձատրությամբ նա կատարում էր պատահած ամեն աշխատանք, ճաշակելով նաև կապիտալիստական քաղաքում արհամարհված ու մոռացված սևագործ բանվորի դառն վիճակը։

Իր ժուռնալիստական աշխատանքի տարիներին նա սեփական աչքերով տեսնելով աշխատավորների թշվառությունը, շփվեց կապիտալի մագնատների, պարտիաների առաջնորդների ու դատավորների, ֆինանսիստների ու խմբագիրների հետ։ Հենց այդ տարիներին էլ ապագա արվեստագետի ստեղծագործական հնոցում կուտակվեց ու հասունացավ կյանքից վերցրած այն հսկայական նյութը, որը հետագայում անսպառ սնունդ դարձավ նրա մեղադրական հզոր խոսքի համար, նրա՝ աշխարհով մեկ հռչակված երկերի համար։

Իր կյանքի լրագրային տարիները Դրայզերը վերարտադրեց «Գիրք իմ մասին» («Լրագրային տարիներ») ինքնակենսագրականում։ Այս գիրքը, որը, ինչպես հեղինակն է ասում, գրված է ցույց տալու համար, որ Ամերիկայում չկա ազատ մամուլ, միաժամանակ «դեմոկրատական» Ամերիկայի դեմ ուղղված մեղադրական պատկերավոր փաստաթուղթ է, «ազատ» Ամերիկայում արվեստագետի բախտի, նրա կրած տառապանքների ճշմարտացի վերարտադրություն։

Դրայզերը մի քանի տարի շրջեց Սեն-Լուիի, Պիտսբուրգի, Չիկագոյի ու Նյու-Յորքի փողոցներում։ Աղքատ թաղամասերի, գործադուլավորների, գործազուրկ ամբոխի միջով, Ուոլլ-ստրիտի բանկերի, լույսերով ու ռեկլամներով հեղեղված ռեստորանների ու վարիետեների ժխորի միջով, ամերիկյան իրականության շլացնող կոնտրաստն աչքի առաջ՝ նա մտավ խմբագրություն։ Այստեղ նա վերջնականապես համոզվեց, որ ոչ մի նմանություն չկա իրական կյանքի և բուրժուական գրականության ու մամուլի ստեղծած կյանքի միջև, որ բուրժուական լրագրերի և ժուռնալների հիմնական նպատակը իրականության աղավաղումն ու կյանքի հակասությունների քողարկումն է։ «Ոչինչ ինձ այնքան չէր հուզում, որքան այն հակասությունը, որը կար իմ կարդացածի և իմ դիտածի միջև»,— ասում է Դրայզերը («Интернациональная литература», 1935, № 12, стр. 64)։

Այդ հակասությունը չէր կարող չհուզել Դրայզերին, որի համակրանքը միշտ աշխատավորների կողմն էր, և որը հանդգնություն ուներ տեսնելու «կոպտորեն ու անամոթաբար ցուցադրված հարստությունը» և դրա կողքին կապիտալիստների ու բանվորների միջև երևացող բացահայտ թշնամությունը։

«Դու որքան քիչ գիտես կյանքի մասին, այնքան լավ»։ Հաջողության հասած ամերիկացու պարտքն է այս սկզբունքով դաստիարակել սկսնակ ամերիկացուն։ Կապիտալի մագնատների այդ առաջադրանքը ավելի եռանդով իրագործում է ամերիկյան ռեակցիոն մամուլը, որն զբաղվում է ամեն ինչով, բացի իրականությունը ճշմարտացի արտացոլելուց։ Ռեակցիոն մամուլի ներկայացուցիչները, հատկապես խնամքով ու զգուշությամբ են թաքցնում իմպերիալիզմի գլխավոր հակասությունը՝ աշխատանքի ու կապիտալի հակասությունը։ «Բոլոր խմբագրություններում,— ասում է Դրայզերը,— որտեղ ես գործ էի ունենում, որպես կանոն ինձ միշտ զգուշացնում էին, որ աշխատանքի և կապիտալի հարցերում պետք է չեզոք լինել և չսրել դրությունը» (Նույն տեղը, № 10, էջ 101)։

Սքողելով իմպերիալիզմի հիմնական հակասությունները, ընթերցողին մո-



լորեցնելու, նրա ուշադրությունը շեղելու նպատակով վաճառված մամուլի գրչակները թերթի էջերը լցնում են ամեն տեսակ ռեկլամներով։ Բազմաթիվ փաստերով Դրայզերը ցույց տվեց, որ ընթերցողների աչքերին թոզ փչող, իրականության հետ առնչություն չունեցող աղաղակող ռեկլամը բուրժուական մամուլի համար ամեն ինչ է, իսկ ժողովրդի համար՝ ոչինչ։

Կարճ ժամանակում, աղաղակող փաստերի ճնշման տակ, Դրայզերը հանգավ այն ճշմարիտ համոզման, որ իմպերիալիզմի պայմաններում կուտակման տենչով բռնված յուրաքանչյուր դիրք գրաված ամերիկացու խոսքի հետևում թաքնված են անձնական շահը, կեղծիքն ու խաբեությունը։ Եթե դեռ «ազատ» Ամերիկայում լրագրային աղմուկից գլուխը կորցրած մի այլ ամերիկացու համար գոյություն ունեն գեղեցիկ պատրանքներ, ապա դրանք առհավետ մեռնում են ժուռնալիստի համար։ «Ժուռնալիստը,— ասում է Դրայզերը,— կորցնում է հավատը այնպիսի գեղեցիկ բառերի նկատմամբ, ինչպիսիք են արդարադատությունը, ճշմարտությունը, գթությունը, հայրենասիրությունը, հասարակությանը ծառայելը։ Քարոզչին նա տեսնում է այնպես, ինչպես նա կա՝ ամեն տեսակ գեղեցկի կործանող, կեղծապաշտ, որը ձգտում է միայն իր օգտի, իր շահույթի համար։ Ժուռնալիստը գիտե, որ քաղաքականագետը ոչնչից չի խորշում, որ նա ժողովրդի տրամադրության, կրքերի ու անտեղյակությունների հետ ճարպկորեն ձեռնածություն անող սրիկա է։ Դատավորները, դրանք մարդիկ են, որոնք քթները բռնում են քամու ուղղությամբ՝ հարմարվելով այն հասարակության ու ազգի ուժեղների տրամադրությանն ու ցանկություններին, որոնց նրանք պատկանում են» (Նույն տեղը, էջ 105—106)։

Դրայզեր—ժուռնալիստի համար պարզ դարձավ նաև, որ այդ խաբեության մրցախաղում ամերիկյան լրագրողը առաջնակարգ ձեռնածուներից մեկն է, դատավորի ու ֆինանսիստի արժանավոր մրցակիցն ու վտանգավոր հակառակորդը։ Դրայզերը հատկապես լավ է ուսումնասիրել խմբագիրներին, որոնց մասին նա ասում է. «Նրանք բոլորն ունեն միևնույն հայացքը՝ անտարբեր և ցինիկ, որը հատուկ է լրագրային բիզնեսներին և ֆինանսիստներին» (Նույն տեղը, № 3, էջ 67)։

Իսկ խիղճը չկորցրած, ազնիվ ու տաղանդավոր ժուռնալիստը դառնում է բուրժուական մամուլի լակեյների ծաղրի առարկան, դաժանորեն հալածվում նրանց կողմից։ Դրայզերն իր գրքում պատմում է այդպիսի մի շարք դեպքերի մասին։ Նրա ժուռնալիստ ընկերներից մեկը, որը «հիանալի լրագրային աշխատող էր և ուներ բոլոր տվյալները հաջողության հասնելու», ինքնասպան է լինում Նյու-Յորքի հյուրանոցներից մեկում։ «Պայքարն այլևս նրա ուժերից վեր էր... Նյու-Յորքը Սեն-Լուի չէ»,— բացատրում է Դրայզերը և ցույց տալիս, որ Նյու-Յորքում խտացված են իմպերիալիստական Ամերիկայի բոլոր գույները, գույներ, որոնց գորշության միջով չի կարող թափանցել և ոչ մի լուսավոր շիթ։ Նյու-Յորքում, ուր «քաղաքը վխտում է քաղցածներով, ամեն տեսակ մասնագիտության տեր գործազուրկներով», «վանող ու նեխվող ավելի շատ բան կա», քան որևէ տեղ Ամերիկայում, «հարստության և աղքատության կոնտրաստը այստեղ հանդես է գալիս ավելի ցցուն կերպով, քան որևէ տեղ Ամերիկայում» («A book about myself», London, 1929, p. 487)։

Այդ նույն ժամանակ թերթերն ամբողջ ձայնով բղավում են բարձրագույն ճշմարտությունների ու իդեալների մասին, գիտենալով, որ իրենց «ներքին

կարգերում թագավորում են անհոգությունն ու կոպտությունը: Մարդկանց վրա, ինչպիսին ես էի,— գրում է Դրայզերը,— նայում էին որպես ավտոմատների և մեզանով ծածկում ամեն տեսակ ճեղքվածք... Դուք պետք է կատարեիք այն, ինչ ձեզնից պահանջում էին կամ քանի շուտ էր հավաքեիք ձեր փասափուսեն ու կորչեիք այդտեղից...» (Նույն տեղը):

Իսկ ժուռնալիստից, ասում է Դրայզերը, պահանջվում էր մարդասպանի հասցեին դիֆիրամբներ գրել՝ մոտակա ընտրություններում ձայներ ապահովելու համար, զրպարտել կամ փառաբանել շահավետ ակցիաներ ձեռք գցած այսինչ ֆինանսիստին, նկարագրել անհաջողության հասած մեկ ուրիշի ամառանոցը կամ նրա կնոջ վերջին զգեստը... Ժուռնալիստից պահանջվում էր անել այն ամենը, ինչ կթելադրեր փողատիրոջ կամքը:

Այս միջավայրում շատ առաջավոր մտածողներ վայր էին դնում զենքերը, հրաժարվում պայքարից կամ շատ հաճախ անցնում իմպերիալիզմի լակեյների շարքը: Դրայզերն այլ ուղի ընտրեց: «Նյու-Յորքում որպես ռեպորտյոր աշխատելով, ես նողկանքով թափանցեցի հարուստների հրեշավոր կյանքի մեջ, որով և հիմնականում հետաքրքրվում էին թերթերը: Երբ ես փորձեցի խոսել աղքատ ժողովրդի տանջանքների ու նեղությունների մասին, ծաղրեցին ինձ: Ես թողեցի ժուռնալիստիկան և սկսեցի գրքեր գրել՝ սոցիալական անարդարությունների մասին» («Трагическая Америка», М., 1952, стр. 3):

Սակայն սոցիալական անարդարությունների մասին գրքեր գրող, Ամերիկայի մասին ճշմարտություն ասող հեղինակին վիճակված էր դաժան ու երկարատև պայքար մղել կապիտալի մահացու հարվածներին դիմագրելու և պայքարը շարունակելու համար: Դրայզերն այդ հերոսական պայքարն սկսեց «Քույր Կերի» վեպով (1900), որը միլիարդատերերի հռչակած «անսահմանափակ հնարավորությունների» Ամերիկայում, այսպես կոչված «նուրբ ռեալիզմի» ֆոնի վրա պայթեց որպես ռումբ:

Վեպի մի քանի օրինակները դեռ հազիվ էին դուրս եկել տպարանից, երբ մեծ աղմուկով արգելվեց այն, և տպագրված օրինակները փակվեցին հրատարակչության նկուղներում: Իսկ դա միայն նրա համար, որ ամերիկյան քննադատ Բերտոն Ռասկոյի խոստովանությամբ՝ «Դրայզերը առաջինն էր, որ որոշեց ամերիկյան գրականության համար անել այն, ինչ ֆրանսիական ռեալիստներն արեցին XIX դարի ֆրանսիական գրականության համար»:

Ընթերցողների կարծիքներն ու քննադատական միտքը հսկող համալսարանների կաշառված պրոֆեսորները հարձակվեցին երիտասարդ հեղինակի վրա ամեն գույնի հերյուրանքներով ու վիրավորանքներով:

Կյանքը իրական լույսի տակ պատկերող հեղինակի դեմ հարձակումները ռեակցիոն մամուլի կողմից երկար ժամանակ չէին դադարում: Դրայզերը լռեց 10 տարի, բայց չհանձնվեց:

Հանուն ռեալիստական արվեստի՝ վաճառված բուրժուական մամուլի դեմ մղված պայքարում Դրայզերի բացառիկ տոկունության աղբյուր հանդիսացան Ամերիկայի ժողովրդի հետ նրա ունեցած ամուր կապերը, իր հայրենիքի և ժողովրդի նկատմամբ ունեցած անկաշառ սերն ու անխորտակ հավատը: Որպես մարդ և որպես արվեստագետ, նա իր բախտն ու գործունեությունը կապեց ամերիկյան ժողովրդի բախտի հետ: Եվ ժողովրդի կյանքով ապրող



հեղինակը 10 տարի անց նորից խոսեց: Եվ բոլոր դեպքերում, հրապարակ ելած ամեն մի խայտառակ երևույթի կողքին Դրայզերի ստեղծագործություններում իր մշտական տեղն էր գրավում ռեակցիոն մամուլն ու նրա ներկայացուցիչը: Դոլարի հետևից ընկնելով այդ ներկայացուցիչը ֆինանսիստի հետ մրցում է բոլոր հարցերում և այդ պայքարում իր ստորությամբ ու ցինիկությամբ հաճախ ապշեցնում նույնիսկ այնպիսի ֆինանսիստի, ինչպիսին Կաուպերվուդն է («Ցանկության տրիլոգիա»), նրան, որի մասին իրավամբ ասում են. «դու ուրախ կլինեիր խժռել ողջ աշխարհը, եթե դրա համար կյանքդ բավականացներ» (Т. Драйзер, Собр. соч., т. 5, стр. 538):

Կաուպերվուդը, հանձին որի Դրայզերը խտացրած, ռեալիստական գույներով պատկերել է ամերիկյան իմպերիալիզմի առաջացման պրոցեսը, նրա թալանչիական բնույթն ու անցած խայտառակ ուղին, առանձին ուշադրություն է նվիրում բուրժուական մամուլին, առանց նրա հետ հաշվի նստելու և ոչ մի գրոհ չի սկսում: «Կաուպերվուդը հիանալի գիտեր,— ասում է Դրայզերը,— որ գործն սկսելով, որի իրագործման համար պահանջվում են ընտրողների ձայները, և այս կամ այն արտոնությունը շնորհելու նրանց բարի կամքը,— անհրաժեշտ է ամենից առաջ նախապես ապահովվել թերթերի հովանավորությամբ» (Նույն տեղը, հ. 4, էջ 195): Եվ ահա «նոր տպված դոլարի նմանվող Կաուպերվուդը», որը խորամանկության, կեղծիքի և կաշառքի ուժով ծունկի է բերում իր բոլոր հակառակորդներին, բախվում է իրենից ավելի խորամանկ և ավելի ցինիկ «Ինկուայերիա» թերթի տիրոջ հետ և ստիպված է լինում նահանջել: «Բաժին պոկելու» քստմնելի պայքարում ֆինանսիստն ու լրագրողը այս անգամ գժտվում են: Սակայն Կաուպերվուդի այդ անզգույշ քայլը, ինչպես ասում է կապիտալի աշխարհը բազմակողմանիորեն ուսումնասիրած Դրայզերը, «եղավ Ֆրենկ Կաուպերվուդի երբևէ թույլ տված մեծագույն սխալներից մեկը»:

Մամուլն իր հերթին նույնպես ստիպված է ընդունել Կաուպերվուդի հզորությունը և հաշվի նստել նրա հետ: «Բոլոր փողատեր տուզերը,— գրում է Դրայզերը,— թերթերի փաստացի տերերը, ստիպված էին խոստովանել, որ իրենց մոտ հայտնվել է նոր և չափազանց լուրջ հակառակորդ, որն արժանի է իրենց հետ սուր խաչաձևելու» (Նույն տեղը, էջ 235):

Դրայզերի պատկերած արժանավոր հակառակորդների սրամարտը տեղի է ունենում միլիոնավոր աշխատավոր ժողովրդի հաշվին:

Ահա ռեակցիոն մամուլի բարքերին հատուկ բնորոշ մի այլ գիծ: Ամերիկյան լրագրային արվեստին հայտնի է ժուռնալիստիկային գրեթե անհայտ մի ժանր: Այդ ժանրով զբաղվող ժուռնալիստը կոչվում է կոլյումնիստ (անգ. «column»— սյուն բառից): Ամերիկյան բուրժուական թերթերի յուրաքանչյուր համարում կարելի է տեսնել մի ոչ մեծ սյունակ՝ հոդվածագրի լուսանկարով: Այդ սյունակում զետեղված տեքստը ո՛չ ֆելիետոն է, ո՛չ ակնարկ և ո՛չ ինֆորմացիա: Դա հերյուրանք է: Թերթի այդ բաժինը ծառայում է հատուկ նպատակի: Այդտեղ հրատարակվում են ոչ թե փաստեր, այլ՝ պտտվող լուրեր, բամբասանքներ, որոնք հիմնականում ստուգված չեն և սկանդալային բնույթ ունեն, երբեմն հատկապես նախատեսված հերքում առաջ բերելու և ըստ էության ոչնչություն ներկայացնող դեպքի շուրջը աղմուկ հանելու համար:

Սենսացիոն հաղորդագրությունների սիրահար բուլվարային մամուլի այս

բնորոշ գիծը ևս չէր կարող դուրս մնալ այդ մամուլի ուղն ու ծուծը ուսումնասիրած Դրայզերի տեսադաշտից։

Դրայզերն անառարկելի փաստերով ապացուցում է, որ փողատեր արիստոկրատիային ծառայող բուրժուական մամուլը ընդհանուր ոչինչ չունի ժողովրդի շահերի հետ, որ նրա համար չկա ոչ մի սրբություն, և որ նա, հարազատ մնալով դեկադենտական գրականության բարքերին՝ այլասերվել ու դարձել է իմպերիալիզմի կաշառված գործակալը, և որպես այդպիսին փտած է իր հիմքում։

Ամերիկյան ռեակցիոն մամուլի քննադատությունը իր տեղն է գտել նաև աշխարհահռչակ «Ամերիկյան ողբերգություն» վեպում։

Այն ուղին, որով անցել է Կլայդ Գրիֆիտսն ու մտել դատարան, բուրժուական հասարակության գծած ուղին է։ Կլայդը գործել է բուրժուական օրենքով, առաջնորդվել բուրժուական մորալով։ Բայց այդ ուղին, այդ օրենքն ու այդ մորալը, որ ամերիկյան իրական կյանքն է, և ո՛չ մի օրենսգրքում գրանցված չէ։ Եվ ահա Կլայդին դատում են այլ ձևով, ոչ բնական դատով, պաշտոնական օրենսգրքի համաձայն։ Կատարված ոճրագործությունը, որն իր բազմաթիվ դրդապատճառներն ունի, Կլայդին թելադրված է ներսից, և Դրայզերը վարպետորեն ցույց է տալիս, որ Կլայդի կամքը ազատ չի եղել, իսկ պաշտոնական օրենսգիրքն արդարացնող դատարանը «ապացուցում» է հակառակը, այն, որ իբր ոճրագործության հիմքում ընկած է ոճրագործի գիտակից և ազատ կամքը։ Դատարանի մեխանիզմի հիմնական նպատակը միայն մեկն է. ինչ գնով էլ լինի արդարացնել բուրժուական կարգերը և այնուհետև հաջողության հասնել մոտակա ընտրություններում։ Դրայզերի Կլայդը, որի անձև նյութից հասարակությունը կարող էր պատրաստել այն, ինչ ուզեր, բուրժուական իրականությունը, որ խեղդել էր նրա մեջ այն ամենը, ինչ ազնիվ էր ու մաքուր, նրանից կարողացավ ստեղծել միայն էգոիստ և մարդասպան։ Հենց այդ իրականության պաշտպանության համար է, որ դատարանի մեխանիզմը լարել է իր բոլոր մեքենայությունները։

Բնակչությանը հուզող այս ողբերգական պատմությունը լուսաբանելիս, բուրժուական մամուլը, որ ընթանում է դատարանի հետ ձեռք-ձեռքի տված, նույնպես լարել է իր կաշառված մեխանիզմը և նույն նպատակին է ձգտում՝ ինչ գնով էլ լինի արդարացնել բուրժուական կարգերը։ Գործի բուն էությունը թաքցնելու նպատակով, այս երկու դաշնակիցները ճարպիկ ելք են գտնում՝ ստեղծելով հասարակական կարծիք այն մասին, թե նրանք Կլայդին մեղադրում են միմիայն հանուն մյուս տուժած կողմի, հանուն խեղճ ու կրակ Ռոբերտայի։ Գիտակցաբար շեշտելով ողբերգության այս կողմը, ռեակցիոն մամուլը սարսափահար անցնում է ամերիկյան ողբերգության կողքով։ Ոճրագործներ ծնող կարգերի պաշտպան հանդիսացող մամուլի էջերում և ոչ մի խոսք այն մասին, որ Կլայդի գործը դատարանում քաղաքական սպեկուլյացիայի առարկա է դարձել, որ Կլայդի և Ռոբերտայի ողբերգությունը՝ բմբկահարվող ամերիկյան դեմոկրատիայի ողբերգությունն է, ոչ մի հիշատակություն այն մասին, որ Կլայդն ամերիկյան ապրելակերպի ծնունդն է ու նրա ստեղծած զոհը, իսկ Ռոբերտան՝ այդ զոհի զոհը։

Անցնելով այդ հարցի կողքից, մարդկային արժանապատվությունից զուրկ, քարսիրտ և անզգա լրագրողներն ամեն քայլափոխում հետապնդում են ամերիկյան ապրելակերպի զոհ դարձած Կլայդի մորը և, փչրելով նրա



մայրական զգացմունքները, հանուն սենսացիոն հաղորդագրությունների, ձեռքից-ձեռք խլում վշտահար մոր հեռագիրը՝ ուղղված էլեկտրական աթոռի շեմքին կանգնած որդուն։

Բուրժուական փտած մամուլի քննադատությունն այս վեպում իր ծայրա-
կետին է հասնում, երբ միսիս Գրիֆիտսը, որպես թղթակից, նստում է էլեկ-
տրական աթոռի դատապարտված որդու կողքին և կենտրոնական թերթերից
մեկին հաղորդագրություն հասցնելու համար, դողացող ձեռքով գրանցում իր
և որդու ապրումները։ Նա պարտավոր է թերթին հաղորդել այն մասին, թե
ինչպես է որդին ընդունում մահվան վճիռը և իր սեփական ապրումների մա-
սին, այն մասին, թե ինչպես է մայրը պատրաստվում դիմավորել որդու մահը։
Իր ստեղծագործություններում կանխիկ հաշվի շուրջը պտտվող, անառա-
կացող մամուլի էջերը Դրայզերը թերթում է հատ-հատ, մի փոքր շտապելով,
բայց զայրույթի և ատելության բացահայտ զգացմունքով, այն ոչնչացնելու
կրքոտ ցանկությամբ ու խոր համոզումով։ Հետևելով ֆրանսիական քննադա-
տական ռեալիզմի վարպետների օրինակին, Դրայզերը բուրժուական ռեակցիոն
մամուլի բարքերի քննադատությունը դարձնում է ահեղ հարվածի նշանակա-
կետ, բուրժուական փտած կարգերի դեմ ուղղված հզոր զենք, Բալզակի և
Մոպասանի նման պատռում է բուրժուական մամուլի դիմակը և ռեալիստա-
կան համոզիչ պատկերների ուժով հասնում խոր ընդհանրացումների։

Դրայզերի աշխարհայացքի զարգացման, նրա կյանքի և գրական գործու-
նեության համար խոշոր իրադարձություն հանդիսացավ 1927 թվականին Սո-
վետական Միություն կատարած նրա այցելությունը։ Իր տեսածի վառ տպա-
վորության ազդեցության տակ, 1928 թվականին նա հրապարակեց «Դրայզերը
նայում է Ռուսաստանին» աշխատությունը, որն իր որոշ հակասություններով
հանդերձ, հանդիսացավ Սովետական երիտասարդ ռեսպուբլիկայի դեմ ռեակ-
ցիոն գրականության և մամուլի հորինած զրպարտությունների վճռական հեր-
քումը։ Հեղինակն ամբողջ սրտով շնորհավորելով Սովետական կարգերը, և
խրախուսելով սովետական մարդկանց հաջողությունները, արտասահմանի
Սովետական Միության բարեկամներին և թշնամիներին ասաց իր հեղինակա-
վոր խոսքը։ «Այժմ Ռուսաստանից,— այդ գրքում գրում է Դրայզերը,— և ոչ
մի այլ երկրից, ինձ թվում է, վիճակված է սպասել մեծ գործեր՝ ինչպես հո-
գեկան, այնպես էլ պրակտիկ իմաստով» («Dreiser Looks at Russia», New-
York, 1928, p. 21)։

Սովետական Միությունում եղած ժամանակ Դրայզերը, բնականաբար,
հետաքրքրվեց նաև մամուլի հարցերով։ Սովետական մամուլը, որի ուժը մաս-
սաների հետ ունեցած ամուր կապի մեջ է, չէր կարող Դրայզերի հիացմունքը
չառաջացնել։ Լայն մասսաների հետ կապված մամուլի գործունեությունը
Դրայզերը նկարագրում է մեծ գոհունակությամբ։ Նրան մասնավորապես
հիացմունք է պատճառում «Կոմսոմոլսկայա պրավդա»-ի գործունեությունը,
նրա պայքարը կապիտալիզմի մնացուկների դեմ։

Անցումը բանվոր դասակարգի կողմը Դրայզերի առջև բաց արեց ստեղ-
ծագործական նոր հորիզոններ։ 1931 թվականին նա ստեղծեց ամերիկյան
գրականության մեջ էպոխա կազմող իր «Ողբերգական Ամերիկան»։ Ամերիկ-
յան իմպերիալիզմի նեխվածությունը մերկացնող այդ աշխատության մեջ,
որը գրողի գաղափարական հասունության բարձրագույն աստիճանն է, Դրայ-
զերն իր՝ տարիների ընթացքում կուտակած ու հասունացած ցասման ուժով,

փաստերի գնդացրային կրակով, ամբողջ սրությամբ ցույց տվեց, որ ամերիկյան իմպերիալիզմը սնանկացել է ու կանգնել կործանման եզրին։ Լույս տեսնելուց մեկ ամիս հետո այս գիրքն արգելվեց ուոլլ-ստրիտյան Ամերիկայում։

Դրայզեր-հրապարակախոսը, որի աշխատությունները Ամերիկայում դեռ չլսված պայթյունով մերկացրին ռեակցիոն մամուլի դեմքը, դարձավ այդ նույն մամուլի ամենօրյա հարձակումների առարկան։

Կապիտալի աշխարհը մերկացնող Դրայզերի հրապարակախոսական աշխատությունների դեմ բուրժուական մամուլը առաջ քաշեց դեկադենտական գրականության իդեոլոգների հնացած զենքը, նրանց խղճուկ մեղադրանքները։ Տարբեր փոփոխակներով հատկապես ծեծվում է այն միտքը, թե իբր Դրայզեր-հրապարակախոսը համեմատության չի դիմանում Դրայզեր-արվեստագետի հետ։ Դրայզեր-տրիբունին լռեցնելու հույսով առաջնորդվող մամուլը չէր կարող չնկատել, որ Դրայզեր-հրապարակախոսը հանդես է գալիս ավելի բացահայտ, ավելի համարձակ և իմպերիալիստական Ամերիկայի դեմ ուղղված քաղաքական սպանիչ սատիրայով։

«Ողբերգական Ամերիկայի» հեղինակին ճանապարհից շեղելը բուրժուական Ամերիկայի ուժերից վեր էր։ Դրայզերը հասել էր կապիտալիզմի կործանման անհրաժեշտության գաղափարին, պատմական ճշմարտության ըմբռնման աստիճանին։

Ամեն տեսակ զրպարտություններ հորինելով մեռնող կապիտալիզմի ճահճից վեր կանգնած առաջավոր մտածողների հասցեին, ամերիկյան ռեակցիոն մամուլն շպարում է կապիտալիզմի շլացնող հակասությունները։ Աչք փակելով կապիտալիզմի նեխման բուն պատճառների առաջ, միլիոնատիրոջ քսակից կախված գրչակները հարձակվում են սովետական ռեսպուբլիկայի վրա, նրա գոյության ու ծաղկման մեջ փնտրելով կապիտալի աշխարհի նեխման ու ճգնաժամի պատճառները։ Սովետական Միության հաղթական առաջընթացի ամեն քայլ ուղեկցվում է բուրժուազիայի լագերում առաջացած վախի և ատելության զգացմունքի նոր ալիքներով։

Սովետական Միության դեմ մղված բուրժուական մամուլի սոսր պայքարում Դրայզերը որպես ճշմարտության համար պայքարող մարտիկ, որպես Սովետական Միության անկաշառ բարեկամ, արևմուտքի կուլտուրայի մեծագույն գործիչների նման, Ռոլանի, Բարբյուսի, Նեքսեի նման կանգնեց Սովետական Միության պաշտպանության դիրքերում, վճռականորեն հանդես եկավ ռեակցիոն մամուլի զրպարտությունների դեմ, հանձին Սովետական Միության տեսնելով դեմոկրատիայի ու խաղաղության ամրոցը։ «Ամբողջ աշխարհի աչքի առաջ,— գրեց Դրայզերը սովետական ժողովրդի մասին,— նրանք կառուցում են նոր հասարակություն, որը ծաղկում է ազատության և խաղաղության հիմքի վրա։ Նրանց դրած յուրաքանչյուր աղյուսը, սոցիալիստական շինարարության նրանց յուրաքանչյուր նոր հաջողությունը, նրանց մագնիտոգորսկները, դնեպրոգէսները, պատերազմի հրձիգներին հասցվող հարվածներ են» («Daily Worker», 29. XII. 1932)։

Դրայզերն առաջիններից մեկն էր Ամերիկայում, որ տեսավ ֆաշիստական ռեժիմի ուղին բռնած ուոլլ-ստրիտյան մագնատներին։ Եվ ոչ միայն տեսավ, այլ որպես աննկուն մարտիկ ամբողջ ուժով ծառացավ այդ ռեժիմի երկրպագուների դեմ։ Ամերիկյան ֆաշիստների դեմ Դրայզերի կրակոտ էջերը, որ կարծես այսօր գրված լինեն, իրենց խոր բովանդակությամբ և ակտուալ



նշանակությամբ աշխարհում խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող պայքարի լավագույն փաստաթղթեր են հանդիսանում։

1941 թվականին հրապարակված «Ամերիկան կարիք ունի փրկության» («America is Worth to Saving») հրապարակախոսական փայլուն աշխատության մեջ բացահայտելով ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ բնույթը, ցույց տալով նրա հակաժողովրդական էությունը, գերմանական ֆաշիզմի հետ նրա ազգակցական կապը, Դրայզերը գրում էր. «Միակ տարբերությունը մի կողմից գերմանական ու իտալական և մյուս կողմից անգլիական ու ամերիկյան մոնոպոլիստների միջև այն է, որ առաջինները բացահայտորեն հայտարարում են նվաճումների մասին, իսկ երկրորդները խոսում են «պաշտպանության» մասին» («И. Л.», 1941, № 2, стр. 246)։

Խաղաղության հաղթանակի, ամերիկյան ժողովրդի երջանկության գրավականը Դրայզերը տեսնում էր մասսաների գիտակից պայքարի, ժողովուրդների անխախտ բարեկամության մեջ։ Նա հատկապես եռանդուն պայքար էր ծավալում սովետական և ամերիկյան ժողովուրդների բարեկամության ամրապնդման համար։ «Ես այդ բարեկամության կոչն եմ անում,— ասում է Դրայզերը,— ոչ թե սովետական ժողովրդի շահերի համար,— նա արդեն ապացուցել է, որ կարող է գերազանց կերպով ինքն իր մասին հոգալ, այլ հանուն ամերիկյան ժողովրդի շահերի։ Միայն դեմոկրատիայի թշնամիները կարող են առարկել Սովետական Միության հետ հարաբերությունների բարելավման դեմ»։

Սակայն այլ կերպ են մտածում դեմոկրատիայի թշնամիները, որոնք սարսափելով սովետա-ամերիկյան ժողովուրդների բարեկամությունից, առանց բացառության բոլոր միջոցներով աշխատում են խափանել այդ բարեկամությունը։ Այս գործում ևս առաջին պլանի վրա է Ուոլլ-ստրիտի հնազանդ կամակատարը՝ դեղին մամուլը, որի քննադատությունը Դրայզերն ամփոփում է 1941 թվականին գրած «Կա՞ արդյոք ԱՄՆ-ում մամուլի ազատություն» նշանավոր նամակում։

«Խմբագիր և հրատարակիչ» թերթը դիմել էր Դրայզերին՝ խնդրելով արտահայտվել ամերիկյան մամուլի ազատության մասին։ «Ամերիկյան մամուլի ազատությանը նվիրված թերթի այդ համարը,— գրում են Դրայզերին,— ուղարկվելու է մի շարք նշանավոր ամերիկացիների, որոնց համար մամուլի ազատությունը հատուկ նշանակություն ունի... Դուք գրանցված եք հեղինավոր հասարակական գործիչների ցուցակում, որոնց ասույթները մամուլի ազատության մասին տպագրվելու են այդ համարում» («И. Л.», 1941, № 2)։

Այս դիմումին Դրայզերը պատասխանեց վերոհիշյալ նամակով, ուր ի դեպ հիշելով, որ իր կյանքի ընթացքում հինգ տարի ամերիկյան տարբեր թերթերում աշխատել է որպես ռեպորտյոր և շրջիկ թղթակից ու հինգ տարուց ավելի որպես չորս ժուռնալների գլխավոր խմբագիր, ասում է. «Դրա համար ես, բնականաբար, որոշ բան գիտեմ ազատ մամուլի առավելությունների մասին»։

Ահա այդ «առավելությունների» մի քանի բնորոշ գծերը Դրայզերի մեկնաբանությամբ։

«Միշտ, երբ բանվորները ձեռք էին բերում իրենց համար մարդկային հարաբերություններ,— գրում է Դրայզերը,— ես անխտիր կերպով առիթ էի ունենում գրել այն պատրաստակամության մասին, որով մեր «ազատասեր»

մամուլը անդավաճան կերպով հանդես է գալիս կապիտալի պաշտպանությամբ՝ ընդդեմ բանվորների»։ «Մեզ մոտ չկա ազատ մամուլ,— շարունակում է Դրայզերը,— քանի որ մեր ողջ մամուլը գտնվում է ֆինանսական խոշոր մոնոպոլիաների ձեռքում, որոնք բելադրում են, եթե ոչ ուղղակի չեն ֆինանսավորում ամենաանամոթ պրոպագանդան, որի օրինակը կարող է հանդիսանալ նաև Ձեր նամակը» (նույն տեղը)։

Ցույց տալով այն խոր անդունդը, որ գոյություն ունի Ամերիկայի միլիոնավոր հասարակ ժողովրդի խաղաղասեր ձգտումների և Ուոլլ-ստրիտին ծառայող մամուլի պատերազմական տրամադրությունների միջև, Դրայզերն ավելացնում է. «Միևնույն կարծիքից և միևնույն քսակից կառչած լրագրային սողունները, որոնց համար մամուլի ազատությունը նշանակում է ֆինանսական մագնատների, նրանց զավակների ու թոռների գործունեությունը գովաբանելու ազատություն», «համարյա չհաղորդեցի այն մասին, որ վերջերս 40 նահանգներից միլիոնավոր ամերիկացիների ներկայացնող 6 հազար պատվիրակ հավաքվեցին Չիկագոյում՝ համախմբելու իրենց ուժերը հանուն խաղաղության համար մղվող պայքարի»։

«Խմբագիր և հրատարակիչ» թերթին ուղղված նամակը Դրայզերն ավարտել է այսպես. «Եթե իրոք Ամերիկան ազատ երկիր լիներ և ոչ թե մի բուռ ընչաքաղց գիշատիչների կողմից ղեկավարվող և շահագործվող երկիր, այն ժամանակ հեշտ կլիներ ձեզ և ձեր թերթը մեղադրել խաբեության մեջ, իսկ եթե դուք փորձեիք երդվել դատարանի առաջ ձեր անմեղության համար, այն ժամանակ ձեզ կդատեին որպես կեղծ վկայություն տվողների» (նույն տեղը)։

Ամերիկյան մամուլի ազատությունը պրոպագանդող թերթը հրաժարվեց տպագրել Դրայզերի այս նամակը։

«Հատկապես այժմ,— գրում է Լենինը,— ամերիկյան միլիարդատերերը, այդ ժամանակակից ստրկատերերը, առանձնապես ողբերգական էջ են բացել արյունալի իմպերիալիզմի արյունալի պատմության մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 28, էջ 57)։ Դրայզերը բազմակողմանիորեն և համոզիչ կերպով ցույց տվեց, որ այդ արյունալի պատմության մեջ, ժողովրդի թշնամիների շարքում, ինչպես միշտ, իր հատուկ տեղն ունի նաև ամերիկյան բուրժուական մամուլը։

Մեռնող կապիտալիզմի, ամերիկյան կեղծ դեմոկրատիայի դեմ ուղղված իր կրքոտ քննադատությամբ, ռեալիստական տաղանդավոր երկերով, հրապարակախոսական բոցաշունչ ելույթներով Դրայզերն այսօր անգնահատելի երախտիք ունի խաղաղության ու դեմոկրատիայի համար աշխարհում ծավալված շարժման մեծ գործում։ «... Կոմունիզմն իր պայծառ լույսով կուրացնում է կապիտալիզմը...»,— և խոշոր արվեստագետի կենսահաստատ ձայնին ունկնդրում են բոլոր ազատասեր և աշխատավոր մարդիկ, աշխարհի որ անկյունում էլ որ լինեն նրանք։

---

# ՄԵՐ ՕՐԵՐԻ ԱՖՐԻԿԱՆ

## Ա. ՍԱՐԳՍՅԱՆ

Աֆրիկա մայր ցամաքն ունի 30 միլիոն քառակուսի կիլոմետր տարածություն և 214 միլիոն բնակչություն։ Աֆրիկան որպես հանքային հանածոների, գյուղատնտեսական հումքի հարուստ աղբյուր, որպես վաճառահանման շուկա և կապիտալների ներդրման լայն ոլորտ ու ռազմա-ստրատեգիական պլացդարմ, վաղուց է իր վրա բևեռել իմպերիալիստական պետություններ ի ուշադրությունը։

Դեռևս XIX դարի երկրորդ կեսին Եվրոպայի իմպերիալիստական պետությունները իրար միջև բաժանեցին Աֆրիկայի հսկայական մայր ցամաքը և այնտեղ հաստատեցին ժողովուրդների կողոպուտի և ճնշման գաղութային դաժան ռեժիմ։ Աֆրիկայում իմպերիալիզմի գաղութային սիստեմի ստեղծման արյունալի պրոցեսը տեղի է ունեցել վայրենի կամայականությունների, բռնությունների և միլիոնավոր մարդկանց բնաջնջման միջոցով։

Եթե մեկ ու կես դար շարունակ Աֆրիկան եվրոպացի գաղութարարների համար «արգելանոց» էր, որտեղ ստրկավաճառները գալիս էին «կենդանի ապրանքներ» որսալու, ապա այժմ այդ հսկա մայր ցամաքը դարձել է իմպերիալիստական պետությունների հումքի բազան, որտեղից դեպի Արևմտյան Եվրոպա ու ԱՄՆ է հոսում հսկայական քանակությամբ հարստություն։ Աֆրիկան հարուստ է երկաթով, քարածխով, նավթով, որը վերջերս հայտաբերվել է Սահարա անապատում, թանկարժեք մետաղներով ու քարերով, գունավոր մետաղներով, ուրանով և այլն։ Ներկայումս Աֆրիկան տալիս է կապիտալիստական աշխարհի ալմաստի հանույթի 99 տոկոսը, կոբալտի 81 տոկոսը, ոսկու 38,9 տոկոսը, քրոմի 40 տոկոսը, մարգանեցի 36 տոկոսը, պղնձի 27 տոկոսը, պլատինի 14,5 տոկոսը և այլն։ Աֆրիկայում արդյունահանվող հանքանյութերի 92 տոկոսն արտահանվում է Անգլիա, Ֆրանսիա, Ամերիկայի Միացյալ Նահանգներ և այլ երկրներ։ Աֆրիկան հարուստ է նաև էլեկտրաէներգիայի ռեսուրսներով։ Չնայած այդպիսի լայն հնարավորություններին, մեր օրերում Աֆրիկան մնում է ամենահետամնաց մայր ցամաքը։

Ժամանակակից ստրկավաճառները և նրանց գրչակները շարունակում են «զարգացնել» իրենց սնանկացած ռասսայական, մարդատյաց թեորիաները, ճգնելով ապացուցել, որ աֆրիկյան ժողովուրդների հետամնացության պատճառն իբր թե նրանց մտավոր թուլությունն ու հոգևոր աղքատությունն է։ Իմպերիալիստական պրոպագանդան անդադար թմբկահարում է այն մասին, որ իբր թե աֆրիկյան ժողովուրդները չեն հասունացել ինքնուրույն քաղաքական և տնտեսական կյանքի համար և խիստ կարիք են զգում կողմնակի ղեկավարման։ Սակայն կյանքն արդեն հերքել է այդ սնամեջ «թեորիաները»։ Աֆրիկայի շատ երկրներում աճել է ազգային ինտելիգենցիան, ստեղծվել են

ազգային և դասակարգային մարտական կազմակերպություններ։ Այժմ շատ աֆրիկացիների պարզ է դարձել, որ իրենց երկրի հետամնացության վերացման միակ ուղին գաղութային ռեժիմի վերացումն է, իրենց երկրի անկախության ու պետական սուվերենության նվաճումը։

Աֆրիկայում գաղութային դաժան ռեժիմը երկարաձգելու համար իմպերիալիստները փորձում են այնտեղ ամեն կերպ պահպանել տոհմական և ֆեոդալական հարաբերությունները։ Այդ ձգտումը նրանք քողարկում են աֆրիկյան ժողովուրդների կյանքին ու կենցաղին չմիջամտելու փարիսեցիական ֆրազներով։ Գաղութային իշխանություններն Աֆրիկայում դիտավորյալ կերպով արգելակում են մշտական բանվորական կադրերի ստեղծումն ու ամրապնդումը։

Մինչև վերջին համաշխարհային պատերազմը գաղութարարները չէին խթանում կապիտալ ներդրումները Աֆրիկայում։ Բավական է նշել, որ մինչև 1938 թվականի վերջը արտասահմանում Անգլիայի ներդրած 3545 միլիոն ֆունտ ստեռլինգից Լատինական Ամերիկային բաժին էր ընկնում 774 միլիոն ֆունտ ստեռլինգ, Հնդկաստանին և Պակիստանին՝ 388 միլիոն ֆունտ ստեռլինգ, իսկ հսկա Աֆրիկային՝ ընդամենը 128 միլիոն ֆունտ ստեռլինգ։ Աֆրիկյան գաղութներում իմպերիալիստական գաղութային սիստեմի ամբողջ ընթացքում չի կառուցվել ո՛չ մի մեքենաշինական գործարան, չի վառվել ո՛չ մի հնոց։

Գաղութացման պրոցեսում աֆրիկյան ցեղերին պատկանող հողերի մեծ մասը բռնի կերպով խլվեց և բաժանվեց եվրոպացի նորաբնակների և ընկերությունների միջև։ Մի շարք երկրներում հողի իսկական տերերը՝ բնիկ աֆրիկացիները, դուրս քշվեցին իրենց արգավանդ հողերից և կենտրոնացվեցին անբերրի հողերի վրա։ Այսպես, օրինակ, Հարավ-Աֆրիկյան Միությունում տեղական բնակչությունը, որը կազմում է ամբողջ բնակչության մոտ 80 տոկոսը, բռնի կերպով կենտրոնացվեց, այսպես կոչված, ռեզերվացիաներում, որոնք կազմում են բոլոր մշակովի հողերի 8 տոկոսը։ Հարավային Ռոդեզիայի աֆրիկացիներին, որոնք կազմում են բնակչության 95 տոկոսը, պատկանում է մշակելի հողերի միայն մեկ երրորդը։ Նյասալենդի 2000 եվրոպացիներ ավելի շատ հող ունեն, քան 2 միլիոն աֆրիկացիները։

Ռեզերվացիաներում գտնվող աֆրիկացիները սովի ու մահվան սպառնալիքից ստիպված գնում են հանքերը, պլանտացիաները և գրեթե ձրի աշխատում եվրոպացիների համար։ Բելգիական Կոնգոյում, որը ուրանի հանքաքար է մատակարարում ԱՄՆ-ին, աֆրիկացիներն օրական աշխատում են 14-ից 16 ժամ և ստանում չնչին աշխատավարձ։

Ստրկության դեմ պայքարող բրիտանական ընկերության տվյալների համաձայն աֆրիկյան որոշ գաղութներում այժմ էլ վաճառվում և գնվում են ստրուկներ։ Ստրուկն արժե 25—70, իսկ ստրկուհին՝ 70-ից մինչև 100 անգլիական ֆունտ ստեռլինգ։

Աֆրիկայում գաղութարարները լայնորեն արմատավորել են երեխաների աշխատանքը։ 8—12 տարեկան երեխաները մեծահասակներին համահավասար, արևի կիզիչ ճառագայթների տակ, աշխատում են բամբակի պլանտացիաներում, հեղձուցիչ արհեստանոցներում՝ ստանալով չնչին կոպեկներ։ Աֆրիկայում տարածված են բազմաթիվ համաճարակային հիվանդություններ՝ տենդը, թոքախտը, քնաբեր հիվանդությունը և այլն։ Սակայն միանգամայն



բարձիթող վիճակում է բժշկական գործը։ Բավական է նշել, որ եթե մեկ բժշկին ԱՄՆ-ում ընկնում է 750 մարդ, Ֆրանսիայում՝ 1100 մարդ, ապա Ֆրանսիական Հյուսիսային Աֆրիկայում և Տանգանիկայում՝ 28.000 մարդ, Բրիտանական Կամերունում՝ 66.000, Սուդանում՝ 75.000, Նիգերիայում՝ 88.000, իսկ Հաբեշստանում՝ 150.000 մարդ։ Աֆրիկացիների կյանքի միջին տևողությունը կազմում է 30 տարի, երեխաների 57 տոկոսը մահանում է մինչև 15 տարեկան հասնելը։ Բնիկ աֆրիկացիների 90 տոկոսը անգրագետ է, իսկ մի շարք երկրներում՝ Նյասալենդում, Սոմալիում, Քենիայում, Բելգիական Կոնգոյում անգրագետների տոկոսը նույնիսկ հասնում է 90—100-ի։

Իտալական Սոմալիի նահանգապետն իր պաշտոնյաներին հետևյալ կարգադրությունն է արել. «Սոմալցիների երեխաների կրթությունը պետք է սահմանափակվի տարրական գիտելիքներով, հակառակ պարագայում սոմալցիները կրթություն ստանալով կհրաժարվեն դաշտերում աշխատելուց, կգնան քաղաք, կստեղծեն դժգոհների, խռովարարների դասակարգ»։

Աֆրիկացիները զրկված են նաև քաղաքական տարրական իրավունքներից. չունեն ինքնավարական օրգաններ, պառլամենտներ։ Իսկ այն երկրներում, որտեղ կան այդպիսիք, աֆրիկացիների իրավունքները խիստ կերպով սահմանափակված են։ Աֆրիկյան ժողովուրդների քաղաքական անհավասարության փայլուն օրինակ է խտրականության վրա հիմնված Հարավ-Աֆրիկյան Միության ընտրական սիստեմը։ Ոչ մի բնիկ չի կարող լինել Հարավ-Աֆրիկյան Միության պառլամենտի անդամ։ Սենատի 44 սենատորներից 40-ը ներկայացնում են սպիտակամորթ բնակչությանը, 4-ը՝ բնիկներին։ Ներքին պալատում սպիտակներն ունեն 150 դեպուտատ, իսկ աֆրիկացիները՝ 3 դեպուտատ, այն էլ եվրոպացիներից։ Վերջերս ստեղծվել է Աֆրիկյան Կենտրոնական ֆեդերացիա, որն ընդգրկում է Բրիտանական գաղութները՝ Հյուսիսային և Հարավային Ռոդեզիան և Նյասալենդը, որտեղ ապրում են 6 միլիոն նեգրեր և 200 հազար եվրոպացիներ։ Սակայն համաձայն գործող կոնստիտուցիայի, նեգրերը ֆեդերացիայի օրենսդիր ժողովում իրավունք ունեն ներկայացնելու միայն 6 դեպուտատ, իսկ եվրոպացիները՝ 26 դեպուտատ։ Քենիայի օրենսդիր ժողովում 50 հազար եվրոպացիներ ունեն նույնքան ներկայացուցիչներ, ինչքան 5,5 միլիոն բնիկ աֆրիկացիները։ Առանց հատուկ անցագրի աֆրիկացիներն իրավունք չունեն անցնելու քաղաքի միջով, երկրի մի վայրից մյուսը տեղափոխվելու, թողնելու ռեզերվացիան և այլն։

***

Եթե մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Անգլիան, Ֆրանսիան, Բելգիան իրենց աֆրիկյան գաղութներում արդյունաբերություն չէին զարգացնում, կապիտալներ չէին ներդնում, ապա պատերազմից հետո ամերիկյան կապիտալներն Աֆրիկա ներթափանցելու սպառնալիքի տակ, այդ պետությունները ստիպված էին մեծացնել կապիտալ ներդրումներն իրենց աֆրիկյան գաղութներում։ Այդ պետություններն սկսեցին իրենց գաղութների զարգացման համար մշակել, այսպես կոչված, երկարատև «զարգացման պլաններ», որոնց նպատակն է հավերժացնել գաղութային տիրապետությունը։ Արդեն 1950—1953 թթ. աֆրիկյան գաղութներում Անգլիայի ներդրած կապիտալների գումարը հասավ 600 միլիոն ֆունտ ստեռլինգի, իսկ ֆրանսիա-

կան պետական ներդրումները աֆրիկյան գաղութներում 1949—1953 թթ. կազմեցին մեկ տրիլիոն 100 միլիարդ ֆրանկ։ «Կոնգոյի զարգացման պլանի» հետ կապված Բելգիայի ծախսերը 1953 թվականին կազմեցին 14,5 միլիարդ բելգիական ֆրանկ։

Չնայած Անգլիայի, Ֆրանսիայի և Բելգիայի ձեռնարկած միջոցառումներին, ամերիկյան կապիտալն այժմ մեծ ակտիվություն է ցուցաբերում Աֆրիկայում։ Դա, հատկապես, պայմանավորված է Աֆրիկայում ռազմական արդյունաբերության համար խիստ կարևոր նշանակություն ունեցող հարուստ հումքի առկայությամբ։ Օգտագործելով իրենց բոլոր առավելությունները, ԱՄՆ-ը գործադրում են բոլոր միջոցները, որպեսզի գրավեն հին գաղութատեր պետությունների տեղը և անբաժան կերպով զավթեն աֆրիկյան հումքի անսպառ աղբյուրները։

Եթե երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո մինչև 1955 թվականը ընդհանրապես արտասահմանում ԱՄՆ-ի կատարած ներդրումները աճել են մոտավորապես 2 անգամ, ապա Աֆրիկայում դրանք աճել են ավելի քան 5 անգամ։ Դա զգալի կերպով ուժեղացրել է ամերիկյան մոնոպոլիաների դիրքը Աֆրիկայում։ Աֆրիկայի հյուսիսային մասում ամերիկացիներն արդեն մասնակցում են կապարի, մարգանեցի, ցինկի, կոբալտի, մոլիբդենի հանույթին։ Ամերիկյան նավթային ընկերությունները նավթային կոնցեսիաներ են ստացել Մարոկկոյում և Թունիսում։ «Ամերիկեն Սմելտինգ էնդ րիֆայնինգ կորպորեյշեն» խոշոր ընկերությունը Նիգերիայում մասնակցում է ցինկի, կապարի և երկաթի հանքերի մշակմանը։ Ամերիկյան կապիտալի դիրքերն ամրապնդվել են Հյուսիսային Ռոդեզիայում, որտեղից մեծ քանակությամբ պղինձ է արտահանվում ԱՄՆ։ Զգալի քանակությամբ ուրանի հանքաքար է արտահանվում ԱՄՆ՝ Հարավ-Աֆրիկյան Միությունից և Ռոդեզիայից։ Ամերիկյան կապիտալի դիրքերը հատկապես ուժեղ են Լիբերիայում, որտեղ կաուչուկի պլանտացիաների խոշոր մասը պատկանում է ամերիկյան «Ֆայերստոն տայր էնդ ռաբբեր» ընկերությանը։ Պաշտոնական տվյալներով Լիբերիայում ամերիկյան ուղղակի կապիտալ ներդրումները 1949 թվականից մինչև 1953 թվականն աճել են 4 անգամ, հասնելով 187 միլիոն դոլարի։ ԱՄՆ-ի նավթային մոնոպոլիաները ձգտում են իրենց արյունոտ թաթը դնել Սահարայի նավթի հարուստ պաշարների վրա։

Ամերիկյան լեռնագործական ընկերությունների տարեկան շահույթը, համեմատած ներդրված կապիտալի հետ, հարյուր տոկոսից ավելի է կազմում։ Օրինակ, «Ռոկանա» ընկերության արտադրանքի արժեքը 1945—1954 թթ. 14 անգամ գերազանցեց ներդրված կապիտալից։ Անգլիական գաղութային ընկերություններն իրենց ներդրած 71 միլիոն ֆունտ ստեռլինգի դիմաց 1955 թվականին Աֆրիկայից 200 միլիոն ֆունտ ստեռլինգ մաքուր եկամուտ ստացան։

Աֆրիկյան հարուստ հումքի աղբյուրները զավթելու և կողոպտելու համար Անգլիայից, Ֆրանսիայից, ԱՄՆ-ից բացի պայքարում են նաև Արևմտյան Գերմանիայի և Ճապոնիայի մոնոպոլիստական շրջանները։

Աֆրիկան իմպերիալիստներին հետաքրքրում է ո՛չ միայն իր հարուստ հումքի և առավելագույն շահույթներ կորզելու տեսակետից, այլև իր ռազմա-ստրատեգիական կարևոր նշանակությամբ։ Դեռևս 1950 թվականին Գորդոն-Գրեյի պաշտոնական զեկուցման մեջ ընդգծվել է այն «ավանդի» մասին, որ Աֆրիկան կարող է ներդնել «ազատ աշխարհի» պաշտպանության գործում։



1957 թվականի մարտ ամսին ԱՄՆ-ի վիցե-պրեզիդենտ, պատերազմի հրձիգ Նիքսոնը շրջագայություն կատարեց աֆրիկյան 8 երկրներում և եկավ այն եզրակացության, որ Աֆրիկան ԱՄՆ-ի համար կարող է ծառայել նախ որպես կարևոր ռազմա-ստրատեգիական պլացդարմ և ապա՝ ստրատեգիական հումքի առատ աղբյուր։

Աֆրիկայում ռազմական բլոկների ստեղծման ամերիկյան քաղաքականությունը պաշտպանություն է գտնում արևմտյան գաղութային պետությունների կողմից, որոնք անկարող են միայնակ ճնշել աֆրիկյան ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները և փորձում են այդ գործում օգտագործել ամերիկացիներին։ Վերջիններս արդեն ռազմա-ստրատեգիական բազաներ են ստեղծել Աֆրիկայի մի շարք երկրներում՝ Մարոկկոյում, Լիվիանում, Լիբերիայում և այլուր։

ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մեջ մտնող եվրոպական մյուս երկրների ուժերով իրականացվում է աֆրիկյան մայր ցամաքի ռազմականացումը։ Իմպերիալիստները ձգտում են Աֆրիկայում ստեղծել ՆԱՏՕ-ի, ՍԵԱՏՕ-ի տիպի ագրեսիվ բլոկ, որի մեջ նախատեսվում է միավորել Անգլիան, Ֆրանսիան, Պորտուգալիան, Բելգիան, ԱՄՆ-ը, Հարավ-Աֆրիկյան Միությունը, Ռոդեզիայի ֆեդերացիան և Նյասալենդը։

ԱՄՆ-ի ռազմական շրջանները առանձնապես մեծ ուշադրություն են հանդես բերում Մարոկկոյի և Թունիսի, ինչպես նաև Լիվիայի նկատմամբ։ Ամերիկյան իմպերիալիստները ամեն կերպ ձգտում են Մարոկկոն և Թունիսը ընդգրկել Հյուսիս-Ատլանտյան պակտի մեջ։ Այդ պլանը,— գրել է «Վաշինգտոն պոստ էնդ-Թայմս» թերթը,— պահանջում է ամենալուրջ ուշադրություն, քանի որ Հյուսիսային Աֆրիկայի ստրատեգիական նշանակությունն անվիճելի է, իսկ Մարոկկոն և Թունիսը հանդիսանում են ՆԱՏՕ-ի տրամաբանական օղակները»։

Հյուսիսային Աֆրիկայի երկրներն իրենց ազդեցության տակ պահելու նպատակով ամերիկյան ագրեսիվ շրջաններն առաջարկում են ստեղծել «Միջերկրածովյան պակտ», որի մեջ նախատեսվում է միավորել Ֆրանսիան, Իտալիան, Իսպանիան, Մարոկկոն և Թունիսը։ Հասկանալի է, որ ագրեսիվ այդ պակտում ղեկավար դերը պետք է պատկանի ԱՄՆ-ին։

Միացյալ Նահանգների ագրեսիվ շրջանների բացառիկ հետաքրքրությունը Հյուսիսային Աֆրիկայի և, հատկապես, Մարոկկոյի նկատմամբ հասկանալի կդառնա, եթե հաշվի առնենք այն հանգամանքը, որ հետպատերազմյան տարիներին այստեղ կառուցվել է ամերիկյան ռազմական բազաների մի ամբողջ սիստեմ։ Ամերիկյան հրամանատարությունը Մարոկկոյում իր տրամադրության տակ ունի 5 խոշոր ռազմա-օդային բազաներ, որոնք ստեղծվել են համաձայն 1950 թվականի ֆրանս-ամերիկյան պայմանագրի, առանց հաշվի առնելու Մարոկկոյի ժողովրդի կարծիքը։ Այժմ, երբ Մարոկկոն ձեռք է բերել անկախություն, հասարակական և քաղաքական շրջանները և, առաջին հերթին, Կոմունիստական պարտիան, պահանջում են ամերիկյան զորամասերի դուրսբերում և ռազմական բազաների վերացում։

Աֆրիկյան ազատասեր ժողովուրդներն արդեն հասկանում են, որ «կոմունիստական ագրեսիայից» պաշտպանվելու քողի տակ ստեղծված բազաները ուղղված են ինչպես խաղաղության և սոցիալիզմի լագերի երկրների դեմ պատերազմ նախապատրաստելու, այնպես էլ իրենց ազգային-ազատագրա-

կան շարժումներն արյան մեջ խեղդելու և իմպերիալիստական պետություն-
ների դիրքերն Աֆրիկայում պահպանելու նպատակին։

Արևմտյան պետությունների կողմից ստեղծվող այդ ռազմական բլոկ-
ները, նշել է եգիպտական «Ալ-գումհուրիա» թերթը, հանդիսանում են գաղու-
թակալության նոր ձև։ «Այդպիսի պակտերին մասնակցելը,—ընդգծում է թեր-
թը,— մեզ խաղալիք կդարձնի մեծ պետությունների ձեռքում, որոնք մեզ վրա
կհաստատեն իրենց տիրապետությունը»։ Ահա թե ինչու Եգիպտոսը, Սուդանը
և Լիվիան վճռական կերպով մերժեցին մտնել Բաղդադի ագրեսիվ պակտի
մեջ, որը Արաբական միացյալ ռեսպուբլիկայի պրեզիդենտ Նասերը արդարա-
ցի կերպով անվանել է «ժողովուրդների բանտ»։

***

Բուրժուական գրականության մեջ ընդունված էր Աֆրիկան անվանել
«քնած մայր ցամաք», «անպաշտպան դատարկություն»։ Սակայն այժմ այդ
ժամանակներն անդառնալիորեն պատմության գիրկն են անցել և Աֆրիկան
ներկայումս զարթոնք է ապրում։ Հսկա մայր ցամաքի բոլոր մասերում ժո-
ղովուրդները ոտքի են կանգնում ընդդեմ գաղութային ճնշման ու ստրկական
ռեժիմի, պայքարի են ելնում հանուն ազատության և ազգային անկախու-
թյան։ Այդ մասին խոստովանում են անգամ իմպերիալիզմի մոլի պաշտպան-
ները։ «Աֆրիկան արթնացել է,— գրում է ամերիկյան հրապարակախոս Ջոն
Գանտերը,— թեև իրողությունն այնտեղ տարբերվում է Ասիայի իրադրությու-
նից, բայց նա քայլում է ժամանակի հետ համընթաց»։

Հետպատերազմյան տարիներին արմատական փոփոխություններ տեղի
ունեցան աֆրիկյան ժողովուրդների կյանքում։ Հակառակ գաղութարարների
ցանկության ցեղային հարաբերությունները քայքայվում են, ունեզրկված
գյուղացիները ներհոսում են քաղաք։ Արագ կերպով աճում է բանվոր դասա-
կարգը։ Ներկայումս 10 միլիոնից ավելի աֆրիկացիներ ապրում են վարձու
աշխատանքով։ Հարավ-Աֆրիկյան Միությունում բանվոր դասակարգի քանակը
հասնում է մեկ ու կես միլիոնի։ Մեկ միլիոնից ավելի բանվոր կա Բելգիական
Կոնգոյում։ Բրիտանական Արևելյան Աֆրիկայում վարձու բանվորների թիվը
1939 թվականի 576 հազարից աճել և 1953 թվականին հասել է մեկ միլիոն
167 հազարի։ Պատերազմի ընթացքում և, հատկապես, հետպատերազմյան
տարիներին, զգալի չափով աճեց տեղական աֆրիկյան բուրժուազիան, աճեց
աֆրիկյան ազգային ինտելիգենցիան։ Նիգերիայում, Գանայում և ֆրանսիա-
կան Արևմտյան Աֆրիկայում ստեղծվեցին բարձրագույն ուսումնական հաս-
տատություններ, երևան եկան բազմաթիվ կուլտուրական կազմակերպություն-
ներ, գիտական հաստատություններ, ստեղծվեց ազգային մամուլ, բարձրա-
ցավ ժողովրդական մասսաների ինքնագիտակցությունը, արագացավ ժողո-
վուրդների համախմբման և ազգերի ձևավորման պրոցեսը։

Կապիտալիստական հարաբերությունների զարգացումը, դասակարգային
և ազգային կազմակերպությունների ստեղծումը, անկախ ցեղային պատկա-
նելությունից մարդկանց համախմբումը աստիճանաբար վերացնում են ցե-
ղային անջրպետները, առաջին պլանի վրա են դնում համազգային, դասա-
կարգային շահերը և ստեղծում ավելի բարենպաստ պայմաններ հակաիմպե-



րիալիստական շարժման համար. հասունանում են նոր հասարակական ուժեր՝
ընդդեմ գաղութակալության, ընդդեմ իմպերիալիզմի։

Աֆրիկայի վրա խոր ազդեցություն ունեցավ, հատկապես, գաղութային
սիստեմի փլուզումն Ասիայում։ Իմպերիալիստների դեմ Ասիայի ժողովուրդ-
ների մղած պայքարի հաջողությունները ոգևորեցին աֆրիկյան ժողովուրդնե-
րին՝ իրենց անկախության համար մղվող պայքարում։ Աֆրիկայում ամենա-
ժողովրդական լոզունգը դարձավ՝ «Անկախություն ամենակարճ ժամկետում»։
Չինական ժողովրդական ռևոլյուցիայի հաղթանակը, ինչպես նաև Հնդկաս-
տանի, Ինդոնեզիայի, Բիրմայի և այլ երկրների անկախության հռչակումը
մեծ չափով ոգևորեց աֆրիկյան երկրների հասարակության տարբեր խավերին
հակագաղութային միասնական ճակատում միավորվելու համար։

Հետպատերազմյան մի քանի տարիների ընթացքում Աֆրիկայում ստեղծ-
վեցին բազմաթիվ մասսայական ազգային կազմակերպություններ՝ Աֆրիկայի
Դեմոկրատական միավորումը, Նիգերիայի և Կամերունի Ազգային խորհուրդը,
Միասնական Կոնվենտը, Ոսկե Ափի ժողովրդական պարտիան, Քենիայի աֆ-
րիկացիների Միությունը, Հյուսիսային Ռոդեզիայի, Հարավային Ռոդեզիայի,
Նյասալենդի, Ուգանդայի Ազգային կոնգրեսները։ Այնուհետև գաղութներում
ծագեցին տարբեր քաղաքական պարտիաներ։ Այդ բոլորը վճռական կերպով
փոխեցին ժողովրդական շարժման էությունն Աֆրիկայում։ Աֆրիկյան ժողո-
վուրդները պաշտպանությունից անցան հարձակման ընդդեմ գաղութարարու-
թյան, իմպերիալիստական պետություններին ստիպեցին դիմել մանևրների և
նահանջի քաղաքականության։ Ազգային միասնության, անկախության և ազ-
գային վերածննդի գաղափարը ընդգրկել է բնակչության ամենալայն խավերը,
տագնապահար անելով իմպերիալիստներին։

Աֆրիկայի ժողովուրդների պայքարի մեջ գնալով ավելի է աճում ու մե-
ծանում բանվոր դասակարգի դերը։ Հյուսիսային Ռոդեզիայի լեռնագործները
վերջին տարիներս հասան այն բանին, որ ստիպեցին իրենց տերերին երկու
անգամ բարձրացնելու իրենց աշխատավարձը, ֆրանսիական Հյուսիսային
Աֆրիկայի բանվոր դասակարգը ֆրանսիական պրոգրեսիվ ուժերի օգնությամբ
ու պաշտպանությամբ՝ ֆրանսիական կառավարությանը ստիպեց աշխատան-
քային օրենսդրություն կիրառել։ Աֆրիկայի բանվոր դասակարգի տնտեսական
պայքարի բնորոշ կողմն այն է, որ նրա դիմաց կանգնած է ոչ թե տեղական
ազգային բուրժուազիան, այլ, առաջին հերթին, օտարերկրյա իմպերիալիս-
տական բուրժուազիան։ Այդ պատճառով էլ տնտեսական պայքարը բնականո-
րեն միանում է քաղաքական պայքարին՝ ընդդեմ օտարերկրյա մոնոպոլիաների
և գաղութային իշխանությունների։

Աֆրիկայի ոչ բոլոր երկրներում է, որ գոյություն ունեն կոմունիստական
պարտիաներ։ Այդ պատճառով էլ պրոֆմիութենական կազմակերպությունները
հանդես են գալիս իբրև աշխատավորական լայն մասսաներին բանվոր դա-
սակարգի շուրջը համախմբելու և նրանց ազատագրական պայքարի մղելու
հիմնական ուժ։ Աֆրիկյան շատ գաղութներում ազատագրական շարժման
գլուխ է կանգնած ազգային բուրժուազիան։ Բայց բանվոր դասակարգն իր
դրությամբ ամենակազմակերպված և համախմբված ուժն է հակագաղութային
պայքարում։

1952 թվականին ՄԱԿ-ում սոցիալիզմի երկրների պահանջով և ասիական
ու աֆրիկյան երկրների օգնությամբ անկախություն նվաճեց և սովերեն պե-

տություն դարձավ իտալական նախկին գաղութ Լիվիան։ 1956 թվականին ազատություն և անկախություն ձեռք բերեցին՝ Թունիսը, Մարոկկոն և Սուդանը։ Ստրկական պայմաններից ազատվեց Եգիպտոսը, որը 1952 թվականի հուլիսյան ռևոլյուցիայից հետո կանգնեց ազգային ինքնուրույն զարգացման ուղու վրա։ Անգլո-ֆրանս-իսրայելյան իմպերիալիստների արյունոտ ագրեսիան, որը նպատակ ուներ Եգիպտոսում վերականգնել նախկին ստրկական ռեժիմը, վերջացավ նրանց խայտառակ պարտությամբ։ 1958 թվականի փետրվարի 21-ի հանրաքվեով ստեղծվեց Եգիպտոսի և Սիրիայի Միացյալ Արաբական Ռեսպուբլիկա։

1957 թվականի մարտի 6-ին անկախություն ձեռք բերեց անգլիական գաղութ Ոսկե Ափը, որը վերանվանվեց Գանա, իր մեջ միավորելով Տոգոն։

Գաղութային խայտառակ սիստեմի քայքայումն Աֆրիկայում շարունակվում է։ Ալժիրի հայրենասերները համառորեն պայքարում են իրենց ազգային անկախության համար։ Բովանդակ աշխարհի պրոգրեսիվ մարդկությանը մեծ հիացմունք են պատճառում Ալժիրի հայրենասերները, որոնք երեք տարի է, ինչ արյունալի, համառ մարտեր են մղում ֆրանսիական գաղութարարների գերազանց և ժամանակակից տեխնիկայով զինված ուժերի դեմ։ Ալժիրի ազգային-ազատագրական շարժումը անընդհատ ընդլայնվում է, մարտիկների ջոկատները ստվարանում են հազարավոր նորանոր ալժիրցի հայրենասերներով, որոնք ոտքի են ելնում՝ պաշտպանելու իրենց ազատությունը և անկախությունը։ Այժմ անառարկելի է, որ ԱՄՆ-ը և նրանց կողմից ղեկավարվող Հյուսիս-Ատլանտյան պակտի մասնակից մյուս երկրներն օգնություն են ցույց տալիս ֆրանսիական գաղութարարներին Ալժիրի դեմ պատերազմը շարունակելու գործում։ «Այդ նշանակում է,— ասել է Ալժիրի ներկայացուցիչ Այախ Հասանը Կահիրեի համերաշխության կոնֆերանսում,— որ Ալժիրը գտնվում է պատերազմական վիճակում ո՛չ միայն Ֆրանսիայի, այլև ՆԱՏՕ-ի հետ, և կանգնած է երես առ երես իմպերիալիզմի հսկայական ուժերի դեմ»։

Ալժիրի ազգային-ազատագրական շարժման ուժեղացումը վայելում է ազատասեր ժողովուրդների աջակցությունը, գտնում է Ֆրանսիայի հասարակական լայն շրջանների աջակցությունը։ Այդ պայքարը վառ օրինակ է դեռևս ստրկական վիճակում գտնվող աֆրիկյան մյուս ժողովուրդների համար։ Առանձնապես մեծ օգնություն են ցույց տալիս ալժիրցիներին Մարոկկոյի և Թունիսի ժողովուրդները։ Ֆրանսիական գաղութարարների խելահեղ փորձերը՝ զենքի ուժով, խաղաղ բնակչությանը բարբարոս ռմբակոծության ենթարկելու միջոցով Ալժիրում պահպանելու գաղութային ռեժիմը, դատապարտված են ձախողման։

Միավորման են ձգտում սոմալցիները, որոնց երկիրը բաժանված է Անգլիայի, Ֆրանսիայի և Իտալիայի միջև։ Պետական անկախության համար պայքարի են ելել նաև Ուգանդայի, Կամերունի և Նիգերիայի ժողովուրդները։ Սուր բնույթ է ստացել ազատագրական պայքարը Քենիայում։ Վեց տարի է, ինչ Քենիայի ժողովուրդը հերոսաբար պայքարում է մինչև ատամները զինված անգլիական զորամասերի դեմ։ Պաշտոնական տվյալների համաձայն, 1952 թվականի հոկտեմբերից Քենիայում սպանվել և գլխատվել են 12 հազար աֆրիկացիներ։ Ավելի քան 42 հազար մարդ տառապում են բանտերում և համակենտրոնացման ճամբարներում։

Աֆրիկայի աշխատավոր մասսաների կյանքում կարևոր իրադարձություն



հանդիսացավ 1957 թվականի սկզբին Կոտոն քաղաքում (ֆրանսիական Դոգոմեա գաղութում) տեղի ունեցած արհմիութենական կոնֆերանսը։ Այդ կոնֆերանսը որոշում ընդունեց ֆրանսիական արևմտյան և հասարակածային Աֆրիկայի մի շարք արհմիություններ միավորել Համաաֆրիկյան աշխատավորական Միության մեջ։ Այդ Միությունն իրեն նպատակ է դնում միավորել և կազմակերպել Սև Աֆրիկայի աշխատավորներին՝ պայքարելու գաղութային ռեժիմի և շահագործման դեմ։

Արհմիությունների ղեկավարությամբ Արևադարձային Աֆրիկայում լայն ծավալ են ստացել գործադուլային շարժումները։ Բանվորներն ավելի հաճախ են հանդես գալիս հանուն իրենց նյութական կյանքի պայմանների բարելավման, ընդդեմ ազգային խտրականության և իշխանությունների կամայականությունների։ 1955 թվականին Նիգերիայում 18 օր անընդհատ գործադուլ էին անում կապարի հանքերի 55 հազար բանվորներ և 14 օր՝ 40 հազար կառուցողներ։ 1955 թվականից մինչև 1956 թվականի փետրվարը գործադուլ արին Ոսկե Ափի 37 հազար բանվորներ։ 1957 թվականին գործադուլային շարժում ծավալվեց նաև Հյուսիսային Ռոդեզիայի պղնձահանքերում, Հարավային Ռոդեզիայի երկաթուղիներում, Ուգանդայի պլանտացիաներում, ֆրանսիական Արևմտյան Աֆրիկայի մի շարք շրջաններում։ Դակարի, Կոնակրի, Աբիջանի և ֆրանսիական Արևմտյան Աֆրիկայի այլ կենտրոնների բանվորները կապեր են հաստատում գյուղացիների հետ՝ դեմոկրատական իրավունքի, ազգային անկախություն ձեռք բերելու նպատակով համատեղ պայքարելու համար։ Բանվորական կազմակերպությունները հուսալի հենարան են դարձել Նիգերիայի, Ուգանդայի, Կամերունի և այլ երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման համար։

1955 թվականի հունիսին Հարավ-Աֆրիկյան Միությունում կայացավ Աֆրիկայի պատմության մեջ առաջին ժողովրդական կոնգրեսը, որին մասնակցում էին երկրի տարբեր ծայրերից հավաքված մի քանի հազար պատվիրակներ։ Կոնգրեսը հռչակեց «Ազատության խարտիա», որտեղ հռչակվեցին հետևյալ պահանջները. միասնական իրավունք բոլոր ազգային խմբերի համար, հողը տալ նրանց, ովքեր այն մշակում են, երկրի հարստության աղբյուրները պետք է պատկանեն ժողովրդին, երկիրը պետք է կառավարի ժողովուրդը։ Թեև Ստրեյդոմի կառավարությունը այդ պահանջներին պատասխանեց մասսայական տեռորով, այնուամենայնիվ մի բան պարզ է, որ գաղութարարները այլևս չեն կարող կայունացնել իրենց տիրապետությունը։

Աֆրիկայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման ուժեղացման գործում խոշոր նշանակություն ունեցավ 1955 թվականի ապրիլին Բանդունգում կայացած Ասիայի և Աֆրիկայի 29 երկրների ներկայացուցիչների կոնֆերանսը, որին աֆրիկյան երկրներից մասնակցեցին Եգիպտոսը, Լիվիան, Հաբեշստանը, Լիբերիան, Ոսկե Ափը (Գանա) և Սուդանը։

1957 թվականի դեկտեմբերի 26-ից մինչև 1958 թվականի հունվարի 1-ը Եգիպտոսի մայրաքաղաք Կահիրեում տեղի ունեցավ Ասիայի և Աֆրիկայի երկրների համերաշխության նոր կոնֆերանս, որին մասնակցեցին 45 պետությունների ներկայացուցիչներ։ Կահիրեի կոնֆերանսին իրենց ներկայացուցիչները ուղարկեցին Քենիան, Ուգանդան, Սոմալին, Կամերունը, Տոգոն, Սենեգալը, Չադը, Նիգերիան, Տանգանիկան, որոնք պատմության մեջ առաջին անգամ էին մասնակցում միջազգային նման կոնֆերանսի։

Կոնֆերանսում երկու մայր ցամաքների ներկայացուցիչները քննարկեցին քաղաքական, տնտեսական, սոցիալական և կուլտուրական կարգի կարևորագույն հարցեր, որոնք հուզում են ո՛չ միայն երկու աշխարհամասերի ժողովուրդներին, այլև կենսական նշանակություն ունեն ամբողջ մարդկության ճակատագրի համար։ Կահիրեի կոնֆերանսը ցույց տվեց Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդների համերաշխության շարժման բացառիկ ուժն ու թափը, նրանց շահերի միասնությունը՝ գաղութակալական լուծը թոթափելու և խսկապես անկախություն նվաճելու գործում։

Արևմտյան գաղութարարներն այժմ ճգնում են ապացուցել, որ Աֆրիկան չի կարող իր գոյությունը պահպանել առանց Եվրոպայի, իսկ Եվրոպան՝ առանց Աֆրիկայի։ Եվ դրա համար նրանք պնդում են, որ պետք է ստեղծել տնտեսական միասնական միավորում, որը կոչվում է «Եվրաֆրիկա»։ Դրա էությունն իրականում այն է, որ եվրոպական երկրների մոնոպոլիաների համար ստեղծեն ավելի նպաստավոր պայմաններ Աֆրիկայի բնական հարստությունները կողոպտելու և նրա ժողովուրդներին ստրկության մեջ պահելու համար։ Սակայն դրանք իզուր ջանքեր են։ Աֆրիկայի ժողովուրդներն իմպերիալիստների մանևրներին հակադրում են պայքարի ավելի կազմակերպված միջոցներ, ձգտում են լիակատար անկախության և ինքնուրույն զարգացման։

Սոցիալիզմի հզոր ճամբարը, նրա հսկայական հաջողությունները խաղաղ ստեղծագործական աշխատանքի բնագավառում մեծ վստահություն և ոգևորություն են առաջացնում Աֆրիկայի ժողովուրդների մոտ՝ նրանց ազատության և ազգային վերածննդի համար մղվող պայքարում։ Միշտ էլ, երբ աֆրիկյան երկրների՝ Եգիպտոսի, Մարոկկոյի, Թունիսի, Ալժիրի, Լիվիայի, Սուդանի, Հարավ-Աֆրիկյան Միության պրոբլեմները քննարկվել են միջազգային կազմակերպություններում, Սովետական Միությունը վճռականորեն հանդես է եկել Աֆրիկայի ժողովուրդների արդարացի պահանջների պաշտպանությամբ։ Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և սոցիալիզմի ճամբարի մյուս երկրները մեծ օգնություն և աջակցություն են ցույց տալիս աֆրիկյան այն երկրներին, որոնք ինքնուրույն զարգացման ուղի են դուրս եկել։ Այդպիսի օգնությունը պայմանավորված չէ քաղաքական կամ ռազմական որևէ պարտականությամբ։ Այդպիսի օգնություն ստացան Եգիպտոսը և Սիրիան։ Հաջողությամբ զարգանում են Սովետական Միության տնտեսական հարաբերությունները Սուդանի, Լիվիայի և այլ երկրների հետ։

Սոցիալիզմի ճամբարի երկրները, աշխարհի պրոգրեսիվ մարդիկ դատապարտում և անարգանքի սյունին են գամում արևմտյան պետությունների գաղութակալական քաղաքականությունը։ Միլիոնավոր մարդիկ Սովետական Միությանը ողջունում են գաղութային քաղաքականության դեմ նրա անհաշտ պայքարի համար, խաղաղասիրական քաղաքականության համար, բոլոր ժողովուրդների միջև իրավահավասարության ու բարեկամության հիման վրա բազմակողմանի կապեր հաստատելու նրա հետևողական քաղաքականության համար։ Հեռու չէ այն ժամանակը, երբ Աֆրիկայի բոլոր ժողովուրդները վերջնականապես կթոթափեն իմպերիալիզմի գաղութային լուծը և կբռնեն իրենց ազգային վերածննդի ու առաջադիմության ուղին։

---

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՐՈՒՍՏ ԱՂԲՅՈՒՐԸ

Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Սովետական իշխանության տարիներին Կոմունիստական պարտիայի ամենօրյա հոգատարության շնորհիվ Հայաստանը վերածվեց զարգացած արդյունաբերություն, մեքենայացված գյուղատնտեսություն և առաջավոր կուլտուրա ունեցող ծաղկող Սովետական ռեսպուբլիկայի։

Անցած 37 տարվա ընթացքում ռեսպուբլիկայում ստեղծվել է հզոր արդյունաբերություն։ Կառուցվել և գործի են դրվել հարյուրավոր խոշոր ձեռնարկություններ։ Այժմ ռեսպուբլիկայի արդյունաբերությունը երկրին տալիս է մոլիբդեն ու պղինձ, ալյումին ու քիմիական արտադրանք, հաստոցներ և կոմպրեսորներ, կաուչուկ և ավտոդողեր, գեներատորներ ու տրանսֆորմատորներ, լայն սպառման ապրանքների հարյուրավոր տեսակներ։

Առանձնապես մեծ հաջողություններ են ձեռք բերված ռեսպուբլիկայի ընդերքի ուսումնասիրման և բնական հանածոների արդյունահանման ուղղությամբ, որի վրա մեր պարտիան ու կառավարությունը լուրջ ուշադրություն են դարձնում։

Հայաստանը լեռնային երկիր է։ Նրա ամենացածր մասը ծովի մակերևույթից 400 մետր բարձրության վրա է գտնվում։ Մեր ռեսպուբլիկայի փոքրիկ տարածությունն իր երկրաբանական կառուցվածքի բարդությամբ և օգտակար հանածոների հարստությամբ Սովետական Միության կարևոր շրջաններից մեկն է հանդիսանում։

Ռեսպուբլիկայի տերիտորիայում կարելի է տեսնել ամենաբազմապիսի երկրաբանական պրոցեսների հետևանքներ, նրա ընդերքը հարուստ է օգտակար հանածոների ամենաբազմապիսի տեսակներով՝ պղնձով, մոլիբդենով, ալյումինի հումքով, կապարով, երկաթով, արծաթով, ոսկով, ինչպես նաև շինանյութերով, որպիսիք են՝ տուֆը, պեմզան, բազալտը և հանքային հումքի բազմաթիվ այլ տեսակներ։

Սակայն այդ հարստությունները դարերով մնացել են անմշակ։ Տեղ-տեղ միայն շատ պրիմիտիվ եղանակով արդյունահանվում էր պղինձ, արծաթ և գունավոր մետաղների մի քանի այլ տեսակներ։

Սովետական պետությունը հետևողականորեն իրականացնում է բոլոր շրջանների և ռեսպուբլիկաների տնտեսական լայն վերելք։ Այդ վերելքը հիմնըվում է սոցիալիստական ինդուստրիայի զարգացման վրա, երկրի բոլոր հիմնական տնտեսական շրջաններում ծանր արդյունաբերության և ամենից առաջ քիմիական, էներգետիկ, մետալուրգիական հենակետեր ստեղծելու վրա։ Լենինյան ցուցումներին համապատասխան՝ Կոմունիստական պարտիան

և Սովետական պետությունը ապահովեցին երկրի բոլոր տնտեսական շրջանների բնական ռեսուրսների լայն օգտագործումը, որն իր ժամանակին սովետական ժողովրդին օգնեց արագորեն վերացնելու տնտեսական քայքայվածությունը և արագ թափով առաջ մղելու սոցիալիստական տնտեսությունը՝ աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման հիման վրա։ Սովետական իշխանության առաջին իսկ տարիներին ռեսպուբլիկայում լայն աշխատանք ծավալվեց բնական հարստությունների ուսումնասիրման ուղղությամբ, որը ցույց տվեց, որ Հայաստանի ընդերքը չափազանց հարուստ է ամենաբազմապիսի օգտակար հանածոներով։ Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում, սիստեմատիկ ու պլանաչափ աշխատանքի հետևանքով, ռեսպուբլիկայի տերիտորիայում հայտնաբերվել և ուսումնասիրվել են հանքային հումքի բազմաթիվ տեսակներ, որոնց բազայի վրա հնարավոր է եղել ստեղծել և զարգացնել ժողովրդական տնտեսության զանազան ճյուղեր։ Դրա շնորհիվ արմատապես փոխվել է մեր ռեսպուբլիկայի դեմքը։

Սովետական իշխանության տարիներին ռեսպուբլիկայում սկիզբ են առել և այժմ հաջողությամբ զարգանում են արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ լեռնահանքային արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, քիմիական, էլեկտրամեքենաշինական, շինանյութերի արդյունաբերությունը և այլն։

Բավական է ասել, որ հենց միայն երկրաբանական հետազոտությունների համար պետությունը տարեկան ավելի քան 100 միլիոն ռուբլի է հատկացնում։

Հայկական ՍՍՌ արդյունաբերության ընդհանուր զարգացման մեջ հետանկարային ժամանակաշրջանում նշանակալի տեղ է գրավում Ալավերդու շրջանը։ Այս հանգամանքը բացատրվում է այն գործարանների կոմպլեքսով, որոնք պղինձ պարունակող նյութերի վերամշակումից ստանում են պղինձ ու պղնձարջասպ, իսկ այդ պրոցեսի ընթացքում անջատված գազերից՝ ծծմբաթթու և ապա սուպերֆոսֆատ։ Բացի դրանից, հատուկ ուշադրություն է դարձվում պղնձակոնցենտրատներից, պղնձի և բազմամետաղային հանքաքարերից հազվագյուտ տարրեր ստանալու վրա։

Նախատեսվում է Ալավերդու շրջանում զգալիորեն ավելացնել պղնձի և ցինկակապարային հանքաքարերի հանույթը (Շամլուղ, Հագվի, Ախթալա և այլն)։ Վերջին երկու տարվա երկրաբանական-հետախուզական աշխատանքները մետաղի հարուստ պարունակությամբ պղնձահանքի զգալի պաշարներ հայտաբերեցին (Շամլուղ և Հագվի) և մի ավելորդ անգամ հաստատեցին, որ անհիմն է այն կարծիքը, թե Ալավերդու շրջանի հանքաքարի պաշարները սպառված են։ Ժխտվում է նաև գոյություն ունեցող այն կարծիքը, թե Հայաստանի հյուսիսային շրջաններում մոլիբդեն չկա, մինչդեռ երկրաբանական հետախուզական նյութերը ցույց են տվել, որ Թեղուտում հայտաբերվել են արդյունաբերական նշանակություն ունեցող պղնձա-մոլիբդենային հանքեր։

Նախատեսվում է առաջիկա տարիներին վերակառուցել Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի ներկայիս ձեռնարկությունները, այն է՝ ծծմբաթթվի արտադրությունը աշտարակային եղանակի փոխարեն կատարել կոնտակտային եղանակով, որը հնարավորություն կտա որսալ փոշին, առողջացնել մթնոլորտը և կորզել հանքանյութերի մեջ պարունակվող հազվագյուտ մետաղները։ Այդ նպատակով նախատեսվում է պղինձ պարունակող նյութերի վերամշակումը կատարել էլեկտրաէներգիայի միջոցով։ Դրա համար մինչև



1960 թվականը կառուցվելու է փորձնական վառարան, իսկ այնուհետև ամբողջ պրոցեսը կատարվելու է էլեկտրաձուլումով, որը հնարավորություն կտա կոմպլեքսային եղանակով օգտագործելու հումքը և առողջացնելու շրջապատի մթնոլորտը։

Արդյունահանվող հանքանյութերում շատ կան արդյունաբերական նշանակություն ունեցող հազվագյուտ մետաղներ (թելուր, սելեն, գերմանիում և այլն), որոնք մինչև այժմ անհետ կորչում էին։ Ժողովրդական տնտեսության մեջ ավտոմատիկայի, տելեմեխանիկայի և հաշվիչ մեքենաների լայն կիրառման կապակցությամբ վերջին տարիներս հազվագյուտ և ցրված տարրերի պահանջը խիստ ավելացել է։ Արդեն իսկ 1958—59 թվականներին փորձնական սարքավորում է կառուցվելու հազվագյուտ մետաղների ստացման համար և այդ փորձի արդյունքներն արդյունաբերական մասշտաբով կիրառվելու են սկսած 1960 թվականից։ Նախատեսվում է 1958 թվականից գիտահետազոտական լայն աշխատանքներ կատարել հազվագյուտ մետաղների հայտաբերման ուղղությամբ. մասնավորապես Ալավերդում կազմակերպվելու է մետալուրգիական խոշոր լաբորատորիա։

Անհրաժեշտ է նշել, որ ցինկա-կապարային հանքերի պրոգնոզային պաշարները հիմք են տալիս զգալիորեն ընդարձակելու այդ հանքերի հանույթն ու վերամշակումը։ Ներկայումս ռեսպուբլիկայի տերիտորիայում հայտնի են ավելի քան 100 կապարա-ցինկային դրսևորումներ և մի քանի հանքավայրեր։ Դրանց մեծ մասը գտնվում է Ալավերդու, Շամշադինի, Ղափանի, Ազիզբեկովի, Ստեփանավանի և Դիլիջանի շրջաններում։

Նախատեսվում է մինչև 1960 թվականը հարստացուցիչ ֆաբրիկա կառուցել Ախթալայում, ինչպես ցինկա-կապարային հանքերի, այնպես էլ Շամլուղի հանքերի հարստացման համար։

Մեր մոտակա և կարևոր խնդիրն է՝ բարելավել բազմամետաղային հանքերի հարստացման տեխնոլոգիան և բարձրացնել տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։

Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանում 1958 թվականին սպասվում է 50 հազար տոննա հրակայուն աղյուսի թողարկում։ Քանի որ քանակային խոշոր աճ չի նախատեսվում, պարտիական կազմակերպության և գործարանի ղեկավարության ուշադրությունը կենտրոնացած է լինելու արտադրության տեխնոլոգիայի բարելավման և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման, ինչպես և երկաթով հարուստ կավի օգտագործման վրա՝ դրանից բնական ներկեր վերամշակելու նպատակով։ Սա զգալիորեն կիջեցնի արտադրանքի ինքնարժեքը և կբարձրացնի գործարանի շահութաբերությունը։

Ալավերդու շրջանը ներկեր արտադրելու հանքային հումքի մեծ պաշարներ ունի։ Երկրաբանական-հետախուզական աշխատանքները Աքորի գյուղում հայտաբերել են ներկերի հումքի զգալի պաշարներ, որոնք պետք է մշակի տեղական արտադրական կոմբինատը։

Մեր ռեսպուբլիկայի օգտակար հանածոներից երկրի ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունի մոլիբդենի հանքանյութը, որով Հայաստանը շատ հարուստ է։ ՍՍՌՄ-ում հայտաբերված պաշարների, ինչպես և մոլիբդենի հանքանյութի արտադրության նշանակալի մասը գտնվում է Հայաստանում։ Մոլիբդենը շատ արժեքավոր մետաղ է, որը համեմատաբար նորերս է միայն արդյունաբերական կիրառում ստացել։ Կոնստրուկ-

ցիոն պողպատին փոքր քանակությամբ մոլիբդեն ավելացնելը խիստ փոխում և բարելավում է նրա որակը, բարձրացնում է ջերմադիմացկունությունը, թթվուտային դիմացկունությունը և պողպատի ամրությունը։ Մոլիբդենը լայնորեն կիրառվում է էլեկտրատեխնիկական, ռադիո-տեխնիկական և արդյունաբերության մի շարք այլ ճյուղերի մեջ։ ՍՄԿԿ XX համագումարի՝ վեցերորդ հնգամյա պլանի Դիրեկտիվների համաձայն նախատեսված է կրկնապատկել մոլիբդենի հանույթը և 65—70 տոկոսով ավելացնել մոլիբդենի հետախուզված հումքային բազան։

Ղափանի, Սիսիանի և Մեղրու շրջաններում առաջիկա տարիներին արդյունաբերության զարգացման հիմնական ուղղությունը լինելու է գունավոր մետալուրգիայի հետագա աճը։

Պղնձա-մոլիբդենային հարուստ հանքավայրերում են կառուցված Քաջարանի և Դաստակերտի կոմբինատները, կառուցման պրոցեսում է գտնվում Ագարակի կոմբինատը, որը շարք կմտնի այս հնգամյակում։

Նախատեսվում է Քաջարանի կոմբինատի հանքանյութի հանույթը 7 տարվա ընթացքում ավելացնել մի քանի անգամ, որով Քաջարանի կոմբինատը կդառնա երկրի ամենախոշոր կոմբինատներից մեկը։ Կրկնապատկվելու է Զանգեզուրի հանքվարչության պղնձահանքի հանույթը։ Հեռանկարային ժամանակաշրջանում նախատեսվում է յուրացնել պղնձա-մոլիբդենային նոր հանքավայրեր։ Ձեռնարկություններում ժամանակակից արտադրական կորպուսների կողքին ստեղծվում են բարեկարգ բանվորական ավաններ՝ գեղեցիկ ու հարմարավետ բնակելի տներով և կուլտուր-կենցաղային հիմնարկություններով։

Առաջիկա տարիներին գունավոր մետալուրգիայի արդյունաբերության զարգացման հիմնական ուղղությունը լինելու է ոչ միայն հանքի հանույթի և վերամշակության քանակական ավելացումը, այլև տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացումը հետևյալ ուղիներով. առաջին՝ հանքանյութերից մետաղների կորզման տոկոսի զգալի բարձրացումով, երկրորդ՝ հանքային հումքի կոմպլեքսային օգտագործումով, բոլոր մետաղների թվում հազվագյուտ ու ցրված տարրերի ստացումով և երրորդ՝ օքսիդացված հանքանյութերի արդյունաբերական յուրացումով։ Այս բոլոր միջոցառումները մեծ չափով կավելացնեն ստացվող մետաղի քանակը, կիջեցնեն արտադրանքի ինքնարժեքը և ձեռնարկությունների աշխատանքը կդարձնեն է՛լ ավելի շահութաբեր։

Այս ուղղությամբ խոշոր աշխատանք է կատարելու վերջերս կազմակերպված գիտա-հետազոտական Լեռնամետալուրգիական ինստիտուտը, որը մտնում է Հայկական ՍՍՌ Ժողովրդական տնտեսության խորհրդի սիստեմի մեջ։

Այս ինստիտուտում ստեղծված են մի շարք սեկտորներ՝ լեռնային գործի սեկտոր, օգտակար հանածոների հարստացման, մետալուրգիայի, լեռնահանքային արդյունաբերության էկոնոմիկայի սեկտորներ, որոնք կոչված են մշակելու լեռնահանքային և մետալուրգիական արդյունաբերության կենսական պրոբլեմները։

Ինստիտուտն արդեն ձեռնամուխ է եղել մի շարք հետազոտական աշխատանքների կատարմանը։ Շատ կարևոր աշխատանք է Քաջարանի հանքավայրերի պղնձա-մոլիբդենային հանքերի տարբեր տիպերի հարստացման տեխնոլոգիական սխեմաների մշակումը, քանի որ այդ հանքերը պղնձի և



մոլիբդենի զգալի պարունակությամբ ներկայումս հարստացման ռացիոնալ մեթոդների չեն ենթարկվում, որի հետևանքով հանքերից մետաղների կորզումը երկրի առաջավոր ձեռնարկությունների համեմատությամբ ցածր է։ Ինստիտուտում աշխատանքներ և փորձեր են կատարվում նաև մոլիբդենային կոնցենտրատների վերամշակման ուղղությամբ, նպատակ ունենալով միջոցներ գտնել նրանց պարունակած հազվագյուտ մետաղները անջատելու համար։

Գունավոր մետաղների կոմպլեքսային հանքանյութերից առաջ ստացվում էին միայն պղինձ, ցինկ, կապար, արծաթ։ Իսկ հումքի մյուս կոմպոնենտները, առանձնապես հազվագյուտ տարրերը, թափվածքի մեջ էին մնում։ Համարյա չեն օգտագործվում այնպիսի ցրված և հազվագյուտ տարրերը, ինչպիսիք են սելենը, թելուրը և այլն։

Հումքի կոմպլեքսային օգտագործումը կախված է նոր մետաղների ու պրոդուկտների հարաճուն պահանջից, առանց որոնց չի կարող զարգանալ ժամանակակից տեխնիկան։

Որքան առաջ են գնում ատոմային, էլեկտրոնային, ռեակտիվ և տեխնիկայի ուրիշ նոր ճյուղերը, այնքան ավելի է աճում նոր նյութերի պահանջը։ Ատոմային արդյունաբերության մեջ բացի ուրանից և թորիից, որոնք միջուկային վառելանյութ են հանդիսանում, որպես կոնստրուկցիոն նյութեր անհրաժեշտ են նաև ցիրկոնիումը և բերիլիումը։ Գերմանիումը և կրեմնիումը որպես կիսահաղորդիչներ ավելի ու ավելի շատ են օգտագործվում բյուրեղային ուղղիչներում և ուժեղացուցիչներում, ռադիո-տեխնիկական ապարատուրաներում, ռադիոլոկացիոն սարքավորումներում, տելեմեխանիկայում և ավտոմատիկայում։ Էլեկտրոտեխնիկայում և ռադիոտեխնիկայում վոլֆրամի և մոլիբդենի հետ միասին ընդարձակվում է տանտալի, սելենի և այլ հազվագյուտ տարրերի կիրառումը։

Հազվագյուտ տարրերի ստացման տեխնոլոգիայի բարդությունը, նրանց արտադրության դեռևս փոքր չափերը որոշում են այդ տարրերի բարձր արժեքը ամբողջ աշխարհում (բազմաթիվ հազվագյուտ տարրերի գները մի քանի հազար անգամ ավելի բարձր են, քան սև և գունավոր մետաղների գները)։

Հազվագյուտ տարրերի հայրենական հզոր արդյունաբերության ստեղծումը կապված է հումքային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման խիստ ընդարձակման հետ, հումքից առաջներում հաճախ թափվածքի հետ դուրս նետվող մի շարք տարրերի ստացման նորագույն տեխնոլոգիայի արմատավորման հետ։ Հումքի նյութերի ու էներգիայի կոմպլեքսային օգտագործման պրոբլեմը ժողովրդատնտեսական խոշոր պրոբլեմ է, որը պահանջում է մըշտական ուշադրություն, բազմակողմանի գիտական հետազոտություններ և տեխնիկական խոր որոնումներ։

Արդյունաբերական արժեքավոր հումքի կորուստների դեմ վճռական պայքար մղելը պետական խոշոր կարևորություն ունեցող գործ է։ Այդ կորուստների վերացումը ոչ միայն կբազմապատկի ժողովրդական տնտեսության հումքային ռեսուրսները, այլև խիստ կբարձրացնի հանույթային արդյունաբերության տնտեսական էֆեկտիվությունը, կնպաստի արդյունաբերության վերամշակող ճյուղերի արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը։

Դրա համար էլ ժողովրդական տնտեսության առաջիկա խնդիրներից մեկն է՝ առավելագույն չափով կրճատել արժեքավոր արդյունաբերական հումքի

կորուստները և կոմպլեքսային ձևով օգտագործել այն, որը խոշոր կարևորություն ունի և՛ տեխնիկական, և՛ տնտեսական տեսակետից: Երկար տարիներ այս հարցերի ճիշտ լուծմանը զգալի չափով խանգարում էին գերատեսչական արգելակները, որոշ արդյունաբերական մինիստրությունների ֆունկցիաների սահմանափակությունը, որոնք հաճախ անտեսում էին արտադրության մյուս ճյուղերի շահերը, հետևապես և ամբողջ ժողովրդական տնտեսության շահերը: Ներկայումս հումքի կոմպլեքսային օգտագործման հարցի պրակտիկ լուծումը մեծ չափով կախված է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհրդից և Պետպլանից:

Կարևոր գունավոր մետաղներից մեկը ալյումինն է, որի արտադրությունը ռեսպուբլիկայում կազմակերպվել է 1950 թվականին: Վերջին տարիներս լուրջ աշխատանք է կատարված ռեսպուբլիկայում պղնձի և ալյումինի լիակատար վերամշակման համար: Առաջին անգամ այդ մետաղներից սկսել են արտադրել զանազան կաբելային իրեր և էլեկտրական հաղորդալարեր, իսկ այժմ կառուցվում է ալյումինե ֆոլգեր և վայրբրարսեր արտադրելու գործարան: Դա հնարավորություն կտա խուսափելու պղնձի և ալյումինի չարդարացված տեղափոխումից դեպի երկրի հեռավոր շրջանները:

Բայց բանն այն է, որ մինչև այժմ ալյումին արտադրելու համար մենք հումքը ստանում ենք Ուրալից, որը չափազանց թանկ է նստում: Արդյունաբերության աշխատողների հետ միասին մեր գիտնականները հաջողությամբ լուծեցին այդ կարևոր ժողովրդա-տնտեսական խնդիրը: Ռեսպուբլիկայում հայտաբերված են նեֆելինային սիենիտների հանքավայրեր, որոնք պարունակում են ալյումինի հումք և որոնց պաշարներն անսպառ են: Գիտա-հետազոտական քրտնաջան աշխատանքի հետևանքով, մասնագետների մի խումբ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի թղթակից-անդամ ընկ. Մ. Մանվելյանի գլխավորությամբ ավարտել է նեֆելինային սիենիտներից կավահող ստանալու տեխնոլոգիայի մշակումը, ինչպես նաև այդ հանքավայրերի արդյունաբերական օգտագործման տնտեսական հաշիվները: Այժմ արդեն սկսված է Ախտայի սիենիտների հանքավայրում լեռնա-քիմիական կոմբինատի կառուցման նախագծի կազմումը:

Հետաքրքրական է նշել, որ սիենիտներից կավահող արտադրելիս զուգընթացաբար կարելի է ստանալ մեծ քանակությամբ պորտլանդ ցեմենտ, նատրիումի և կալցիումի մետասիլիկատներ, ամորֆսիլիկահող և պոտաշ: Նախատեսված է ժողովրդական տնտեսության մեջ արդեն իսկ լայնորեն կիրառվող այս նյութերից կազմակերպել բյուրեղի, բարձրորակ ներկերի և ուրիշ այլ նյութերի արտադրություն:

Հայտնի է, որ մեր ռեսպուբլիկան հարուստ է աղի խոշոր հանքերով, որ երկրաբանները հայտնաբերել են դեռևս 1952 թվականին: Աղից կարելի է ստանալ ավելի քան հարյուր զանազան քիմիական նյութեր: Սկսված է և 1958 թվականին շարունակվում է Ավանի աղահանքերի շինարարությունը, որը տարեկան 300 հազար տոննա աղ տալու կարողություն է ունենալու: Նախատեսվում է հետագայում կառուցել աղի վերամշակման և քիմիական խոշոր ձեռնարկություններ՝ կալցիացված և կերակրի սոդայի արտադրության համար:

Լեռնա-հանքային արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի արագաթափ աճի մասին է վկայում այն փաստը, որ արդյունաբերության այդ



ճյուղերը այս տարի 9 անգամ ավելի շատ արտադրանք են տալու, քան 1945 թվականին:

Հայկական ՍՍՌ տերիտորիայում հայտնի են ավելի քան 40 երկաթի հանքավայրեր ու դրսևորումներ, որոնց թվին են պատկանում հիմնականում Սուդաղյանի (Ախտայի շրջան), Կապուտանի (Կոտայքի շրջան), Հաղարծնի (Դիլիջանի շրջան), Կողբի (Նոյեմբերյանի շրջան), ինչպես նաև Ղափանի, Մեղրու, Ստեփանավանի և Ազիզբեկովի շրջանների հանքավայրերը, բայց այդ հանքավայրերից մի քանիսը դեռևս արդյունաբերական նշանակություն չեն ստացել, ուրիշները դեռ բավական ուսումնասիրված չեն: Այնինչ երկաթի բացակայությունը զգալի չափով ազդում է արդյունաբերության մի շարք կարևոր ճյուղերի զարգացման վրա, խոշոր դժվարություններ է ստեղծում արդեն իսկ զարգացած այնպիսի ճյուղերին մետաղ մատակարարելուն, ինչպիսիք են, օրինակ, մեքենաշինությունը և ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության այլ ճյուղեր: Վերջերս ռեսպուբլիկայի երկրաբանները հայտաբերել են երկաթահանքի խոշոր հանքավայր՝ երկաթի հարուստ պարունակությամբ: Նախնական հաշիվների համաձայն Սվարանցի հանքավայրի (Գորիսի շրջան) պաշարները կազմում են ավելի քան 200 միլիոն տոննա հանքանյութ, որը կարող է հուսալի բազա հանդիսանալ ռեսպուբլիկայում արդյունաբերական նոր ճյուղի՝ սև մետալուրգիայի ստեղծման համար:

Մեր տնտեսական շրջանի համար ժողովրդատնտեսական խոշոր նշանակություն ունեն հրաբխային ծագում ունեցող շինանյութերը: Գույնզգույն տուֆերը, բազալտը, մարմարը, պեմզան, որոնք հայտնի են մեր ռեսպուբլիկայի սահմաններից էլ դուրս, մեծ տարածում են գտել նաև եղբայրական Ադրբեջանի և Վրաստանի ռեսպուբլիկաներում: Արարատի և Արզաքյանդի բազմագույն մարմարով են երեսապատված աշխարհիս ամենագեղեցիկ մետրոպոլիտենի՝ Մոսկվայի մետրոպոլիտենի մի քանի կայարանները: Պեմզայի հրաբխային շլաքների և տուֆի մնացորդների բազայի վրա հզոր ձեռնարկություններ են կառուցվում արդյունաբերական ու բնակարանային շինարարության համար հավաքովի երկաթբետոնային կոնստրուկցիաներ պատրաստելու նպատակով: Բայց այդ ոչ հանքային օգտակար հանածոների կիրառման բնագավառը սրանով չի սահմանափակվում: Պեմզան, օրինակ, օգտագործվում է հղկման համար՝ տեքստիլ, փայտամշակման ու մետաղամշակման արդյունաբերության մեջ, ցեմենտի արտադրության մեջ, որպես ջերմամեկուսիչ լիցք՝ մի շարք քիմիական ձեռնարկություններում և այլ ճյուղերում:

Ներկայումս ռեսպուբլիկայի պարտիական ու տնտեսական օրգանները բոլոր միջոցները ձեռք են առնում զգալիորեն ավելացնելու տուֆի, պեմզայի, բազալտի հանույթը այն հաշվով, որ ապահովվի նաև Կրասնոդարի ու Ստավրոպոլի երկրամասերի և երկրի մի շարք այլ տնտեսական շրջանների պահանջը:

Զանազան շինանյութերի անսպառ պաշարների առկայությունը հնարավորություն կտա հաջողությամբ իրականացնելու այն միջոցառումները, որ նշված են ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշման մեջ՝ բնակարանային շինարարության զարգացման վերաբերյալ:

Արժեքավոր հանքային հումք են հանդիսանում կրաքարերը, որոնցով նույնպես հարուստ է մեր ռեսպուբլիկան: Եղած հանքավայրերից շատերն արդեն լայնորեն օգտագործվում են: Այսպես, Արարատի բարձրորակ կրա-

քարերի բազայի վրա ստեղծված են քիմիական արդյունաբերության մի շարք
խոշոր ձեռնարկություններ։ Սոլորական կրաքարից արտադրվում է կալցիումի
կարբիդ, որը կիրառվում է արդյունաբերության ու շինարարության մեջ,
օգտագործվում է որպես հումք՝ ամենաբազմապիսի քիմիական նյութեր ու
իրեր ստանալու համար, ինչպիսիք են՝ սինթետիկ կաուչուկը, պարարտանյու-
թերը, թունաքիմիկատները, քացախաթթուն, որ անհրաժեշտ է արհեստական
մետաքս պատրաստելու համար, բարձրորակ ներկեր և ուրիշ շատ արժեքա-
վոր նյութեր։ Հենց միայն վերջին տարիներս Հայաստանի քիմիական ար-
դյունաբերության արտադրանքը հիմնականում տեղական հումքի բազայի
վրա աճել է համարյա 7 անգամ։

Հայկական ՍՍՌ-ն մեր Միության այն ռեսպուբլիկաներից մեկն է, որտեղ
առավել սուր է զգացվում վառելանյութի պակասը, որի ծախսումը զգալի
չափերի է հասնում։ Բավական է ասել, որ 1960 թվականին Երևանի արդյու-
նաբերական ձեռնարկություններին անհրաժեշտ կլինի մոտ 750 հազար տոննա
պայմանական վառելանյութ։ Ուստի և միութենական կառավարության որո-
շումը՝ Ղարադաղ—Աղստաֆա—Երևան գազամուղ կառուցելու վերաբերյալ,
Հայկական ՍՍՌ-ի համար խիստ կարևոր միջոցառում է հանդիսանում։ Ղա-
րադաղի գազի ստացումը լրջորեն կբարելավի ռեսպուբլիկայի վառելանյու-
թային բալանսը, պայմաններ կստեղծի գործող ձեռնարկությունների արտա-
դրողական կարողությունների լրիվ օգտագործման և արդյունաբերական ար-
տադրանքի հետագա զարգացման համար։ Ներկայումս ռեսպուբլիկական
նախագծային բյուրոն երկրաբանական հետազոտություններ և տոպոգրա-
ֆիական որոնումներ է անում գազամուղի ծրագծի վրա՝ Աղստաֆա—Երևան
տեղամասում։ Միաժամանակ 1958 թվականին Հայկական երկրաբանական
վարչությունը շարունակելու է նավթի ու գազի որոնումները մեր ռեսպուբլի-
կայի տերիտորիայի առավել հեռանկարային տեղամասերում։

Տնտեսական շինարարության, մեր արդյունաբերության ու գյուղատըն-
տեսության զարգացման, սոցիալիստական պետության հզորության ամրա-
պնդման և ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման, արտադրության
կազմակերպման և ժողովրդական տնտեսության կառավարման ձևերի կատա-
րելագործման հարցերը միշտ էլ գտնվել ու գտնվում են Կոմունիստական
պարտիայի ուշադրության կենտրոնում։ Ստեղծագործաբար զարգացնելով
լենինյան դրույթը սոցիալիստական տնտեսավարության սկզբունքների մա-
սին՝ մեր պարտիան վերջին տարիներս մի շարք կարևոր միջոցառումներ է
իրականացրել ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու
ուղղությամբ։

Արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը,
որ իրականացվեց ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումներին
համապատասխան, ապահովեց ղեկավարության մոտեցումը անմիջականորեն
ձեռնարկություններին և բանվորներին, ծառայողներին ու ինժեներատեխնի-
կական աշխատողներին, ավելի լայնորեն մասնակից դարձրեց ձեռնարկու-
թյան կյանքի բոլոր հարցերի լուծմանը, բարձրացրեց պարտիական կազմա-
կերպությունների պատասխանատվությունը տնտեսության զարգացման
համար։

Ժողտնտխորհ ստեղծելուց հետո շատ ժամանակ չի անցել, բայց արդեն
նրա աշխատանքի առաջին արդյունքները համոզիչ կերպով ցույց են տալիս,



թե ուքան բեղմնավոր բան եղավ արդյունաբերության ու շինարարության
կառավարման վերակառուցումը։ Ձեռնարկությունների ու կառույցների ղե-
կավարման ծանրության կենտրոնը անմիջականորեն տեղերը փոխադրելը,
գերատեսչական արգելակների վերացումը հնարավորություն են տալիս օպե-
րատիվ կերպով լուծելու շատ հարցեր, որը և նպաստում է ռեզերվների մո-
բիլիզացիային, արտադրության ծավալի ավելացմանը, արտադրանքի ինքն-
արժեքի իջեցմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։
Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը 1957 թվականի համախառն ար-
տադրանքի պլանը կատարեց 102 տոկոսով։ Ձեռնարկությունները առաջա-
դրանքից ավելի 134 միլիոն ռուբլու լրացուցիչ արտադրանք տվին։

Անցյալ տնտեսական տարին հաջողությամբ ավարտեցին նաև ռեսպուբ-
լիկայի լեռնահանքային արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի
աշխատողները։

Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի գունավոր մետալուրգիայի և լեռնահան-
քային արդյունաբերության վարչության ձեռնարկությունները 1957 թվականի
համախառն արտադրանքի պլանը կատարել են 108,3 տոկոսով։ Այդ ձեռնար-
կությունները պլանից դուրս երկրին տվել են 29 միլիոն ռուբլու արտադրանք։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ ներկայումս
մշակվում է ՍՍՌՄ 1959—1965 թվականների ժողովրդական տնտեսության
հեռանկարային պլան։ Հեռանկարային պլանի նախագծով նախատեսվում է
լայնորեն յուրացնել մեր հայրենիքի բնական հարստությունները։

Այդ պլանին համապատասխան՝ խոշոր ու պատասխանատու դեր ունեն
խաղալու ռեսպուբլիկայի ժողտնտխորհը, լեռնահանքային արդյունաբերու-
թյան ու գունավոր մետալուրգիայի ճյուղային վարչությունը և տեղական
պարտիական կազմակերպությունները։ Մասսաների աճող ակտիվությունը,
նրանց խոր շահագրգռվածությունը սոցիալիստական էկոնոմիկայի հետագա
զարգացման գործում առանձնապես ցայտուն արտահայտվում են արտա-
դրության զարգացման հեռանկարային հարցերի քննարկման ժամանակ։ Այդ
գործին մեծ ուշադրություն դարձրին նաև ռեսպուբլիկայի արդյունաբերական
շրջանների պարտիական կոնֆերանսները։

Տնտեսության կառավարման սովետական սիստեմը, սոցիալիստական
պլանավորման կազմակերպումը կառուցվում է պետության ամբողջ տնտե-
սական-կազմակերպչական գործունեության մեջ աշխատավոր մասսաների
ակտիվ մասնակցության վրա։ Կոմունիստական պարտիան հետևողականորեն
կենսագործում է Վ. Ի. Լենինի այն ցուցումները, որ անհրաժեշտ է «...բան-
վոր դասակարգին ու աշխատավոր մասսաներին ավելի ու ավելի լայնորեն
ներգրավել տնտեսության ամբողջ շինարարության մեջ, ծանոթացնելով նրանց
տնտեսական կյանքի բոլոր կողմերին, արդյունաբերական աշխատանքի բո-
լոր կողմերին, սկսած հումքի մթերումից մինչև արտադրանքի իրացումը, և
տալով հետզհետե ավելի կոնկրետ պատկերացում, թե սոցիալիստական
տնտեսության միասնական պետպլանի մասին և թե այդ պլանի իրագործ-
ման մեջ բանվոր դասակարգի ու գյուղացու գործնական շահագրգռվածու-
թյան մասին» (Երկեր, հ. 33, էջ 220)։ Ժողովրդական տնտեսության խոր-
հուրդը պետք է ավելի ու ավելի լայնորեն հաշվի առնի մասսաների ակ-
տիվությունը, նրանց ներգրավի ռեսպուբլիկայի արդյունաբերության ու հում-
քային բազայի զարգացման հեռանկարային հարցերի լուծման գործի մեջ։

Հիանալի են Հայաստանի ժողովրդական տնտեսության հետագա զար-
գացման հեռանկարները: Շարք են մտնելու նորանոր էլեկտրակայաններ,
գործարաններ ու ֆաբրիկաներ, մեր արդյունաբերությունը կյուրացնի արտա-
դրանքի նորանոր կարևոր տեսակներ: Մեր քաղաքներում ու գյուղերում երև-
վան կգան հազարավոր նոր ու գեղեցիկ տներ, հասարակական շենքեր, ա-
կումբներ: Թեթև ու սննդի արդյունաբերությունը ավելի մեծ չափերով կար-
տադրի ժողովրդական սպառման ապրանքներ ու սննդամթերքներ: ՍՄԿՊ
Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման հեռանկարային պլանի մասին» որոշման մեջ ասված է.
«...հեռանկարային պլանի նախագիծը կազմելիս ելնել գլխավոր խնդրից, այն
է՝ ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա հզոր
վերելքը՝ արտադրության միջոցների արտադրման առավել զարգացման բա-
զայի վրա, որպեսզի նոր խոշոր առաջընթաց քայլ իրականացվի ՍՍՌՄ գըլ-
խավոր տնտեսական խնդրի լուծման գործում, այն է՝ պատմականորեն կարճ
ժամանակամիջոցում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրանքի
արտադրությամբ հասնել ու անցնել առավել զարգացած կապիտալիստական
երկրներից: Երկրի հանրային հարստության աճման հիման վրա ապահովել
սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մա-
կարդակի հետագա բարձրացումը»: Այս խնդրի լուծման գործում հսկայական
դեր է խաղում արդյունաբերության հումքային բազայի զարգացումը և նրա
կոմպլեքսային օգտագործումը գիտության ու տեխնիկայի նորագույն նվա-
ճումների կիրառման միջոցով:

Էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա բուռն զարգացման վերաբերյալ
Կոմունիստական պարտիայի նախագծած հեռանկարները և ապագայի նկատ-
մամբ անսասան վստահությունը ռեսպուբլիկայի աշխատավորներին թևավո-
րում են Կոմունիստական շինարարության գործում նորանոր սխրագործու-
թյուններ կատարելու:

---

# ԱՐՀԵՍՏԱԳՈՐԾԱԿԱՆ ԿՈՈՊԵՐԱՑԻԱՅԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՌԹԻՎ

Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Մեր երկրի արհեստագործական կոոպերացիան զարգացման մեծ ուղի է
անցել: Ստեղծվելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից
հետո, մանր ապրանքային արտադրության բազայի վրա, այն մեծ դեր խա-
ղաց տնտեսությունների միավորման ու նրանց աշխատանքային գործունեու-
թյունը սոցիալիստական հունով առաջ մղելու գործում:

Սովետական պետությունը կոոպերատիվներում միավորեց հարյուր հա-
զարավոր տնայնագործների, տնայնագործական արտադրանքի պատվերներ
տվեց նրանց և այդպիսով ստեղծեց տնտեսական մի խոշոր օրգանիզմ, որը
հինգերորդ հնգամյակի վերջում արդեն երկրին տալիս էր արդյունաբերական
ամբողջ արտադրանքի 6 տոկոսը:

Արհեստագործական կոոպերացիան զգալի դեր խաղաց նաև Հայկական
ՍՍՌ-ում: Թեև արհեստագործական կոոպերացիայի կազմակերպման միջո-
ցառումները Հայաստանում սկսեցին իրագործվել 1924—1925 թթ., սակայն
միայն 1927 թվականից է սկսվում տնայնագործների մասսայական ներգրա-
վումը արհեստագործական կոոպերատիվների մեջ: Արդեն 1926/27 թթ. տըն-
տեսական տարում արհեստագործական կոոպերատիվների արտադրանքը կազ-
մում էր մանր արդյունաբերության արտադրանքի 34 տոկոսը:

Որպեսզի պատկերացնենք, թե արհեստագործական կոոպերացիան իր
ստեղծման շրջանում ինչպիսի սոցիալական բազա ուներ, բավական է բերել
միայն հետևյալ տեղեկությունները. 1926 թվականին Հայաստանում մանր
արհեստներում զբաղված էր 13486 մարդ: Այդ թվից
միայնակ տնայնագործական տնտեսությունները կազմում էին 70,4 տոկոսը, վարձու բանվորներ
օգտագործողները՝ 4,8 տոկոսը, ընտանիքի անդամների օժանդակությունն օգտա-
գործողները՝ 5,6 տոկոսը, ընտանիքի օժանդակող անդամները՝ 7,2 տոկոսը և
վարձու բանվորները՝ 12 տոկոսը:

Տնայնագործների զգալի մասը անմիջականորեն ընդգրկվեց նոր ստեղծ-
վող ֆաբրիկաներում ու գործարաններում, իսկ հիմնական մասը միավորվեց
կոոպերատիվ կազմակերպությունների մեջ: Հետագայում մեր ռեսպուբլիկայի
արհեստագործական կոոպերացիան համալրվեց նաև հայրենադարձ հայերով:

Առաջին հնգամյակի վերջում Հայաստանի արհեստագործական կոոպե-
րացիայում ընդգրկված բանվորների թիվը կազմում էր 6973 մարդ, այսինքն՝
խոշոր արդյունաբերության բանվորների 46 տոկոսը: Հնգամյակի ընթացքում
արդյունաբերական արտադրության ծավալը ռեսպուբլիկայում աճեց 4,4 ան-

գամ, իսկ արհեստագործական կոոպերացիայի արտադրանքը՝ մոտ 4 ան-
գամ։ 1926/27 թթ. համեմատությամբ, 1940 թվականին նրա արտադրության
ծավալը աճեց մոտ 20 անգամ։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին արհեստագործական կոո-
պերացիան արտադրության անկում չունեցավ և իր դրական դերը խաղաց
ռազմաճակատը անհրաժեշտ իրերով, իսկ բնակչությանը լայն սպառման ապ-
րանքներով ապահովելու գործում։

Հետպատերազմյան առաջին տարիներին արհեստագործական կոոպերա-
ցիան շարունակում էր աճել։ Սակայն, վերջին շրջանում, արագ կերպով զար-
գացող պետական արդյունաբերության ազդեցության տակ, կոոպերացիայի
աճի տեմպերը դանդաղեցին։ Եթե ռեսպուբլիկայի ամբողջ արդյունաբերու-
թյունը, 1940 թվականի համեմատությամբ, 1953 թվականին աճել է 3,7 ան-
գամ, 1955 թվականին՝ 4,8 անգամ և 1956 թվականին՝ 5,2 անգամ, ապա
արդյունաբերության արտադրության մեջ արհեստագործական կոոպերացիայի
տեսակարար կշիռը 1940 թվականի 8,9 տոկոսի փոխարեն 1955 թվականին
կազմեց 7,4 տոկոս, իսկ 1956 թվականին՝ միայն 4 տոկոս։

Այս պրոցեսն անտարակույս պրոգրեսիվ է և արտացոլում է սոցիալ-
տնտեսական միանգամայն օրինաչափ այն տեղաշարժերը, որոնք կատարվում
են ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ Հայկական ՍՍՌ-ում։

Սոցիալիզմի ժամանակ արդյունաբերական կոոպերացիայի, ինչպես նաև
սեփականության կոոպերատիվ յուրաքանչյուր ձևի զարգացման առանձնա-
հատկությունը հենց այն է, որ բարձրագույն մակարդակի հասնելով, այն
որոշ ստադիայում, սեփականության համաժողովրդական ձևի զարգացման
ազդեցության տակ սկսում է տեղի տալ ու աստիճանաբար սահմանափակվել։

Տեխնիկական պրոգրեսի, արտադրության ու աշխատանքի կազմակերպ-
ման ուղիները որոշելիս ՍՄԿՊ Կենտկոմի հուլիսյան պլենումը անհրաժեշտ
գտավ վերակառուցել արհեստագործական կոոպերացիան, նախատեսելով,
որ այն արտելները, որոնք դադարել են կոոպերատիվ արտադրության բնույթ
կրելուց, պետք է հանձնվեն պետական արդյունաբերությանը։ Պլենումը նաև
ընդգծեց արդյունաբերական կոոպերացիայի արտադրանքի որակի բարձրաց-
ման և ինքնարժեքի իջեցման ապահովման անհրաժեշտությունը։

ՍՄԿՊ XX համագումարը լայն սպառման ապրանքների արտադրության
աճի ու նրանց որակի բարձրացման խնդիրների հետ մեկտեղ խնդիր դրեց
լայնորեն զարգացնել ժողովրդական գեղարվեստական արհեստները և զգալի-
րեն ընդարձակել բնակչության կենցաղային կարիքների սպասարկման ձեռ-
նարկությունների ցանցը։

Մինիստրների Սովետի 1956 թվականի ապրիլի 14-ի որոշմամբ սահման-
վեցին արհկոոպերացիայի վերակառուցման կոնկրետ ուղիները։ Վերակա-
ռուցման հիմքում դրվեցին հետևյալ սկզբունքները. ա) առավել խոշոր մեքե-
նայացված ձեռնարկությունները հանձնել համապատասխան ճյուղերի ար-
դյունաբերական ռեսպուբլիկական մինիստրություններին. բ) ներկա ժամա-
նակաշրջանում միութենական ռեսպուբլիկաների արհեստագործական կոո-
պերացիայի կազմում պահպանել հաշմանդամների՝ բոլոր ճյուղերի արտել-
ները, հիմնականում տնային աշխատանք կիրառող արտելները, ժողովրդա-
կան գեղարվեստական արհեստների և այն արտելները, որոնք ըստ իրենց



արտադրական բնույթի առայժմ չեն կարող հանձնվել պետական օրգաններին։

Պետական արդյունաբերությունն այժմ խիստ առաջ է անցել արհեստա-
գործական կոոպերացիայից և՛ իր արտադրության տեխնիկայով, և՛, հետևա-
բար, աշխատանքի ծախսման ցուցանիշներով։ ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետա-
կան կառավարության առաջադրած խնդիրների կատարումը արտադրության
պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման բնագավա-
ռում արագ թափով առաջ են մղում պետական արդյունաբերության ձեռնար-
կությունները։ Եթե արհեստագործական կոոպերացիան չենթարկվեր կազմա-
կերպչական այնպիսի վերակառուցման, որը պայմաններ նախապատրաստեր
նրա ձեռնարկությունների տեխնիկական առաջխաղացման համար, ապա
տարբերությունը պետական արդյունաբերության և արհեստագործական կոո-
պերացիայի միջև՝ տեխնիկայի և աշխատանքի ծախսման տեսակետից ավելի
կմեծանար։

Հայաստանի արհեստագործական կոոպերացիայի սիստեմը վերակառու-
ցելուց հետո նրա ձեռնարկությունները կարելի է ստորաբաժանել մոտավո-
րապես 4 խմբի. գեղարվեստական արհեստներ, կենցաղային սպասարկման,
արհեստագործական կոոպերացիային քիչ թե շատ երկար ժամանակով ամ-
րացված մասսայական արտադրություններ և այն ձեռնարկություններն ու
արտադրությունները, որոնք հանձնվելու են պետական արդյունաբերությանը։
Այդ խմբերից յուրաքանչյուրը տարբեր ուղիներ և մոտեցում է պահանջում
տեխնիկական պրոգրեսի խնդիրները լուծելու բնագավառում։ Դա պայմանա-
վորված է նրանցից յուրաքանչյուրի արտադրական կոնկրետ պայմաններով։

Զուտ գեղարվեստական արհեստներում (հատկապես գորգագործության
մեջ) տեխնիկական պրոգրեսի հնարավորությունները համեմատաբար սահ-
մանափակ են։ Այստեղ առաջիկայում հարկավոր է ընթանալ գլխավորա-
պես արտադրությունը կատարելագործելու և աշխատանքն ավելի լավ կազ-
մակերպելու ուղիով։ Դրան պետք է նախորդի անցումը տնային աշխատան-
քից արհեստանոցներին։

Կենցաղային սպասարկումը տեխնիկան օգտագործելու հնարավորու-
թյունների տեսակետից շատ ավելի նպաստավոր պայմանների մեջ է գտնը-
վում, քան գեղարվեստական արհեստները։ Կենցաղային սպասարկման ար-
տադրական պրոցեսների վերակառուցումը պետք է կատարվի այնպես, որ-
պեսզի զուտ արտադրությունը անջատվի պատվերների ընդունման կետերից,
արտադրությունը համակենտրոնացվի և հասցվի մասսայական արտադրանք
տվող մանր ձեռնարկությունների չափերի։ Այդպիսի վերակառուցումը հնա-
րավորություն կստեղծի լայնորեն կիրառել մեքենայացումը և, նույնիսկ, որոշ
պրոցեսների կոնվեյերացումը։

Արհեստագործական կոոպերացիայի ցանցում պահպանվող մասսայա-
կան արտադրության ձեռնարկությունները՝ ներքին կարիքների համար կիսա-
ֆաբրիկատներ ու նյութեր թողարկող, ինչպես նաև այլ գերատեսչությունների
ու մինիստրությունների կողմից չթողարկվող նոր տեսակների արտադրանք
տվող ձեռնարկությունները բոլոր հնարավորություններն ունեն՝ կանգնելու
տեխնիկական պրոգրեսի ուղիների վրա, եւ չմնալու պետական արդյունա-
բերության ձեռնարկություններից։ Հետագայում այդ ձեռնարկությունները
նույնպես հնարավոր կլինի վերածել պետականի։ Դրանք առ ժամանակ կը-

*մնան արհեստագործական կոոպերացիայի սիստեմում, քանի որ կապված են նրա արտադրության հետ։*

*Պետական արդյունաբերությանը հանձնվելիք արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունների տեխնիկական զարգացումը պետք է համընթաց լինի ճյուղային միավորումների զարգացմանը, որը թույլ կտա ո՛չ միայն կարճ ժամանակամիջոցում հասարակական աշխատանքի ծախսման տեսակետից հավասարվելու պետական արդյունաբերության այժմյան մակարդակին, այլև հետագայում զարգանալու առաջավոր ձեռնարկություններին համընթաց։*

*Սակայն պետական արդյունաբերությանը հանձնվող տարբեր ձեռնարկությունների տեխնիկական զարգացման պրոցեսը չի կարող միանման լինել։ Նրանց ճնշող մեծամասնության տեխնիկայի մակարդակը այնպիսին է, որ հնարավոր չէ բոլոր դեպքերում կատարելագործում կամ մոդեռնացում կիրառել։ Հետևապես անհրաժեշտ է առաջին հերթին լուծել այսօրվա տեխնիկայի մակարդակին համապատասխան սարքավորումներ արմատավորելու հարցը։ Որոշ ձեռնարկություններում արտադրական հիմնական ֆոնդերի ոչ ակտիվ մասը չի բավարարի տեխնիկական պրոգրեսի պահանջներին։ Դրա համար ճյուղային միավորումները այս խնդիրը պետք է լուծեն հիմնականում վերակառուցման ու նոր շինարարության միջոցով, որպեսզի ճյուղի ներսում հասարակական աշխատանքի ծախսման մեծ տարբերություններ չառաջանան։*

*Այնուհետև, պետք է նշել, որ հնարավոր է արհեստագործական կոոպերացիայի հանձնվող ձեռնարկությունների մի մասը ուղղակի միացնել համապատասխան պետական ձեռնարկություններին, եթե վերջիններս ունեն ազատ կարողություններ և կարող են ռացիոնալ օգտագործել նրանց կադրերն ու հումույթը։*

*Սակայն արհեստագործական կոոպերացիայի վերակառուցման նշանակությունը չի սահմանափակվում միայն տեխնիկական պրոգրեսի խնդիրներով և դուրս է գալիս այդ սահմաններից, թեև հիմնականում կապված է տեխնիկական պրոգրեսի հետ։*

*1956 թվականին կատարված արհեստագործական կոոպերացիայի վերակառուցման հետևանքով նրա բազան էական փոփոխությունների ենթարկվեց։ Վերակառուցումից անմիջապես հետո արհեստագործական կոոպերացիայի հիմնական բոլոր ֆոնդերի արժեքը կազմեց մինչև վերակառուցումն ունեցած ֆոնդերի արժեքի 45,8 տոկոսը, իսկ միայն արդյունաբերական հիմնական ֆոնդերինը՝ 41,9 տոկոսը։ Արտելների անդամների ավելի քան մեկ երրորդ մասը պարտիայի ու կառավարության որոշումներին համապատասխան ցանկություն հայտնեց իրենց խմբական սեփականությամբ հանդերձ աշխատելու պետական արդյունաբերության մեջ։*

*Սեփականության կոոպերատիվ ձևի վերափոխումը պետականի, միայն արտելների անդամների ցանկությամբ չէր պայմանավորված։ Վերափոխման ուղղությամբ նպաստավոր պայմաններ ստեղծելու համար անհրաժեշտ էր նաև քաղաքական դաստիարակչական լայն աշխատանք ծավալել կոոպերացիայի անդամների շրջանում։ Այստեղ հիմնականն այն էր, որպեսզի մշտական պայքար ծավալվեր կոոպերացիայի մեջ մասնավորի ներթափանցման և կոոպերատիվի ցուցանակը անձնական շահերի համար օգտագործելու դեմ, վերացվեին կամ մինիմումի հասցվեին նման երևույթների կոպիտ արտահայտու-*



*թյունները։ Պայքարն այդ երևույթների դեմ ծավալվում էր ո՛չ միայն վերևից, այլև ներքևից, հենց կոոպերատիվ կազմակերպությունների կողմից։*

*Արհեստագործական կոոպերացիայի զտումը մեծ դեր է խաղում արտելների անդամներին աշխատանքի նկատմամբ սոցիալիստական ոգով դաստիարակելու և կոոպերատիվ ձեռնարկությունները պետականի վերափոխելու գործում։*

*Սակայն «աշխատանքը համապետական մասշտաբով կենտրոնացնելու» (Լենին) համար պայմաններ ստեղծելու գործում վճռականը աշխատանքի արտադրողականության բարձրացումն է՝ արտադրողական ուժերի զարգացման բազայի վրա։*

*ՍՄԿԿ Կենտկոմի 1955 թվականի հուլիսյան պլենումի որոշումների համաձայն արհեստագործական կոոպերացիայի վերակառուցումը զուգակցվում է ձեռնարկությունները մասսայականորեն պետական արդյունաբերությանը հանձնելու հետ։ Հանձնման պայմանը ու գլխավոր հատկանիշն այն է, որ կոոպերատիվ ձեռնարկությունները կորցնում են իրենց կոոպերատիվ բնույթը։ Հայտնի է, որ արդյունաբերության մեջ արտադրության կոոպերատիվ բնույթը պայմանավորված է ա) կոոպերատիվ մտած անձանց սեփականություն եղած ու ժամանակին հանրայնացված արտադրության միջոցների խմբական սեփականությամբ և բ) տվյալ դեպքում նաև մշակվող նյութի բնույթով (պետական, ֆոնդային հումք, թափթփուկներ, ինքնամթերում և այլն)։*

*Տնայնագործների կոոպերացումը և նրանց աշխատանքի միջոցների հանրայնացումը վաղուց է կատարվել։ Հետագայում աշխատանքի միջոցները փոխանակվեցին դրամական փայավճարներով, որոնք վերադարձվում էին կոոպերատիվի անդամին՝ կոոպերացիայից դուրս գալու, կամ կոոպերատիվ ձեռնարկությունը պետականի վերածվելու դեպքում։*

*Հանրայնացված աշխատանքի միջոցներն արդեն վաղուց սպառվել էին թե՛ բարոյապես, թե՛ ֆիզիկապես։ Սակայն խմբական կոոպերատիվ սեփականությունն իր մեջ ընդգրկում է նաև այն բոլորը, ինչ ստեղծել և ձեռք է բերել տվյալ կոոպերատիվը՝ շենքեր, սարքավորում, տրանսպորտային միջոցներ, հումքի և պատրաստի արտադրանքի մնացորդներ և այլն։*

*Պետք է նշել, որ թեև արհեստագործական և գյուղատնտեսական արտելի անդամները հավասար իրավունքներ ունեն կոոպերատիվ սեփականության նկատմամբ, սակայն քանի որ պետական տնտեսությունը տարբեր դեր ունի և տարբեր չափերով է կապված արհեստագործական կամ գյուղատնտեսական կոոպերացիայի (կոլտնտեսության) հետ, ապա և տարբեր ձևով են արտահայտվում նրանց իրավունքները իրենց արտադրանքի արդյունքի նկատմամբ։ Տարբեր են նաև աշխատանքի կազմակերպման ձևերն ու մեթոդները։*

*Արհեստագործական կոոպերացիան չափազանց սերտ կապերով է կապված պետական տնտեսության հետ՝ հումքի ու նյութերի հայթայթման տեսակետից։ Արհեստագործական կոոպերացիան ամբողջապես աշխատում է պետական հումքով ու նյութերով։ Այն ավելի ու ավելի է մերձենում պետական արդյունաբերությանը և հետզհետե ավելի աննշան են դառնում նրանց տարբերությունները։*

*Այդ տեսակետից արհեստագործական կոոպերացիան ավելի պրոգրեսիվ է, քան գյուղատնտեսական կոոպերացիան։ Դա արտահայտվում է մի շարք գործոններով և, առաջին հերթին, այն իրավունքով, որ ունեն կոլտնտեսու-*

*թյան անդամները և արտելի անդամներն իրենց աշխատանքի արդյունքն օգտագործելու հարցում։ Պետական հանձնումները ու պարտավորությունները կատարելուց հետո կոլտնտեսականը շուկայում հանդես է գալիս որպես վաճառող։ Արհեստագործական արտելի անդամը այդ իրավունքից չի օգտվում։ Մի քանի տարի առաջ գոյություն ուներ մի օրենք, ըստ որի արդյունաբերական ապրանքների պակասի պայմաններում արհեստագործական կոոպերացիայի արտելը իրավունք ուներ իր արտադրանքի 5 տոկոսը իրացնել իր հայեցողությամբ։ Սակայն այդ օրենքն այժմ կորցրել է իր նշանակությունը և վերացված է։ Ավելին, արհեստագործական կոոպերացիայի արտադրության իրերի վաճառքն ամբողջովին հանձնված է պետական առևտրի կազմակերպություններին։*

*Աշխատանքի կազմակերպման ու աշխատավարձի ձևերի տեսակետից արհեստագործական արտելները, հատկապես խոշոր արտելները, այժմ ավելի մոտ են կանգնած պետական արդյունաբերական ձեռնարկություններին։*

*Վերոհիշյալ պայմաններն ու գործոնները այնքան են մոտեցրել արհեստագործական կոոպերացիան պետական արդյունաբերությանը, որ կոոպերատիվ ձեռնարկությունների վերափոխումը պետականի դարձել է անհրաժեշտություն։*

*Այդպիսի վերակառուցման հիմքում ընկած են այն փոփոխությունները, որոնք կատարվում են արհեստագործական կոոպերացիայի արտադրողական ուժերի մեջ։ Ստեղծված են քիչ թե շատ ժամանակակից տեխնիկայով հագեցված, որակյալ բանվորական ուժ ունեցող ձեռնարկություններ, որոնք դրանով իսկ մերձենում են պետական արդյունաբերության ոչ մեծ ձեռնարկություններին։ Դրա հետևանքով սեփականության կոոպերատիվ ձևը իրեն հատուկ արտադրական հարաբերություններով դադարում է համապատասխանել ձեռնարկությունների կազմակերպական-տեխնիկական մակարդակին։*

*Արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկությունների կազմակերպական-տեխնիկական մակարդակը արտադրական հարաբերություններին համապատասխանեցնելու համար անհրաժեշտ է կոոպերատիվ ձեռնարկությունները մասսայականորեն հանձնել պետական արդյունաբերությանը, այսինքն՝ խմբական սեփականությունը վերածել համաժողովրդական սեփականության։*

*ՍՄԿՊ Կենտկոմի 1955 թվականի հուլիսյան պլենումի որոշումների հիման վրա կատարված արհեստագործական կոոպերացիայի վերակառուցումը մի կողմից լուծում է նրա տեխնիկական պրոգրեսի, արտադրության պրոբլեմները, իսկ մյուս կողմից՝ սոցիալ-տնտեսական վիթխարի նշանակություն ունեցող մի ակտ է, որն արագացնում է արդյունաբերության մեջ կոոպերատիվ սեփականությունը համաժողովրդական սեփականության վերափոխելու պրոցեսը և այդ գործում նոր էտապ է հանդիսանում։*

*Սակայն սեփականության կոոպերատիվ ձևը համաժողովրդական սեփականության վերափոխելու պրոցեսի արագացումը դեռևս չի նշանակում դրա անհապաղ վերացում։ Այս իսկ տեսակետից վաղաժամ պետք է համարել որոշ ընկերների առաջարկները ՍՍՌՄ-ի և, մասնավորապես, Հայկական ՍՍՌ-ի արդյունաբերության մեջ կոոպերատիվ սեփականությունն անհապաղ վերացնելու մասին։*

---

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

*Ա. ՄԱՐԴՈՅԱՆ*

*Կոտայքի շրջանի պարտիական կազմակերպություններն իրենց աշխատանքը վերակառուցելով պարտիայի XX համագումարի որոշումներին համապատասխան, զգալի աշխատանք կատարեցին կոլտնտեսություններում եղած ներքին ռեզերվների հայտաբերման ու օգտագործման բնագավառում, որը վճռական դեր խաղաց գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում։*

*1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին կաթի արտադրությունը կոլտնտեսություններում ավելացավ 13,5 տոկոսով, կամ 3500 ցենտներով, բրդի արտադրությունը՝ 48 տոկոսով, կամ 306 ցենտներով, հացահատիկի արտադրությունը՝ 132,8 տոկոսով, կամ 50.225 ցենտներով, խոտի արտադրությունը՝ 170 տոկոսով, կամ 10.000 տոննայով, սիլոսինը՝ 105 տոկոսով, կամ 3700 տոննայով, ծղոտինը՝ 5500 տոննայով։*

*Եթե 1956 թվականին կոլտնտեսությունները յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածությունների դիմաց արտադրել էին 19,2 ցենտներ միս, 67,6 ցենտներ կաթ, 109 կիլոգրամ բուրդ, 1662 ձու, ապա 1957 թվականին մսի արտադրությունը հասավ 25,4 ցենտների, կաթինը՝ 90,2 ցենտների, բրդինը՝ 200 կիլոգրամի, ձվինը՝ 2292 հատի։*

*Լուրջ հաջողություններ ձեռք բերվեցին նաև գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ։ Այդ հաջողությունները կրկին ցույց տվին, թե եղած ռեզերվների խելացի օգտագործումը ինչպիսի մեծ օգուտ է տալիս հանրային տնտեսությանը։*

*Առաջին լուրջ ռեզերվը դա մարդկանց հետ կատարվող կազմակերպական, մասսայական-քաղաքական աշխատանքն է։ Հաշվի առնելով այդ, շրջանի կոլտնտեսությունների պարտիական կազմակերպություններն արմատապես բարելավեցին պարտիական քաղաքական ու կազմակերպական աշխատանքը և հասան այն բանին, որ զգալիորեն բարձրացավ կոլտնտեսականների աշխատանքային ակտիվությունը, և նրանք սկսեցին եռանդուն մասնակցություն ցուցաբերել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման համար մղվող պայքարին։ Բավական է ասել, որ նախորդ տարվա համեմատությամբ աշխօրերի մինիմումը չկատարող կոլտնտեսականների թիվը պակասեց 593-ով։ Ավելին, եթե 1956 թվականին շրջանի մասշտաբով ամեն մի աշխատունակ կոլտնտեսականի վաստակած աշխօրերը միջին հաշվով հասնում էին 204-ի, ապա 1957 թվականին դրանք հասան 229-ի։*

*Տարիներ շարունակ Կոտայքի շրջանի շատ կոլտնտեսություններում ցածր*

էր կովերի կաթնատվությունը, չէին կատարվում կաթի համախառն արտադրության առաջադրանքները։ Այդպես շարունակել հնարավոր չէր։

Պարտիայի շրջանային կոմիտեն կոլտնտեսությունների վարչություններին ու սկզբնական պարտիական կազմակերպություններին կոնկրետ օգնություն ցույց տվեց եղած հնարավորություններն ու ռեզերվներն արդյունավետ օգտագործելու միջոցով ավելացնելու կաթի արտադրությունը։ Կոլտնտեսություններում համապատասխան նախապատրաստական ու կազմակերպական աշխատանք կատարելուց հետո, 1956 թվականի կեսերից, սահմանվեց լրացուցիչ վարձատրության նոր կարգը, որն ավելի կատարելագործվեց 1957 թվականին։ Կոլտնտեսականների ընդհանուր ժողովների կողմից սահմանված կարգի համաձայն, պլանով նախատեսվածից ավելի ստացված կաթի 20—25 տոկոսը (տարբեր կոլտնտեսություններում տարբեր չափերով) տրվեց կաթի արտադրության գծով աշխատող կոլտնտեսականներին՝ իբրև պարգև-հավելում։ Այդ միջոցառումը կաթի արտադրության ավելացման գործում բարձրացրեց կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։ Եթե 1956 թվականի ընթացքում կոլտնտեսություններում մեկ ֆուրաժային կովից ստացվել էր 1184 կիլոգրամ կաթ, ապա 1957 թվականին ստացվեց 1457 կիլոգրամ։ Շատ կոլտնտեսություններում ֆուրաժային կովի կաթնատվությունը հասավ 1670—2545 կիլոգրամի։

Մեկ ուրիշ օրինակ։ Վերջին ավելի քան 15 տարվա ընթացքում Կոտայքի շրջանի կոլտնտեսությունները չէին կատարում պետությանը բուրդ հանձնելու պլանները։ Որոշ մարդկանց մոտ կար այն սխալ կարծիքը, որ առհասարակ շրջանում հնարավորություններ չկան բրդի արտադրությունն ավելացնելու և պետության հանդեպ ունեցած բրդի պարտավորությունը լրիվ կատարելու համար։ Անցյալ տարի պարտիայի շրջանային կոմիտեն լուրջ հակահարված տվեց այդ կարգի տրամադրություններին և կոլտնտեսությունների վարչություններին ու սկզբնական պարտիական կազմակերպություններին հանձնարարեց կիրառելու վճռական միջոցառումներ՝ տնտեսության այդ ճյուղի ետ մնալը հաղթահարելու համար։ Հրավիրվեց ոչխարաբուծության բնագավառում աշխատողների խորհրդակցություն, որտեղ մանրամասն խոսվեց բրդի արտադրության ավելացման և եղած ռեզերվների ու հնարավորությունների արդյունավետ օգտագործման մասին։ Որոշվեց բրդի կորուստները կանխելու և նրա արտադրությունն ավելացնելու համար ոչխարների առաջին խուզը կատարել ոչ թե մայիս—հունիս ամիսներին, այլ ապրիլ ամսի երկրորդ կեսին, երկրորդ խուզը՝ օգոստոսի երկրորդ կեսից մինչև սեպտեմբերի երկրորդ կեսը։ Ոչխարների այդ ժամկետներին կատարվող խուզի և նրանց խնամքի, կերակրման ու պահպանման պայմանների բարելավման շնորհիվ յուրաքանչյուր հասակավոր ոչխարից ստացվեց 2,8 կիլոգրամ բուրդ, 1956 թականին ստացված 1,8 կիլոգրամի փոխարեն։ Դա հնարավորություն տվեց պետությանը բուրդ հանձնելու առաջադրանքը շրջանի մասշտաբով կատարելու 130,5 տոկոսով։ Այդ միջոցառումների կենսագործման շնորհիվ շատ կոլտնտեսություններ, 1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին երկուս ու կեսից մինչև երեք անգամ ավելացրին բրդի արտադրությունը։

Եղզվան գյուղի կոլտնտեսությունը երկու տարի առաջ մեկ ֆուրաժային կովից տարեկան լավագույն դեպքում ստանում էր 800—850 կիլոգրամ կաթ։ Ցածր էին նաև կոլտնտեսության մյուս ցուցանիշները։ Պարտիական կազմա-



կերպությունը խորամուխ եղավ կոլտնտեսության էկոնոմիկան բազմակողմանիորեն բարձրացնելու գործին։ Այդ նպատակով, ժողովներից մեկում, գործարար մթնոլորտում քննարկվեց «Կոլտնտեսության էկոնոմիկայի ետ մնալը հաղթահարելու հարցը». գրեթե բոլոր կոմունիստներն էլ մասնակցեցին հարցի քննարկմանը և շատ արժեքավոր առաջարկություններ արին կոլտնտեսությունը առաջավոր դարձնելու համար։

Պարտիական ժողովը այդ առաջարկությունների հիման վրա, ըստ առանձին բնագավառների, մշակեց կոնկրետ միջոցառումներ, որոնց մեջ կարևոր տեղ են գրավում եղած հնարավորությունների և ռեզերվների հայտաբերումն ու արդյունավետ օգտագործումը, կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացումը և նրանց ստեղծագործական նախաձեռնության զարգացումը։

Պարտիական կազմակերպության որոշումը քննարկվեց կոլտնտեսականների ընդհանուր ժողովում, որտեղ կոլտնտեսականները հավանություն տվեցին պարտիական կազմակերպության մշակած միջոցառումներին և պատրաստակամություն հայտնեցին դրանք լրիվ կիրառելու։ Պարտիական կազմակերպությունը մասսայական-քաղաքական լայն աշխատանք ծավալեց կոլտնտեսականների շրջանում և նրանց պարզաբանեց, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը և իրենց նյութական դրության լավացումը կախված է իրենց բարեխիղճ աշխատանքից։ Դրանից հետո կոլտնտեսականները գործի անցան. Նկատելի չափով բարձրացավ աշխատանքային կարգապահությունը և աշխատանքի արտադրողականությունը։

1956 թվականին կային կոլտնտեսականներ, որոնք չէին մասնակցում կոլտնտեսության աշխատանքներին, իսկ 1957 թվականին ոչ մի կոլտնտեսական չկար, որ չմասնակցեր կոլտնտեսության աշխատանքներին։ Կոլտնտեսությունում չաշխատելը ամոթ է համարվում։ Կոլտնտեսականների ակտիվ աշխատանքի շնորհիվ կոլտնտեսության արտադրության մեջ արմատավորվեց եգիպտացորենի մշակումը, ընդարձակվեցին ցանովի խոտաբույսերի ցանքատարածությունները, լուրջ ուշադրություն նվիրվեց խոտհարքների մակերեսային բարելավման և հանքային ու տեղական պարարտանյութերով պարարտացման վրա։ Ստեղծվեց կերի կայուն բազա՝ հանրային անասնաբուծության զարգացման առաջին նախապայմանը։

Պարտիական կազմակերպությունը անասնաբուծության մեջ աշխատանքի ուղարկեց բարեխիղճ և այդ գործում բավականաչափ փորձ ունեցող կոլտնտեսականների և մի շարք կոմունիստների։ Հետևողական աշխատանք կատարվեց զոոանասնաբուժական միջոցառումների անթերի կատարման ուղղությամբ, մեքենայացման ենթարկվեցին աշխատատար պրոցեսները, արմատապես բարելավվեց անասունների խնամքի, կերակրման և պահպանման պայմանները։ Այս բոլորի շնորհիվ կոլտնտեսությունը 1957 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, 3,2 անգամ ավելացրեց կաթի արտադրությունը, մեկ ֆուրաժային կովից տարվա ընթացքում ստանալով 2545 կիլոգրամ կաթ։

Զգալի չափով ավելացավ նաև գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։ Կոլտնտեսությունը ժամկետից շուտ ոչ միայն կատարեց, այլև գերակատարեց պետության հանդեպ ունեցած իր բոլոր պարտավորությունները։ Բնամթերային և դրամական եկամուտների ավելացումը կոլտնտեսականների յուրաքանչյուր աշխօրին բարձր վարձատրելու հնարավորություն տվեց կոլտնտեսությանը

օրին բաժանելու 3,2 կիլոգրամ ցորեն, 100 գրամ պանիր, 70 գրամ յուղ, 10 ռուբլի դրամ և այլ մթերքներ:

Մեկ տարի առաջ չափազանց ցածր էին Քյուլիջայի անասնաբուծական սովետական տնտեսության ցուցանիշները. տնտեսությունը շահութաբեր չէր, բարձր էր արտադրանքի ինքնարժեքը: 1956 թվականին սովետական տնտեսությունը տարին փակեց 935 հազար ռուբլի վնասով: Հարկ եղավ փոխել այդ տնտեսության ղեկավարությունը: Պարտիական կազմակերպության առաջ հարց դրվեց ապահովել տնտեսության շահութաբերությունը, որի համար որոշիչ նշանակություն ուներ եղած հնարավորությունների և ռեզերվների արդյունավետ օգտագործումը:

Տնտեսության ղեկավարությունը և սկզբնական պարտիական կազմակերպությունը ամենից առաջ ձեռնամուխ եղան կերի կայուն բազայի ստեղծմանը: Ընդարձակվեց եգիպտացորենի ցանքատարածությունը, բարելավվեց խոտհարքների մշակությունն ու պահպանումը, խոտհունձը կատարվեց ժամանակին և անկորուստ: Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ սովետական տնտեսությունը 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, ավելի կուտակեց 1100 տոննա խոտ, 1000 տոննա սիլոս: Սեփական տնտեսությունում արտադրվեց 380 տոննա ճակնդեղ, 350 տոննա հատիկային կեր: Կերի արտադրությունը մեկ տարվա ընթացքում ավելացավ ավելի քան 5 անգամ: Բարելավվեցին անասունների խնամքի, կերակրման և պահպանման պայմանները, որի շնորհիվ 1956 թվականի 1670 կիլոգրամի փոխարեն ֆուրաժային կովի կաթնատվությունը 1957 թվականին հասավ 2276 կիլոգրամի: Այսպիսով, կաթի արտադրությունն ավելացավ 27,6 տոկոսով, կամ 300 տոննայով, իսկ մսինը՝ 16 տոկոսով: Տնտեսության բոլոր ճյուղերի զարգացումը, եղած հնարավորությունների ու ռեզերվների օգտագործումը և, հատկապես կերի բավականաչափ սեփական պաշարների ստեղծումը սովետական տնտեսությանը հնարավորություն տվին զգալիորեն իջեցնելու գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը: Եթե 1956 թվականին մեկ կիլոգրամ կաթի ինքնարժեքը կազմում էր 1 ռ. 95 կ., իսկ մեկ կիլոգրամ հացահատիկինը՝ 5 ռ. 42 կ., ապա անցյալ տարի կաթի մեկ կիլոգրամի ինքնարժեքը կազմեց 91 կոպեկ, իսկ հացահատիկինը՝ 76 կոպեկ:

Նոր Գյուղ և Ակունք գյուղերի կոլտնտեսությունները տևականորեն ետ էին մնում: Պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոն քննեց այդ գյուղերի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունների հաշվետվությունները և գործնական միջոցառումներ մշակվեցին՝ պարտիական-կազմակերպական ու քաղաքական աշխատանքը բարելավելու և եղած ռեզերվները լրիվ գործի դնելու միջոցով հաղթահարել կոլտնտեսությունների ետ մնալը: Բացի այդ, փոխվեցին նշված կոլտնտեսությունների վարչությունների նախագահները. որպես կոլտնտեսությունների վարչությունների նախագահներ առաջադրվեցին երեսունհազարական ընկերներ: Սկզբնական պարտիական կազմակերպությունները կազմակերպական և քաղաքական լայն աշխատանք ծավալեցին կոլտնտեսականների շրջանում, կիրառվեցին կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու մի շարք պրակտիկ միջոցառումներ, որոնք գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու և կոլտնտեսությունների առջև դրված խնդիրներն անթերի կատարելու գործում բարձրացրին կոլտնտեսականների քաղաքական և աշխատանքային



ակտիվությունը: Լուրջ աշխատանք կատարվեց նաև աշխատանքի կազմակերպումը բարելավելու, կարգապահությունն ամրապնդելու և արտադրողականությունը բարձրացնելու ուղղությամբ, կոլտնտեսություններում աշխատանքի նշանակվեցին գյուղատնտեսության մասնագետներ, որը հնարավորություն ավեց կոլտնտեսային արտադրության մեջ ճշտությամբ կիրառելու ագրոզոոտեխնիկական միջոցառումները, բարձրացնելու հողագործության և անասնաբուծության կուլտուրան:

Կոլտնտեսությունների վարչությունները կոնկրետ քայլերի դիմեցին ոռոգելի ջուրն ավելի արդյունավետ օգտագործելու, աշխատատար պրոցեսները մեքենայացման ենթարկելու և արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսումները կրճատելու ուղղությամբ: Ձեռնարկված միջոցառումները զգալի չափով նպաստեցին գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ավելացմանը, որը բնութագրվում է հետևյալ աղյուսակով.

| Կոլտնտեսությունները | Ստացված է համախառն կաթ (ցենտ.) | | Ստացված է միս կենդանի քաշով (ցենտ.) | | Ստացված է հացահատիկի համախառն բերք (ցենտ.) | | Կուտակված է կոպիտ կեր (տոննաներով) | | Կուտակված է սիլոս (տոննաներով) | | Ստացված է ընդամենը դրամական եկամուտ (հազ. ռուբ.) | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| | 1955 թ. | 1957 թ. | 1955 թ. | 1957 թ. | 1955 թ. | 1957 թ. | 1955 թ. | 1957 թ. | 1955 թ. | 1957 թ. | 1955 թ. | 1957 թ. |
| Ակունք | 558 | 1188 | 241 | 285 | 2656 | 5152 | 402 | 1300 | 350 | 450 | 401,0 | 910,0 |
| Նոր Գյուղ | 503 | 1245 | 138 | 160 | 1449 | 1579 | 260 | 535 | 166 | 230 | 467,0 | 849,0 |

Աղյուսակը ցույց է տալիս, որ Նոր Գյուղի և Ակունքի կոլտնտեսությունները հողակլիմայական նույն պայմաններում, առանց լրացուցիչ միջոցների ներդրման, եղած հնարավորությունների և ռեզերվների արդյունավետ օգտագործման շնորհիվ 1955 թվականի համեմատությամբ, 1957 թվականին լուրջ հաջողությունների են ձեռք բերել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման ասպարեզում: Ակունք գյուղի կոլտնտեսությունը երկու տարվա ընթացքում փուրաժային մեկ կովի կաթնատվությունը ավելացրել է 870 կիլոգրամով, կաթի արտադրությունը՝ 113 տոկոսով, Նոր Գյուղի կոլտնտեսությունը փուրաժային մեկ կովի կաթնատվությունը ավելացրել է 1330 կիլոգրամով, կաթի համախառն արտադրությունը՝ 145 տոկոսով: Հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը երկու կոլտնտեսություններում էլ կրկնապատկվել է:

Մեծ են հաջողությունները հատկապես կերի արտադրության ավելացման ասպարեզում: Ինչպես ցույց է տրված աղյուսակում, Ակունք գյուղի կոլտնտեսությունը կոպիտ կերերի արտադրությունն ավելացրել է 3,25 անգամ, կամ 900 տոննայով, Նոր Գյուղի կոլտնտեսությունը՝ ավելի քան 2 անգամ, կամ 275 տոննայով:

Նույնանման վիճակ գոյություն ունի նաև սիլոսի կուտակման գործում: Գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը զուգընթաց ավելացել են նաև կոլտնտեսությունների դրամական եկամուտները: Ակունք

գյուղի կոլտնտեսության դրամական եկամուտը ավելացել է ավելի քան 500.000 ռուբլով, կամ 127,5 տոկոսով, Նոր Գյուղի կոլտնտեսությանը՝ 382.000 ռուբլով, կամ 82 տոկոսով։

Հրազդան և Գյամրեզ գյուղերի կոլտնտեսությունները գտնվում են հողա-կլիմայական նույնանման պայմաններում, սակայն ունեն տարբեր ցուցանիշներ։ Հրազդան գյուղի կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը ամենօրյա լուրջ պայքար են տանում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ամեն կերպ ավելացնելու համար։ Այդ նպատակով նրանք փնտրում, հայտաբերում և արդյունավետ կերպով օգտագործում են նույնիսկ ամենափոքր ռեզերվը, որը նրանց հնարավորություն է տալիս տարեցտարի շեշտակի կերպով ավելացնելու գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Բերենք մի քանի օրինակներ.

1956 թվականին հրազդանցիները դժվարություն կրեցին անասնակերի հարցում, որը լուրջ կերպով անհանգստացնում էր սկզբնական պարտիական կազմակերպությանը։ 1957 թվականի գարնանը սկզբնական պարտիական կազմակերպությունը անդրադարձավ այդ հարցին։ Որոշվեց ինչ գնով էլ լինի հանրային անասունների համար ստեղծել կերի կայուն բազա։ Այդ նպատակով լավագույն արոտներից շուրջ 200 հեկտար առանձնացվեց և դարձվեց խոտհարք, կատարվեց ինչպես ցանովի, այնպես էլ բնական խոտհարքների պարարտացում, որից հետո կորնգանի ցանքատարածությունները փոցխվեցին։ Այդ միջոցառումների իրականացումը բարձրացրեց խոտհարքների բերքատվությունը։ Կորնգանի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից անջրդի պայմաններում ստացվեց 48 ցենտներ խոտի բերք, իսկ բնական խոտհարքների յուրաքանչյուր հեկտարից՝ ավելի քան 20 ցենտներ։ Կոլտնտեսությունը 1957 թվականի ընթացքում 3,5 անգամ, կամ 1600 տոննայով ավելի շատ խոտ կուտակեց, քան 1956 թվականին։ Միայն մոլախոտերից պատրաստվեց 750 տոննա սիլոս, կուտակվեց 2000 տոննա ծղոտ, որն ամբողջովին մանրացվեց և դարձվեց դարման։

Կոլտնտեսությունում ցածր էր հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը. պետք է բարձրացվեր այն և ավելացվեր հացահատիկի արտադրությունը։ Պարտիական կազմակերպությունը ձեռնամուխ եղավ նաև այդ խնդրի կատարմանը։

Փորձված և գյուղատնտեսությանը գիտակ կոլտնտեսականների օգնությամբ հայտաբերվեցին մի շարք նոր ռեզերվներ, որոնց օգտագործման վրա կենտրոնացվեց բոլոր կոլտնտեսականների ուշադրությունը։ Պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ, հողի բերրիությունը բարձրացնելու նպատակով, դաշտ փոխադրվեց ավելի քան 2000 տոննա օրգանական և 180 տոննա հանքային պարարտանյութ, կատարվեց որակով խոր վար, ցանվեց բացառապես ռայոնացված սորտային, կոնդիցիոն և ախտահանված սերմացու, լուրջ ուշադրություն հատկացվեց ցանքի նորմաների պաշտպանությանը։ Վաղ գարնանը կատարվեց աշնանացանի սնուցում և փոցխում։ Մի շարք կոմունիստների նախաձեռնությամբ, որն արժանացավ պարտիական կազմակերպության հավանությանը, ռուգման նպատակով օգտագործվեցին հեղեղաջրերը, որոնք իրենց մեջ պարունակում են տիղմ, որը շատ արժեքավոր պարարտանյութ է։ Առանձնահատուկ ուշադրություն դարձվեց ցանքերը մոլախոտերից մաքրելու և ցանքերի պաշտպանությունն ըստ ամենայնի կազմա-



կերպելու վրա։ Ձեռնարկված միջոցառումները տվին իրենց արդյունքները։ Աճեց հացահատիկի առատ բերք։ Սակայն դաշտում առատ բերք ունենալը բավական չէր։ Անհրաժեշտ էր անկորուստ հավաքել բերքը, որը պահանջում էր ողջ ուժերի մոբիլիզացիա։ Հաշվի առնելով այդ, պարտիական կազմակերպությունն իր ժողովում քննության առավ բերքահավաքը 8—10 աշխատանքային օրում և անկորուստ ավարտելու հարցը։ Խնդիրը այն էր, որպեսզի կոմբայնների անխափան աշխատանքն ապահովելու հետ միասին ապահովվեր նաև բոլոր աշխատունակ կոլտնտեսականների ակտիվ մասնակցությունը բերքահավաքին։ Այդպես էլ եղավ. բոլոր կոլտնտեսականները ակտիվ մասնակցություն ունեցան բերքահավաքին։ Յուրաքանչյուր օր բերքահավաքին մասնակցում էին 450—500 կոլտնտեսական, որոնց լարված աշխատանքի շնորհիվ բերքահավաքն ավարտվեց 10 աշխատանքային օրում։ Արդյունքը եղավ այն, որ կոլտնտեսությունը 750 հեկտար հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից (անջրդի պայմաններում) ստացավ 15 ցենտներ միջին բերք։

Կոլտնտեսությունը հատուկ ուշադրություն նվիրեց նաև այնպիսի ռեզերվների օգտագործմանը, ինչպիսիք են՝ անասունների մայրական կազմի ստերջության վերացումը, անասունների բտման և գիրացման գործի ճիշտ կազմակերպումը և անկումների վերացումը։ Այդ ռեզերվների օգտագործման շնորհիվ Հրազդանի կոլտնտեսությունում անասնաբուծությունը դարձավ տնտեսության ամենաեկամտաբեր ճյուղը, որից ստացվող միայն դրամական եկամուտը տարվա ընթացքում հասավ 1.500.000 ռուբլու։

Եղած հնարավորությունների ու ռեզերվների օգտագործման ասպարեզում այլ պատկեր գոյություն ունի Գյամրեզ գյուղի կոլտնտեսությունում, որտեղ սկզբնական պարտիական կազմակերպությունը ստեղծագործական նախաձեռնություն հանդես չի բերում այդ գործում։

Կոլտնտեսությունում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով ավելի քիչ անասնաբուծական մթերքներ են արտադրվել, քան Հրազդան գյուղի կոլտնտեսությունում, որը բնութագրվում է հետևյալ աղյուսակով.

| Կոլտնտեսությունները | 1957 թվականի ընթացքում յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով արտադրվել են անասնաբուծական մթերքներ | | | |
|---|---|---|---|---|
| | միս (ցենտներ) | կաթ (ցենտներ) | բուրդ (կիլոգրամ) | ձու (հատ) |
| Հրազդան | 45.3 | 140,4 | 425 | 3636 |
| Գյամրեզ | 19,1 | 68,4 | 168 | 121 |

Աղյուսակը ցույց է տալիս, որ Հրազդան գյուղի կոլտնտեսությունը, որտեղ արդյունավետ են օգտագործվել եղած հնարավորություններն ու ռեզերվները, յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվով Գյամրեզ գյուղի կոլտնտեսության համեմատությամբ ավելի է ստացվել 26,2 ցենտներ միս, 72 ցենտներ կաթ, 257 կիլոգրամ բուրդ, 3515 հատ ձու։

Առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ եղած հնարավորությունների և ռեզերվների արդյունավետ օգտագործումը ոչ միայն նպաս-

տում է գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, այլև կրճատում է նրանց արտադրության վրա կատարվող ծախսումները, հնարավորություն է տալիս նվազագույն ծախսումների միջոցով ապահովելու ավելի շատ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը:

Որպես օրինակ կարելի է վերցնել Ջրվեժ և Զորաղբյուր գյուղերի կոլտնտեսությունները, որոնք գտնվելով նույնանման հողակլիմայական պայմաններում, ունեն բոլորովին տարբեր ցուցանիշներ: Ջրվեժ գյուղի կոլտնտեսությունում արդյունավետ կերպով օգտագործվում են բոլոր տեսակի հնարավորություններն ու ռեզերվները, իսկ Զորաղբյուր գյուղի կոլտնտեսությունում՝ ընդհակառակը: Դրա պատճառով Ջրվեժում քիչ ծախսումների միջոցով ավելի շատ մթերքներ են արտադրվում, իսկ Զորաղբյուրում ծախսումներն ավելի շատ են, բայց արտադրանքը՝ քիչ: Արտադրանքի մեկ միավորի վրա կատարված ծախսումները Զորաղբյուրի կոլտնտեսությունում զգալի չափով բարձր են, քան Ջրվեժի կոլտնտեսությունում: Զորաղբյուր գյուղի կոլտնտեսությունը, Ջրվեժ գյուղի կոլտնտեսության համեմատությամբ, մեկ ցենտներ տավարի մսի արտադրության վրա ավելի է ծախսել 14,2 աշխօր, 27 ռուբլի դրամ, մեկ ցենտներ խոզի մսի վրա՝ 15 աշխօր, մեկ ցենտներ կաթի վրա՝ 2,3 աշխօր, 16 ռ. 80 կ. դրամ, մեկ ցենտներ հացահատիկի վրա՝ 4,1 աշխօր, 6 ռ. 20 կ. դրամ, մեկ ցենտներ խաղողի վրա՝ 292,5 աշխօր, 533 ռուբլի դրամ:

Չի կարելի ասել, որ Կոտայքի շրջանում ամեն ինչ արված է եղած հնարավորություններն ու ռեզերվները օգտագործելու համար: Դեռևս չօգտագործված շատ հնարավորություններ և ռեզերվներ կան, որոնց գործադրման դեպքում զգալիորեն կավելանա գյուղատնտեսական մթերքների արտադրությունը:

Սևաբերդ, Քյանքան, Կապուտան, Ողջաբերդ, Գեղադիր, Հացավան և Գողթ գյուղերի կոլտնտեսությունների ձեռք բերած ցուցանիշները զգալի չափով ցածր են իրենց հնարավորություններից:

Այդ կոլտնտեսություններում մինչև օրս էլ լուրջ ուշադրություն չի դարձվում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, կարգապահությունն ամրապնդելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու վրա:

Այդ թերությունները վերացնելու նպատակով պարտիական կազմակերպությունները սկսել են որոշակի աշխատանք կատարել: Նրանք ձգտում են եղած բոլոր հնարավորություններն ու ռեզերվները գործի դնելու միջոցով լրիվ գործի վերածել յուրաքանչյուր շնչին ընկնող կաթի, յուղի և մսի արտադրությամբ մոտակա տարիներին ԱՄՆ-ին հասնելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի առաջադրած խնդիրը, որի համար մենք ունենք բոլոր պայմանները:

---

# ԱՐՏԱՇԱՏԸ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Դ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

Հայաստանում Սովետական կարգերի հաստատման շնորհիվ մեկընդմիշտ վերջ դրվեց հայ ժողովրդի դարավոր քաղաքական ազատազրկմանը և տնտեսական ու կուլտուրական հետամնացությանը: Տնտեսական խոշոր վերելքի հիման վրա փարթամորեն աճում է նրա կուլտուրան: Այս կարելի է ցույց տալ թեկուզ հենց Արտաշատի շրջանի օրինակով:

Ղամարլու…

Ինչպես մշուշապատ է այդ անունը, այնպես էլ հարյուրամյակներ շարունակ մշուշապատ է եղել ղամարլվեցու կյանքը: Աղքատությունը, չարքաշ կյանքը, սովն ու տառապանքը, կոտորածներն ու ավերածությունները հյուծել ու արյունաքամ են արել ղամարլվեցի աշխատավորին: Շրջանի գյուղերն իրենց նեղլիկ, ծուռումուռ փողոցներով, կավաշեն, անշուք տներով տխրություն էին ներշնչում դիտողին:

Ամբողջ շրջանում մինչև սովետական կարգերը չկար մի կուլտուրական վայր: Իշխում էր համատարած անգրագիտությունը: Կյանքը դառն էր, տառապանքով լի: Մեծ Հոկտեմբերի լույսերով ողողված նոյեմբերը շողաց հայոց լեռնաշխարհում: Ղամարլվեցին նոր շունչ, նոր կյանք առավ: Դրվեց նոր աշխարհի, նոր կյանքի հիմքը և պատմական կարճ ժամանակամիջոցում կառուցվեց այսօրվա արտաշատցու կոլտնտեսային ունևոր ու լիառատ կյանքի ամրակուռ շենքը…

Տարեցտարի աճում է շրջանի պետական արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքն ու կոլտնտեսությունների դրամական եկամուտը: Այսպես, եթե 1950 թվականին Արտաշատի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները թողարկել են 106 միլիոն ռուբլու համախառն արտադրանք, իսկ կոլտնտեսությունները ստացել են 65 միլիոն ռուբլու դրամական եկամուտ, ապա 1957 թվականին արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արտադրանքը հասավ 137 միլիոն ռուբլու, իսկ կոլտնտեսությունների դրամական եկամուտը՝ մոտ 110 միլիոն ռուբլու:

Եկամուտների այդպիսի աճը բնակչության համար պայմաններ ստեղծեց բավարարելու նաև իրենց կուլտուրական պահանջմունքները: Դրա շնորհիվ էլ այժմ շրջանի որ գյուղն էլ մտնեք, կտեսնեք ծավալված շինարարական մեծ աշխատանք: Կառուցվում են հասարակական-կուլտուրական օբյեկտներ, անհատական բնակարաններ, և այդ ամենը մեծ մասամբ վարդագույն տուֆից: Այսօրվա արտաշատցին երեկվա ղամարլվեցին չէ: Բարձրացել է նրա նյութական-կուլտուրական մակարդակը: Եթե նա երեկ ապրում էր միհարկանի կավաշեն բնակարանում, այսոր արդեն չի կարող հաշտվել այդ մտքի հետ: Նա ուզում է ապրել երկհարկանի, տուֆաշեն բնակարանում՝ կենցաղային անհրա-

ժեշտության բոլոր հարմարություններով, որովհետև տարեցտարի բարձրա-
ցող բերքատվության շնորհիվ բարձրանում է աշխօրերի դրամական արժեքը,
ավելանում են կոլտնտեսականի եկամուտները, նա կարող է բավարարել իր
այդ ցանկությունը:

Շրջանի բոլոր գյուղերը անխտիր կերպով վերակառուցվում են նոր հա-
տակագծերի համաձայն: Շուտով հնից գրեթե ոչինչ չի մնալու: Ամենուրեք կա-
ռուցվում է նորը, գեղեցիկը: Վերջին մի քանի տարվա ընթացքում շրջանում
ավելի լայն ծավալ է ստացել անհատական բնակարանային շինարարությունը:
Հենց միայն 1957 թվականին մոտ երկու հազար կոլտնտեսականներ իրենց
խնայողություններով և կոլտնտեսություններից ստացած եկամուտների հաշ-
վին կառուցել են մեկից երկուհարկանի բարեկարգ ու լուսավոր բնակարան-
ներ: Կառուցվում են նոր դպրոցներ, ակումբներ, պահեստներ, գրասենյակներ,
անասնագոմեր, թռչնանոցներ և այլն:

Բելոռուսական ՍՍՌ գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցու-
թյունում 1958 թվականի հունվարի 22-ին արտասանած իր ճառում ընկ. Ն. Ս.
Խրուշչովը ասաց. «Առաջավոր կոլտնտեսությունները բավականաչափ ուժեր են
կուտակել: Նրանք կարող են լուծել գյուղերի վերակառուցման խնդիրը...
առաջավոր կոլտնտեսությունների համար հասել է ժամանակը ինչպես հարկն
է ձեռնամուխ լինելու գյուղական շինարարությանը: Հանրային լավ շենքերից
բացի հարկավոր է կառուցել բարեկարգ տներ, ակումբներ, հիվանդանոցներ,
մանկամսուրներ, մանկապարտեզներ, բաղնիքներ: Հասել է ժամանակը կոլ-
տնտեսություններում կառուցելու փռեր, լվացքատներ, իսկ ոչ հեռու ապա-
գայում՝ նաև ճաշարաններ: Կալինովկա գյուղի կոլտնտեսությունում ես
խորհուրդ տվեցի դպրոցականների համար կառուցել գիշերօթիկ, որպեսզի
կոլտնտեսականների երեխաներն ապրեն գիշերօթիկում, որպեսզի նրանց դաս-
տիարակեն ուսուցիչները, որպեսզի մայրը հանգիստ ու վստահ լինի, որ իր
երեխան կդաստիարակվի կուլտուրական պայմաններում: Իսկ այժմ միշտ չէ,
որ այդպիսի պայմաններ ապահովված են: Կոլտնտեսությունը նյութական հնա-
րավորություններ ունի: Չէ՞ որ նրա եկամուտը հինգ միլիոն ռուբլուց ավելի է»:

Իսկ մեր շրջանում ունենք այնպիսի կոլտնտեսություններ, որոնց եկա-
մուտները գերազանցում են հինգ միլիոն ռուբլուց: Օրինակ՝ Նորաշեն, Այգե-
զարդ, Վ. Արտաշատ, Մխչյան, Քաղցրաշեն, Շահումյան, Ն. Դվին և մի շարք
այլ գյուղերի կոլտնտեսությունների տարեկան եկամուտները հասնում են 6—
10 միլիոն ռուբլու: Կարո՞ղ են այդ կոլտնտեսությունները կառուցել հասա-
րակական ու կուլտուրական նոր օբյեկտներ: Կարող են և կառուցում են:

Արտաշատցին սիրում է կառուցել, կառուցել լավը, կառուցել գեղեցիկը:
Տասը, տասնհինգ տարի առաջ Արտաշատում եղած մարդը, եթե այսօր նորից
շրջան մտնի՝ չի կարող գտնել իր բարեկամների ու հարազատների տները:
Բոլորովին փոխվել ու նոր տեսք է ստացել շրջանային կենտրոնը՝ Արտաշատ
ավանը: Հոկտեմբերյան, Շահումյան, Բաղրամյան և մյուս փողոցների վրա
վեր են խոյացել վարդագույն տուֆից կառուցված շատ բնակարաններ, հասա-
րակական ու կուլտուրական շենքեր: Ահա շրջկենտրոնի հրապարակում կառուց-
ված տեղարդկոմբինատի տաղավարի երկհարկանի շենքը, կապի, շրջկոոպի,
թատրոնի, ջրային տնտեսության շենքերը, մթերային խանութն ու ռեստորանը,
հյուրանոցը, կոլտնտեսային նորակառույց շուկան, բաղնիքը, Արտաշատ ավա-



նի գինու գործարանի և մեխանիկական գործարանի երկհարկանի բնակելի
շենքերը, հիվանդանոցը և բազմաթիվ այլ շենքեր, որոնք կուլտուրական գե-
ղեցիկ տեսք են տվել շրջկենտրոնին: Եթե նախասովետական Ղամարլուում
կային հարուստ Բաբախանովների միայն երկու քարաշեն սև շենքերը, ապա
այսօր դրանք իրենց տեսքով մռայլ ու խղճուկ պատկեր են ներկայացնում
բազմաթիվ նորակառույցների կողքին:

Միայն վերջին մի քանի տարիների ընթացքում շրջկենտրոնում կոլտնտե-
սականներն ու բանվոր ծառայողները կառուցել են ավելի քան 200—250 ան-
հատական բնակարաններ, ասֆալտապատել են 28 հազար քառակուսի մետր
տարածությամբ փողոցներ: Միայն անցյալ տարվա գարնանը տնկվել է մոտ
1.200 դեկորատիվ ծառ:

Վերջին մեկ տասնամյակում անհատական բնակարանային շինարարու-
թյան համար պետության և Արտաշատ ավանի կոլտնտեսության տրամադրած
ավելի քան մեկ ու կես միլիոն ռուբլով շրջկենտրոնի կոլտնտեսականներն ու
բանվոր-ծառայողները կառուցել են մոտ 115 քարաշեն բնակելի տներ, որոն-
ցից յուրաքանչյուրն ունի 2—6 սենյակ: Միայն 1957 թվականին կառուցվել և
շահագործման են հանձնվել 40 նոր անհատական բնակարաններ:

Ամբողջ շրջանի զարդն է կազմում Վ. Արտաշատ գյուղի Սվերդլովի անվան
կոլտնտեսության նորակառույց ակումբի շենքը, որը կառուցվել է ճարտարա-
պետ Գ. Թամանյանի նախագծով և շահագործման է հանձնվել 1957 թվակա-
նին: Ակումբն ունի 500 տեղանոց հանդիսասրահ՝ իր մեծ բեմահարթակով,
ստացիոնար կինոսարքավորում, խաղասենյակներ, ընթերցասրահ, գրադա-
րան, ֆիզկուլտ-դահլիճ և հանդերձարան: Ակումբի կառուցման և կահավոր-
ման համար ծախսվել է մոտ 3 միլիոն ռուբլի: Իրավամբ Վ. արտաշատցիները
իրենց նորակառույց ակումբը անվանում են կուլտուրայի պալատ: Այստեղ
գործում են ինքնագործ խմբակներ, համարյա ամեն օր ցուցադրվում են կի-
նոնկարներ, կազմակերպվում զրույցներ, զեկուցումներ ու դասախոսություն-
ներ, ամիսը մի քանի անգամ նոր բեմադրություններով հանդես է գալիս
շրջանի պետթատրոնի ստեղծագործական կոլեկտիվը: Կոլտնտեսականներին
հյուր են գալիս նաև ռեսպուբլիկայի արվեստի վարպետները:

1957 թվականին շահագործման հանձնվեցին նաև Մխչյան, Յամանչա-
լու, Բաղրամյան գյուղերի ակումբների գեղեցիկ շենքերը:

Կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումները՝
շրջանում լուրջ աշխատանք է տարվում կոլտնտեսային գյուղացիության կուլ-
տուր-կենցաղային դրության բարելավման և նրա հարաճուն պահանջմունք-
ների բավարարման ուղղությամբ: Վերջերս պարտիայի շրջանային կոմիտեն և
շրջսովետի գործկոմը Վրացական ՍՍՌ-ի Մախարաձեի շրջանի աշխատավորու-
թյան օրինակով միջոցառումներ են մշակել առաջիկա 2-3 տարիների ընթաց-
քում կոլտնտեսությունների հատկացումների և մասնայական շաբաթօրյակ-
ների միջոցով կառուցել կուլտուր-կենցաղային նոր օբյեկտներ ինչպես շրջ-
կենտրոնում, այնպես էլ գյուղերում, ավելի բարձր հիմքերի վրա դնել բնակ-
չության կուլտուրական սպասարկման գործը:

Նախատեսվում է առաջիկա տարիներին շրջկենտրոնում կառուցել՝ 3
բնակելի շենք, գյուղերում՝ մոտ 2000 անհատական բնակարան, 7—10 ակումբի
և առողջապահական հիմնարկների շենքեր, 8—10 բաղնիք, 14 մանկամսուրի
շենք և այլն: Միայն այս տարի շրջկենտրոնի կոմունալ սպասարկման և բա-

րեկարգման համար հատկացված է 800 հազար ռուբլի։ Բացվելու են լայն և ուղիղ նոր փողոցներ, հին և նոր փողոցներից խճապատվելու է 8540 քառակուսի մետր, իսկ 7500 քառակուսի մետր ասֆալտապատվելու է։ Այսպիսի լայնածավալ շինարարության վրա նախատեսվում է ծախսել շուրջ 90 միլիոն ռուբլի։

Մոտ, շատ մոտ ապագայում Արտաշատ ավանը կդառնա ռեսպուբլիկայի գողտրիկ, պարտեզներով և պուրակներով պատած քաղաքներից մեկը։

Այս խրախուսելի նախաձեռնությունը իրականացնելու, շինարարական զանազան նյութեր ձեռք բերելու գործում շրջանին պետք է օգնեն ռեսպուբլիկական համապատասխան կազմակերպությունները, մեր առանձին գերատեսչությունները, Հայկոոպը և Պետպլանը, այլապես շինարարական աշխատանքի այս լայն թափը կարող է դանդաղել, և մեր գեղեցիկ ծրագրերը կմնան միայն իբրև լավ ցանկություններ։

Արտաշատի պայմաններում, որպես շինափայտ, կարելի է օգտագործել բարդիները։ Մենք որոշել ենք գյուղամիջյան և դաշտամիջյան ճանապարհների եզրերին հենց այս գարնանից տնկել որքան հնարավոր է շատ բարդիներ, որոնք 5—6 տարի հետո կարող են օգտագործվել որպես շինափայտ։

Ինչպես շրջկենտրոնում, այնպես էլ շրջանի գյուղերում անցյալում չկար խմելու մաքուր ջուր. բնակչությունը օգտագործում էր առուների և ստորերկրյա ջրերը, որը պատճառ էր դառնում մասսայական հիվանդությունների, հատկապես մալարիայի։ Այժմ շրջանի բոլոր գյուղերում առատորեն հոսում է Գառնիի աղբյուրների սառնորակ, մաքուր ջուրը, որը լիովին բավարարում է շրջանի աշխատավորության պահանջը։ Մինչև 1958 թվականի վերջերը շրջանի աշխատավորները կստանան Գառնիի երկրորդ հերթի խողովակաշարից հոսող առատ ջուրը։

Նոր հատակագծի համաձայն փոխվել ու բոլորովին անճանաչելի է դարձել Ներքին Դվին գյուղը։ Այստեղ աչքի է զարնում գյուղի կենտրոնում մի քանի տարի առաջ կառուցված ակումբի երկհարկանի տուֆաշեն շենքը, որը դիտողի վրա հաճելի տպավորություն է թողնում՝ իր գեղեցիկ ճարտարապետական կառուցվածքով, ֆասադով ու սյուներով. այն իշխում է գյուղի ու այգիների և մինչև իսկ Հայաստանի հին մայրաքաղաք Դվինի միջնաբերդի վրա։ Ակումբի շենքում են տեղավորված գրադարանը, ընթերցարանը, խաղասենյակները։ Ակումբն ունի 400 տեղանոց ընդարձակ հանդիսասրահ և այլ հարմարություններ։ Այստեղ հաճախակի ելույթներ են ունենում ռեսպուբլիկայի արվեստի վարպետները, շրջանային պետթատրոնի կոլեկտիվը և ակումբին կից գործող երգի-պարի ինքնագործ խումբը։ Բացի ակումբից, այստեղ կան երկու դպրոց, հիվանդանոց, փոստի բաժանմունք, բուժարան, ծննդատուն, հյուրանոց, բաղնիք, խնայդրամարկղ, գյուղական խանութ, վարսավիրանոց և այլն։ Ավարտվելու վրա է երկհարկանի սպորտային դահլիճի շենքի շինարարությունը։

Տարեցտարի ծաղկում ու բարգավաճում է Հայաստանի քաղաքացիական կռիվների լեգենդար հերոս, քաջարի զինկոմ Լիպարիտ Մխչյանի անունը կրող գյուղը։ Մխչյանում ամեն տարի տասնյակ կոլտնտեսականներ փոխադրվում են իրենց նորակառույց բնակարանները։ Շատերն իրենց կուլտուրական պահանջների համար գնում են մարդատար ավտոմեքենաներ, որոնց թիվը գյուղում տասից ավելի է։ Անցյալ տարի երկհարկանի, կղմինդրածածկ բնակա-



րաններ են կառուցել ավելի քան 20 կոլտնտեսական։ Գյուղի զարդն է կազմում երկհարկանի ակումբի շենքը։ Սկսվել է եռեքհարկանի դպրոցի շենքի շինարարությունը։ Գյուղում ամեն օր ստացվում է 700 օրինակ թերթ ու ամսագիր։ 157 կոլտնտեսական ունեն ռադիոընդունիչներ։ Ամբողջ գյուղը էլեկտրիֆիկացվել ու ռադիոֆիկացվել է։

Շրջանի երիտասարդ գյուղերից է Վերին Ջրաշենը։ Ասում են՝ հնում այս գյուղում առատ ջուր է եղել, ծաղկած բուսականություն, բայց հետո ջուրն անհետացել է գետնի ընդերքում և շրջապատը թողել ամայի։ 1900-ական թվականներին այստեղ բնակություն են հաստատում Պարսկաստանից վտարված աղքատ գյուղացիները և աճուրդով վարձակալում այդ գյուղի հողերը, որոնք ցարական «սեփականություն» էին։ Այդ պատճառով էլ գյուղը կրում է «Տոլկ» (ռուսական торг աճուրդ բառի աղավաղված ձևը) անունը։ Ապրում էին նրանք խեղճ ու կրակ, հայացքները երկնքին հառած անձրևի սպասելով։ Գյուղի միակ աղբյուրի կաթիլներով թափվող ջուրը չէր բավականացնում փոքրաթիվ գյուղացիների խմելու պահանջն անգամ։

Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո, երբ Հայաստանում սովետական կարգեր հաստատվեցին, 1922 թվականին գյուղն ստացավ խմելու առատ ջուր, որի շնորհիվ էլ փոխվեց գյուղի հին անունը և այն կոչվեց Ջրաշեն, իսկ դրանից մի քանի տարի հետո, երբ հիմնվեց Ներքին Ջրաշեն գյուղը, այն կոչվեց Վերին Ջրաշեն։ Բայց առաջվա նման ղռերը նորից մնում էին անջրդի։ Հեշտ չէր անմիջապես ջուրը հասցնել պապակած հողերին։

Մի քանի տարի առաջ այստեղ կոլտնտեսության վարչության նախագահ
ընտրվեց պարտիայի կոչով գյուղ մեկնած երեսունհազարական Երջանիկ Հա-
րությունյանը. նա եռանդուն կերպով գործի անցավ, շատ տարածություններ
ոռոգելի դարձան։ Վերջապես իրականացավ գյուղացիների վաղեմի երազը՝
գյուղը տեղափոխելու մասին։ Այժմ հին գյուղից մոտ երեք կիլոմետր հյուսիս-
արևմուտք, կառուցվում է նոր գյուղը՝ նոր նախագծով, գեղեցիկ ու հարմա-
րավետ բնակարաններով, ուղիղ ու ծառազարդ փողոցներով, ակումբով, դպ-
րոցով և հասարակական այլ կառույցներով։ Գյուղը կառուցում է պետությու-
նը, կոլտնտեսականներն իրենց համար կառուցվող բնակարանների արժեք-
ները վճարելու են մաս-մաս։ Յուրաքանչյուր բնակարան կունենա երկու
սենյակ, խոհանոց, պատշգամբ, օժանդակ այլ հարմարություններ, ինչպես
նաև կից բանջարանոցն ու պարտեզը։

Այժմ շրջանում չկա մի գյուղ, որը չունենա իր դպրոցը, ակումբը, գրա-
դարանը, ընթերցարանը և կուլտուր-լուսավորական այլ հիմնարկներ։

Պարտիայի շրջանային կոմիտեի բյուրոյի նիստերում, պլենումներում,
շրջսովետի գործկոմի նիստերում ու սեսիաներում, ինչպես նաև պարտիական
կազմակերպություններում ու գյուղական Սովետներում հաճախակի քննու-
թյան են առնվում գյուղերի բարեկարգման և կուլտուրական շինարարության
հարցերը, մշակվում կոնկրետ միջոցառումներ՝ այդ աշխատանքները բարե-
լավելու ուղղությամբ։ Պարտիայի շրջկոմի և աշխատավորների դեպուտատների
շրջսովետի գործկոմի վերջերս ձեռնարկած մի շարք միջոցառումների շնորհիվ
շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկները աշխուժացրել են իրենց աշ-
խատանքները։ Ակումբներում և գրադարաններում կազմակերպվում են հան-
դիպումներ ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլ-
տուրայի և արվեստի բնագավառի անվանի մարդկանց հետ, ինչպես նաև

գրական երեկոներ ու գրքերի քննարկումներ: Վերջերս Նորաշեն գյուղի աշ-
խատավորները հանդիպում ունեցան ՍՍՌՄ ժողովրդական արտիստ Վահրամ
Փափազյանի հետ, Ոստան գյուղում կազմակերպվեց Սերո Խանզադյանի
«Հողը» վեպի քննարկումը՝ հեղինակի մասնակցությամբ, շրջկենտրոնի կուլ-
տուրայի տանը՝ «Սիրտ» վեպի քննարկումը հեղինակի՝ Անդրանիկ Հովսեփ-
յանի ներկայությամբ: Այգեստանում տեղի ունեցած «Թեհրան» վեպի քննարկ-
մանը ներկա էր հեղինակը՝ Գարեգին Սևունցը:

Շրջանի կուլտուրական օջախներից մեկն է շրջկենտրոնի կուլտուրայի
տունը: Աշխատավորների համար այստեղ հաճախակի կազմակերպվում են
կուլտուրական միջոցառումներ: Կուլտուրայի տանը կից գործում են երգի-
պարի ինքնագործ խմբակներ, գրական, կար ու ձևի, շաշկու, շախմատի և
զանազան այլ խմբակներ, որոնցում ընդգրկված են մեծ թվով երիտասարդ
կոլտնտեսականներ, կոլտնտեսուհիներ, բանվորներ ու ծառայողներ: Երգի-
պարի անսամբլը անցած տարվա վերջերին եղավ Ուկրաինայում և համերգներ
տվեց մեր մրցակից՝ Խերսոնի մարզի Վիսոկոպոլյեի շրջանի մի շարք կոլ-
տնտեսություններում և Կախովկա գէս-ի բանվորների համար: Հոկտեմբերյան
Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակի տոնակատարության օրերին մեր շրջանի կոլ-
տնտեսություններում համերգներ էր տալիս Վիսոկոպոլցիների երգի-պարի
անսամբլը: Այդ բարեկամական փոխայցելությունները է՛լ ավելի ամրապըն-
դեցին հայ և ուկրաինացի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը և
նպաստեցին երկու մրցակիցների կուլտուրական կապերի ամրապնդմանը:

Մինչև Հայաստանում սովետական կարգերի հաստատումը շրջանի ազ-
գաբնակչության 80—90 տոկոսը անգրագետ էր: Շրջանում գոյություն ուներ
միայն երեք երկդասյան դպրոց՝ 13 ուսուցիչներով: Այդ դպրոցներում մեծ
մասամբ սովորում էին հարուստների երեխաները: Այժմ շրջանում գործում
են 11 մասսայական միջնակարգ, մեկ բանվորական և մեկ գյուղերիտ միջ-
նակարգ, 27 յոթնամյա և 5 տարրական դպրոց, որոնցում սովորում են
ավելի քան 9 հազար աշակերտ: Ուսուցիչների թիվը հասնում է 661-ի, որոն-
ցից 426-ը ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն:

Այժմ շրջանում աշխատում են 600-ից ավելի բարձրագույն կրթությամբ
մասնագետներ՝ բժիշկներ, ագրոնոմներ, ինժեներներ, ուսուցիչներ, անասնա-
բույժներ, զոոտեխնիկներ և այլն: Համարյա ամեն մի ընտանիքում կա բարձ-
րագույն կրթություն ստացած 2—3 մարդ: Լուսակերտ գյուղի կոլտնտեսական,
70-ամյա Սրապիոն Հարությունյանի ընտանիքում կա 5 դիպլոմ: Նրա ավագ
դուստրը՝ Հերսիկը, ավարտել է Երևանի Օտար լեզուների ու Հեռակա ման-
կավարժական ինստիտուտները և աշխատում է որպես ուսուցչուհի, տղանե-
րից Սոսը ավարտել է Երևանի Անասնաբուժական-անասնաբուժական ինս-
տիտուտը և այժմ գիտական աշխատող է, Սերյոժան ավարտել է Գյուղատըն-
տեսական ինստիտուտի ագրոնոմիական ֆակուլտետը և աշխատում է հայ-
րենի գյուղի կոլտնտեսությունում որպես ագրոնոմ: Հարսներից Ռոզան ին-
ժեներ է, իսկ Մայրանուշը՝ ուսուցչուհի: Այդպիսի ընտանիքը շրջանում
եզակի չէ:

Կոլտնտեսությունների դրամական եկամտի անընդհատ աճը կոլտնտեսու-
թյուններին հնարավորություն է տալիս ակտիվ մասնակցություն ունենալու
շրջանի դպրոցական շինարարությանը: Վեց (Լուսակերտ, Այգեզարդ, Մըխ-
չյան, Ոստան, Վ. Արտաշատ, Շահումյան գյուղերի) կոլտնտեսություններ,



կոլտնտեսականների ընդհանուր ժողովների որոշմամբ, անցյալ տարի ձեռնա-
մուխ են եղել իրենց միջոցներով միջնակարգ և թերի միջնակարգ դպրոցներ
կառուցելուն: Այս տարի այդ գյուղերում դպրոցաշինարարությունը առաջ է
գնալու արագ թափով, որպեսզի այն ավարտվի նախատեսված ժամկետում:
Դպրոցները կառուցվում են արթիկ տուֆով ու տեղական քարով, լինելու են
երկհարկանի, ունենալու են լաբորատորիաներ, ֆիզկուլտ դահլիճ, գրադարան
և այլ հարմարություններ: Միայն այդ դպրոցներում սովորելու է շուրջ երեք
հազար աշակերտ: Տեղին է ասել, որ այս կարևոր գործում կոլտնտեսություն-
ներին անհրաժեշտ օգնություն ցույց չեն տալիս ռեսպուբլիկայի լուսավորու-
թյան մինիստրության ընկերները:

Ինչպես հայտնի է, հայ թատրոնի երկուհազարամյա պատմությունը
սկիզբ է առնում Արտաշատից: Պատմական նույն վայրում այժմ գործում է
Սմո Խարազյանի անվան պետթատրոնը՝ 21 մարդուց բաղկացած ստեղծա-
գործական կոլեկտիվը, որը ոչ մի ջանք չի խնայում թատրոնի ռեպերտուարը
հարստացնելու ինչպես կլասիկ, այնպես էլ ժամանակակից հեղինակների
պիեսների բեմադրությամբ: Հայաստանի պետական թատրոնների ռեսպուբ-
լիկական ֆեստիվալում Ի. Ֆրանկոյի «Գողացված երջանկություն» պիեսի բե-
մադրությամբ թատրոնը արժանացավ երկրորդ կարգի դիպլոմի: «Հացի խըն-
դիր», «Մազդա», «Երկու տիրոջ ծառա», «Սոս և Վարդիթեր», «Նամուս» և մի
շարք այլ պիեսների բեմադրությամբ թատրոնի ստեղծագործական կոլեկտիվը
լայն ճանաչման և ընդունելության է արժանացել ինչպես մեր շրջանում, այն-
պես էլ ռեսպուբլիկայի այլ շրջանների թատերասեր հասարակայնության կող-
մից: Թատրոնի կոլեկտիվը սպասարկում է հարևան՝ Վեդու, Շահումյանի,
Էջմիածնի, Հոկտեմբերյանի և Կոտայքի շրջանների աշխատավորներին:

Չորրորդ տարին է, ինչ շրջկենտրոնում գործում է երաժշտական 7-ամյա
դպրոցը, որտեղ երաժշտական կրթություն են ստանում 84 երեխա:

Շրջանի կինոթատրոնը ամեն օր 3—4 սեանս կինոնկարներ է ցուցադրում,
որոնք մեծ հետաքրքրությամբ դիտում են հարյուրավոր հանդիսատեսներ:
Գյուղերում կան 21 ստացիոնար և շրջիկ կինոներ: Սկսվել է շրջկենտրոնի
կինոթատրոնի 300 տեղանոց նոր շենքի կառուցումը:

Շրջանում գործում է 35 ակումբ-գրադարան և 15 մասսայական գրադա-
րան: Բոլոր գրադարանների գրքային ֆոնդը հասնում է ավելի քան 110 հա-
զար կտորի: Շրջանում ստացվում է 17 հազար օրինակ թերթ և ամսագիր:

Արտաշատի շրջանի կուլտուրական վերելքի մասին է խոսում այն փաս-
տը, որ առևտրի շրջանառության մեջ գնալով բարձրանում է կուլտուր-կեն-
ցաղային ապրանքների վաճառքի տեսակարար կշիռը: Այսպես, օրինակ, եթե
1954 թվականին միայն շրջսպառկոոպի միջոցով վաճառվել են 228 հազար
ռուբլու ռադիո-սարքավորումներ և երաժշտական գործիքներ, 450 հազար
ռուբլու կարի մեքենաներ և այլն, ապա 1957
թվականին վաճառվել են մեկ միլիոն 257 հազար ռուբլու ռադիո-սարքավո-
րումներ և երաժշտական գործիքներ, 915 հազար ռուբլու կահույք, 312 հազար
ռուբլու կարի մեքենաներ: Միայն 1957 թվականին շրջսպառկոոպի խանութ-
ներից արտաշատցիները գնել են՝ 19 դաշնամուր, 2857 կարի մեքենա, 1367
ռադիոընդունիչ, 103 հեռուստացույց, 280 սառցարան և այլ կուլտուր-կեն-
ցաղային ապրանքներ:

Շրջանի քաղաքական ու կուլտուրական կյանքում մեծ իրադարձություն հանդիսացավ այն, որ 1957 թվականի հունվարի 1-ից, ՀԿՊ Կենտկոմի որոշմամբ, շրջանային «Կոլտնտեսային կյանք», իսկ այժմ՝ «Արտաշատ» թերթը սկսեց լույս տեսնել շաբաթական 3 անգամ՝ չորս էջ ծավալով։ Շրջանային թերթը հնարավորություն ստացավ ավելի բազմակողմանիորեն լուսաբանելու շրջանի կյանքը։ Թերթում մեծ տեղ է հատկացվում կուլտուրական կյանքի լուսաբանմանը։ Շրջանային տպարանը, որտեղ տպագրվում է շրջանային թերթը, վերջին երկու տարում հարստացել է նոր մեքենաներով ու սարքավորումներով։ Վերջերս Լենինգրադից ստացվել և արդեն տեղադրվել են նոր սիստեմի երկու տողաշար մեքենաներ։

Եթե առաջ մարդիկ գաղափար չունեին ռադիոբարձրախոսի կամ ռադիոընդունիչի մասին, ապա այժմ շրջանի աշխատավորների բնակարաններում, փողոցներում, հասարակական շենքերում ու հասարակական վայրերում կա շուրջ 4 հազար ռադիոբարձրախոս, տարբեր սիստեմի 3 հազար ռադիոընդունիչ, մոտ 300-ի հասնող հեռուստացույց։ Այգեզարդ, Նորաշեն, Մխչյան, Ն. Դվին, Լուսակերտ և Բարձրաշեն գյուղերն ունեն ռադիոհանգույցներ։

Դաշնակցության արյունալի տիրապետության օրոք ամբողջ շրջանում կար միայն մեկ բժիշկ և երկու միջին բժշկական աշխատող, բայց ոչ մի հիվանդանոց և ծննդատուն։ Ներկայումս շրջանում գործում են 5 հիվանդանոց և 15 ծննդատուն՝ 240 մահճակալով, 31 բուժարան և բժշկական կետ՝ իրենց տարբեր մասնագիտական կաբինետներով. այստեղ աշխատում են 42 բժիշկ և 205 միջին ու կրտսեր բուժաշխատողներ։ 14 կոլտնտեսություններ կառուցել են իրենց բաղնիքները։ Այդ ամենի շնորհիվ բարելավվել է բնակչության բուժսպասարկումը և սանիտարական դրությունը։ Իսպառ վերացվել է շրջանի համար անցյալներում չարիք հանդիսացող մալարիա հիվանդությունը, նվազել է մահացությունը, ավելացել է ծնունդը։ Եթե 1940 թվականին բնակչության յուրաքանչյուր 1000 մարդուն ընկնում էր 44,8 ծնունդ, ապա 1957 թվականին ընկնում է մոտ 50 ծնունդ։ 1939 թվականի մարդահամարով Արտաշատի շրջանի (ներկա տերիտորիայով) բնակչության թիվը եղել է 38 հազար մարդ, իսկ այժմ՝ 57 հազար մարդ։

Բնակչության կուլտուրական առաջադիմության լավագույն վկայություններից մեկը մասսայական սպորտի ծավալումն է, որը մեծ նշանակություն ունի երիտասարդության ֆիզիկական դաստիարակության գործում։ Շրջանում գոյություն ունի «Կոլտնտեսական» սպորտային կամավոր ընկերությունը, որը կազմված է գյուղական 40 կոլեկտիվներից։ Այդ կոլեկտիվներում ընդգրկված են շուրջ 3 հազար պատանիներ ու աղջիկներ։ Գյուղական բոլոր սպորտային կոլեկտիվներն ունեն բազմաթիվ սեկցիաներ։ 1957 թվականին կառուցվել և շահագործման է հանձնվել 3 լողարան։ Առաջիկա երկու-երեք տարիներում այդպիսի լողարաններ կկառուցեն բոլոր կոլտնտեսությունները։

Շնորհիվ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ջերմ ու անդուլ հոգատարության, Արտաշատի շրջանը ընթանում է կուլտուրական վերելքի ուղիով։

# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԻՑ ՀԵՏՈ

Ն. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, պարտիայի մի
շարք քաղկոմներ ու շրջկոմներ, ցուցաբերելով սեփական նախաձեռնություն,
փոփոխված իրադրության համաձայն վերակառուցեցին պարտիական ապա-
րատի կառուցվածքը և ավելի կատարելագործեցին նրա աշխատանքի ձևերն
ու մեթոդները։ Այդ ուղղությամբ աշխատանքի լավ օրինակ դրսևորեց Լատ-
վիայի Կոմունիստական պարտիայի Ելգավայի քաղաքային կոմիտեն։ Վերա-
կառուցելով իր ապարատը, քաղկոմը զգալիորեն բարելավեց իր աշխատանքը
և տվեց ուսանելի փորձ։ Մանրամասնորեն ուսումնասիրելով այդ փորձը, 1956
թվականի կեսերին Հայաստանի Կոմպարտիայի Երևան քաղաքի Ստալինյան
շրջկոմը նույնպես ձեռնամուխ եղավ իր ապարատի աշխատանքի վերակա-
ռուցմանը։ 1956 թվականի սեպտեմբերի մեկից շրջկոմում վերացվեցին բա-
ժինները և բոլոր հրահանգիչները ամրացվեցին համապատասխան թվով
սկզբնական պարտիական կազմակերպությունների։
Այդ միջոցառումը մեծ չափով նպաստեց սկզբնական պարտիական կազ-
մակերպությունների և շրջկոմների հրահանգիչների դերի ու պատասխանա-
տվության բարձրացմանը։ Այժմ ամեն մի հրահանգիչ անմիջականորեն զբաղ-
վում է այն բոլոր հարցերով, որոնք դրված են նրան ամրացված սկզբնական
պարտիական կազմակերպությունների առջև։ Հենց դա էլ հնարավորություն
է տալիս, որպեսզի հրահանգիչը բազմակողմանիորեն ներթափանցի պար-
տիական կազմակերպությունների աշխատանքի մեջ, ժամանակին մատնա-
ցույց անի եղած թերությունները, օգնի դրանց վերացմանը և տեղում կազմա-
կերպական անհրաժեշտ աշխատանք ծավալի՝ պարտիական-քաղաքական,
պարտիական-կազմակերպական աշխատանքը բարելավելու համար։ Կյանքը
ցույց է տալիս, որ աշխատանքի նման ձևն ավելի է ամրացնում շրջկոմի կեն-
դանի կապը սկզբնական պարտիական կազմակերպությունների և աշխատա-
վորական լայն մասսաների հետ։
Պարտիայի շրջկոմի աշխատանքի վերակառուցումը և բաժինների վերա-
ցումը նոր պահանջներ առաջադրեցին նաև շրջկոմի միասնական պարտ-
սեկտորի աշխատողների առջև։
Ամենից առաջ անհրաժեշտություն զգացվեց նրանց միջոցով շրջկոմի հրա-
հանգիչներին թեթևացնել ավելորդ գրագրություններից, որպեսզի նրանք
ավելի շատ զբաղվեն ստեղծագործական, կենդանի աշխատանքով։ Մինչև
շրջկոմի ապարատի վերակառուցումը, շրջկոմի կազմակերպական բաժնի հրա-
հանգիչների աշխատանքի ժամանակի մի զգալի մասը հատկացվում էր պար-
տոմսերի և պարտիական վիճակագրության
տիայի շարքերի ընդունելության գործերի, նրանց փաստաթղթերի ու այդ առ-

թիվ սկզբնական պարտիական կազմակերպությունների որոշումների ստուգմանն ու շրջկոմի բյուրոյի որոշման նախագծերի կազմմանը, ինչպես նաև մի շարք վիճակագրական հաշվետվությունների համար տվյալների հավաքմանն ու ամփոփմանը:

Շրջկոմի ապարատի վերակառուցումից հետո այդ աշխատանքների մեծ մասը դրվեց շրջկոմի միասնական պարտիական տոմսերի և պարտիական վիճակագրության սեկտորի աշխատողների վրա: Այժմ պարտիայի շարքերն ընդունվողների գործերով անմիջականորեն զբաղվում է այդ սեկտորը:

Պարտիայի շրջկոմի ապարատի վերակառուցումից հետո շրջկոմը սկզբնական պարտիական կազմակերպություններից ստացել է ընդունելության 450 գործ: Սկզբնական պարտիական կազմակերպություններից ստանալով այդ գործերը, միասնական պարտիական տոմսերի և պարտիական վիճակագրության սեկտորի աշխատողները հանգամանորեն ուսումնասիրում են սկզբնական կազմակերպությունների որոշումները, ընդունելության համար տրված փաստաթղթերը, նրանց գրանցման ճշտությունը: Այդ բոլորը մանրակրկիտ ստուգելուց հետո սեկտորն ընդունելության գործը ներկայացնում է շրջկոմի քարտուղարին՝ պարտիայի շարքերն ընդունվողի հետ զրույց ունենալու համար, որից հետո ընդունելության գործը լիովին ճշտված և պատրաստի վիճակում ներկայացվում է շրջկոմի բյուրոյի քննարկմանն ու հաստատմանը:

Աշխատանքի նման ձևը, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, զգալի չափով օգնում է պարտիայի շարքերի ընդունելության գործը ավելի բարելավելու և այդ ուղղությամբ նկատված թերությունները ժամանակին վերացնելու: Այս հանգամանքի վրա, որը չափազանց կարևոր է, նախքան շրջկոմի ապարատի վերակառուցումը անհրաժեշտ ուշադրություն չէր նվիրվում և դա ուներ իր պատճառը: Պետք է նկատի ունենալ, որ պարտիական շարքերի ընդունելության գործով շրջկոմում զբաղվում էին հրահանգիչները, կազմակերպական բաժնի վարիչը և վերջում՝ քարտուղարը: Այդպիսի բազմաստիճանությունը և գործի համար կոնկրետ պատասխանատվության բացակայությունը տեղիք էր տալիս ավելորդ քաշքշուկի:

Իսկ ներկայումս, երբ պարտիայի շարքերի ընդունելության գործերի վարումը դրված է շրջկոմի միասնական պարտիական տոմսերի և պարտիական վիճակագրության սեկտորի վրա, սեկտորի աշխատողները այն համարում են իրենց անմիջական աշխատանքի մի մասը և սիստեմատիկաբար հետևում են, որպեսզի սկզբնական պարտիական կազմակերպություններում և շրջկոմի բյուրոյում ժամանակին քննության առնվեն ընդունելության գործերը: Եթե նախքան շրջկոմի ապարատի վերակառուցումը պարտիայի շարքերի ընդունելության առանձին գործեր ամիսներ շարունակ չէին քննարկվում, ապա վերակառուցումից հետո, սեկտորի հետևողական աշխատանքի շնորհիվ, ընդունելության գործերը քննարկվում են ժամանակին: Օրինակ, 1956 թվականի հունվարի մեկից մինչև օգոստոսի մեկը սկզբնական պարտիական կազմակերպություններից ստացվել են պարտիայի շարքերն ընդունվելու 189 գործ, որոնցից 52-ը քննարկվել են մեկ ամիս ժամանակամիջոցում, 52-ը՝ երկու ամիս ժամանակամիջոցում, իսկ 85-ը՝ երեք և ավելի ամիս ժամանակամիջոցում:

Իսկ ինչպե՞ս է դրությունը այժմ, վերակառուցումից հետո: Այժմ այդ գործը որոշ չափով բարելավվել է: Ներկայումս շրջկոմում չկա ընդունելու-



թյան որևէ գործ, որ ստացված լինի երեք ամիս առաջ: Առ 20-ը փետրվարի 1958 թվականի շրջկոմում կա ընդունելության միայն 46 գործ, որոնք ստացվել են վերջին մեկ ու կես ամսում:

Ընդունելության գործի վարումը, իհարկե, միայն վերը նշածով չի սահմանափակվում: Երբ շրջկոմի բյուրոն հաստատում է այս կամ այն ընդունելության գործի վերաբերյալ սկզբնական պարտիական կազմակերպության որոշումը, սեկտորի աշխատողներն առանց ձգձգելու, սահմանված ժամանակին ձևակերպում են պարտիական փաստաթղթերը, որի շնորհիվ էլ պարտիայի շարքերն ընդունված ընկերները կարճ ժամանակամիջոցում ստանում են պարտիական տոմսերը կամ թեկնածուական քարտերը:

Շրջկոմի միասնական պարտիական տոմսերի և պարտիական վիճակագրության սեկտորի ուսումնասիրությունը և շրջկոմի բյուրոյի կողմից պարտիական շարքերի ընդունելության գործերի քննարկումը ցույց է տալիս, որ շրջանի մի շարք սկզբնական պարտիական կազմակերպություններ պատշաճ ուշադրություն չեն դարձնում այն բանի վրա, որպեսզի պարտիայի շարքերն ընդունվեն արդյունաբերական ձեռնարկությունների առաջավոր բանվորները, նորարարները և այն ընկերները, որոնք արժանի են իրենց վրա կրելու կոմունիստի բարձր ու պատվավոր կոչումը: Պարտիայի շարքերի աճման նկատմամբ լուրջ մոտեցում չցուցաբերելու մասին է ասում այն փաստը, որ 1957 թվականի ընթացքում սկզբնական պարտիական կազմակերպությունների կողմից պարտիայի անդամության թեկնածու ընդունվածներից 58 ընկերների ընդունելությունը շրջկոմի բյուրոն չի հաստատել:

Պարտիայի շարքերի ընդունելության գործի վրա անհրաժեշտ ուշադրություն չեն դարձնում հատկապես ռեզինա-տեխնիկական իրերի, մուլտ-ապակու, խրոմպիկ գործարանների սկզբնական պարտիական կազմակերպությունները: Հիշյալ պարտիական կազմակերպությունների բյուրոներն ու նրանց քարտուղարները անպարտիականների շրջանում անբավարար են կազմակերպում քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, նրանց չեն օգնում քաղաքականապես աճելու: Ահա թե ինչու այդ պարտիական կազմակերպությունների կողմից պարտիայի շարքերն ընդունված ընկերների մի զգալի մասը չունի անհրաժեշտ քաղաքական պատրաստություն, ծանոթ չէ պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության հարցերին, պարտիայի ու կառավարության որոշումներին, ինչպես նաև պարտիայի ծրագրին ու Կանոնադրությանը: Եվ բնավ էլ պատահական չէ, որ պարտշրջկոմի բյուրոն չի հաստատում այդպիսի ընկերներին պարտիայի շարքերն ընդունելու մասին սկզբնական պարտիական կազմակերպությունների որոշումները: Անցյալ տարվա ընթացքում միայն ռեզինա-տեխնիկական գործարանի պարտիական կազմակերպության կողմից պարտիայի անդամության թեկնածու ընդունված յոթ ընկերներից հինգի գործը պարտշրջկոմի բյուրոն չի հաստատել:

Պարտիայի շարքերի ընդունելության տվյալները միաժամանակ ցույց են տալիս, որ այդ ուղղությամբ խիստ անբավարար է կանանց շրջանում կատարվող աշխատանքը: Բավական է նշել, որ 1957 թվականին պարտիայի թեկնածու ընդունված 100 հոգուց միայն տասներկուսն են կին: Այդ հանգամանքի վրա առանձնապես անբավարար ուշադրություն է նվիրվում նուրբ մահուդի, մահուդի, հրուշակեղեն-մակարոնի կոմբինատներում, պահածոների գործարանում, որտեղ աշխատող բանվորների մեծ մասը կանայք են:

Պարտշրջկոմի ապարատի վերակառուցումից հետո հիշյալ սեկտորի վրա է դրված նաև պարտիական անդամավճարների գանձման հաշվառման գործը։ Սեկտորի աշխատողները հետևում և ապահովում են սկզբնական պարտիական կազմակերպություններից անդամավճարների գանձման ամենամսյա հաշվետվությունների ստացումը։ Դա սեկտորի աշխատողներին օգնում է նաև կոմունիստների հաշվառման գործում։ Այսպես. ՍՄԿՊ անդամների և թեկնածուների հաշվառման մասին հրահանգի համաձայն շրջկոմը սկզբնական պարտիական կազմակերպությունների հետ կոմունիստների հաշվառման տվյալների համեմատումն ու ճշտումը կատարում է վեց ամիսը մեկ անգամ, մինչդեռ տվյալ ժամանակաշրջանում տեղի է ունենում մեծ թվով կոմունիստների տեղաշարժ՝ մի կազմակերպությունից մյուսը։ Շրջկոմում անդամավճարների ամենամսյա հաշվետվությունների ստացումը, որտեղ նշվում է կոմունիստների թիվը պարտիական կազմակերպության մեջ հաշվետու ամսի սկզբին և վերջին, հնարավորություն է տալիս ժամանակին իմանալ կոմունիստների կողմից կատարված տեղաշարժի մասին և ճշտել տվյալները։

Շրջկոմի ապարատի վերակառուցման հետևանքով սեկտորի աշխատողների կողմից վերոհիշյալ լրացուցիչ պարտավորությունների կատարումը չի նշանակում, որ նրանք դրանով պետք է թուլացնեն սեկտորի վրա դրված անմիջական պարտականությունների կատարումը։ Հակառակը, նրանք այդ աշխատանքները կատարում են զուգակցաբար։

Որպեսզի միասնական պարտիական տոմսերի և պարտիական վիճակագրության սեկտորի աշխատանքները հաջող ընթանան, անհրաժեշտ է, որ սեկտորի աշխատողները, ինչպես նաև սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարները լավ իմանան իրենց պարտականությունները կոմունիստների հաշվառման մասին։

Վերը նշեցինք, որ շրջկոմի ապարատի վերակառուցումից հետո զգալիորեն բարելավվել է պարտիայի շարքերի ընդունելության գործերի քննարկումը։ Բայց, չնայած դրան, այդ գործում դեռևս տեղ են գտնում քաշքշուկի ոչ քիչ դեպքեր։

Մեր շրջկոմում հաճախ ձգձգվում է նաև կոմունիստներին տրվող պարտիական տույժերի գրանցումը՝ նրանց հաշվառման քարտերում։ Դրա պատճառն այն է, որ պարտիայի Երևանի քաղկոմը առանձին դեպքերում ձգձգում է տույժերի գործերի քննարկումը, կամ այդ առթիվ իր որոշումները ուշ է ուղարկում շրջկոմ։

Պարտիայի քաղկոմների ու շրջկոմների ապարատի վերակառուցումը հրամայաբար պահանջում է ավելի օպերատիվ դարձնել պարտիական տոմսերի և վիճակագրության սեկտորների աշխատանքը։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՌԵՎՏՐԻ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՄԱՐ

**Ա. ՓԻՐՈՒԶՅԱՆ**

Վերջին տարիներում պարտիայի և կառավարության ձեռնարկած մի շարք կարևոր միջոցառումների շնորհիվ ամբողջ ժողովրդական տնտեսության հետ միասին վերելք է ապրում նաև սովետական առևտուրը։ Պարենային ու արդյունաբերական ապրանքների վաճառքը խիստ ավելացել է. որոշ ապրանքների գծով վաճառքն ավելացել է մինչև երկու, երեք և նույնիսկ ավելի անգամ։ Փոխվել է նաև պահանջարկի բնույթը։ Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հետևանքով սովետական գնորդը նոր հնարավորություններ ստացավ ընդարձակելու իր գնումների շրջանակը. Նա ամենաբազմապիսի ասորտիմենտի և բարձր որակի ապրանքների պահանջ է առաջադրում։

Ժողովրդի աճող պահանջարկի բավարարման համար կան բոլոր անհրաժեշտ պայմանները՝ պարենային ու արդյունաբերական ապրանքների անընդհատ ավելացում, սովետական ռուբլու գնողունակության աճ, բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձի և կոլտնտեսականների եկամուտների բարձրացում։ Ժողովրդի պահանջարկի բավարարման գործում իր վճռական դերն ունի կատարելու սովետական առևտուրը։

Սովետական առևտրի աշխատողները գործում են ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի նոր վերելքի համար մղվող պայքարի կարևոր և վերին աստիճանի պատասխանատու բնագավառում։ Բարձր կուլտուրա, գործիմացություն, ազնվություն և նախաձեռնություն աշխատանքում, ահա
Թե ինչ է պահանջվում առևտրի բնագավառի յուրաքանչյուր աշխատողից։

Վերջին ժամանակներս սոցիալիստական մրցության ընթացքում լայնորեն ծավալվել է գնորդներին գերազանց սպասարկելու շարժումը, որը ջերմորեն դիմավորեց մեր ժողովուրդը։ Չնայած կատարված զգալի աշխատանքներին, կյանքը նոր պահանջներ է առաջադրում, որոնց իրականացման համար առև-
տրի աշխատողները պետք է լարեն իրենց ուժերն ու եռանդը։

Այժմ, ավելի քան երբեէ, կենսականորեն անհրաժեշտ է, որպեսզի սովետական առևտուրը արագ կատարելագործվի, զարգանա, իսկ նրա աշխատողները միշտ լինեն իրենց ներկայացվող պահանջների բարձրության վրա։ Իսկ այդ պահանջներն անընդհատ աճում են։ Այն, ինչ դեռ երեկ գնորդին
գոհացնում էր, այսօր բավարար չի թվում։ Աշխատավորները լիովին իրավունք ունեն պահանջելու կուլտուրական և որակյալ սպասարկում։ Նրանք ցանկանում են խանութներում տեսնել ուշադիր վերաբերմունք դեպի իրենց պահանջներն ու ճաշակը։ Նրանք ցանկանում են, որ վաճառողը զգայուն խորհրդատու լինի։

Այս օրինական պահանջների բավարարումը սովետական գնորդների սպասարկումը ճիշտ կազմակերպելու հիմքն է։ Առևտրի աշխատողներն իրենց

միջավայրում պարտավոր են դուրս մղել այն, ինչ պիտանի չէ, իրենց քննադատությունն ուղղել նրանց դեմ, ովքեր անփույթ են վերաբերվում սովետական գնորդի հետ, ովքեր իրենց կոպիտ ու անկուլտուրական են պահում վաճառասեղանի մոտ։ Ցավոք սրտի, դեռևս շատ են այնպիսի աշխատողները, որոնք չեն գտնվում պահանջվող բարձրության վրա։

Մեր շահերը պահանջում են, որ սովետական առևտուրն ավելի արագ զարգանա ու կատարելագործվի։ Իսկ դրա համար անհրաժեշտ է ուշի-ուշով ուսումնասիրել քաղաքների ու շրջանների պահանջները, որպեսզի լավագույն ձևով բավարարվեն դրանք։ Ժամանակն է վճռականապես վերջ տալու մեխանիկական պլանավորմանն ու ապրանքների չմտածված ներմուծումներին, և այնպես անել, որ բավարարվեն բնակչության հարաճուն պահանջներն ամենաբազմապիսի ապրանքների նկատմամբ։ Պետք է հաշվի առնել և՛ սեզոնային պահանջները, և՛ այս կամ այն շրջանում ապրանքների ասորտիմենտի նկատմամբ եղած կոնկրետ պահանջները։

Ապրանքային մասսայի անհամաչափ տեղաբաշխման պատճառներից մեկը գնորդների պահանջները խորությամբ չուսումնասիրելն է, դրանց վատ իմանալը։ Դեռ քիչ չեն այնպիսի առևտրական կազմակերպությունները, որոնց ղեկավարները հնացած պատկերացում ունեն սպառողական պահանջի մասին։ Նրանք կարծում են, թե ամեն մի ապրանք, թեկուզ և վատորակ, կարելի է վաճառել։ Սակայն կյանքը դաժանորեն ուղղում է այդ հետամնաց ղեկավարներին. ապրանքակույտ լինելով՝ նրանք սկսում են ստեղծված դժվարին դրությունից դուրս գալու ելք որոնել, որովհետև գնորդը, բնականաբար, անորակ, վատ պատրաստված ապրանքները չի վերցնում։ Այսպես թե այնպես այդպիսի ղեկավարներն իրենք իրենց են մերկացնում. հասարակայնության աչքում նրանք ներկայանում են որպես ոչ պիտանի, իրենց հանձնարարված գործը չհասկացող և չգլխավորող մարդիկ։

Այդպիսի աշխատողների մեղքով ներկայումս խանութներում կուտակվել են զգալի քանակությամբ վատորակ ապրանքներ, որոնք չեն համապատասխանում բնակչության պահանջներին։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XX համագումարը կոնկրետ ուղիներ նշեց սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի համար մղվող պայքարում նորանոր հաջողությունների հասնելու համար։

Արդյունաբերության ու գյուղատնտեսության շեշտակի վերելքը նյութական բազա ստեղծեց սովետական առևտրի ծավալման համար։

ՍՍՌՄ Վիճակագրական վարչության հաղորդման համաձայն 1957 թվականին լայն սպառման ապրանքների արտադրությունն զգալիորեն աճել է։ Արտադրանքի թողարկումը 1956 թվականի համեմատությամբ կազմում է. մսինը՝ 115 տոկոս, երշիկեղենինը՝ 113 տոկոս, կենդանական յուղինը՝ 118 տոկոս, մակարոնեղենինը՝ 111 տոկոս, բամբակյա գործվածքներինը՝ 103 տոկոս, բրդյա գործվածքներինը՝ 105 տոկոս, փուշե գործվածքներինը՝ 107 տոկոս, մետաքսինը՝ 107 տոկոս, կաշվե կոշկեղենինը՝ 110 տոկոս, կենցաղային սառցարաններինը՝ 138 տոկոս, կենցաղային լվացքի մեքենաներինը՝ 193 տոկոս և այլն։

Մեր երկրի էկոնոմիկայում տեղի ունեցած. տեղաշարժերի հետևանքով աճել է նաև մանրածախ ապրանքաշրջանառությունը։

Վեցերորդ հնգամյա պլանի համաձայն մանրածախ ապրանքաշրջանառու-



թյունն աճելու է 50 տոկոսով։ 1956 և 1957 թվականների փաստական տվյալները ցույց են տալիս, որ հնգամյակի այս առաջադրանքը հաջողությամբ իրականացվում է։

Դա վերաբերում է նաև մեր ռեսպուբլիկայի առևտրին։

Եթե 1928 թվականից մինչև 1956 թվականը ՍՍՌՄ-ում ապրանքաշրջանառությունը աճել է միջին հաշվով 46 անգամ (ընթացիկ գներով), ապա Հայկական ՍՍՌ-ում այն աճել է 87 անգամ։

Ռեսպուբլիկայում 1957 թվականի ապրանքաշրջանառության պլանը կատարված է 109,1 տոկոսով։ 1957 թվականի փաստական ապրանքաշրջանառությունը, 1956 թվականի համեմատությամբ, աճել է 16 տոկոսով կամ 562 միլիոն ռուբլով։

Առևտրի վիճակը բնորոշվում է ո՛չ միայն ապրանքաշրջանառության աճով, այլև ապրանքաշրջանառության կառուցվածքի խիստ փոփոխմամբ։ Այդ մասին են վկայում բնակչությանը որոշ ապրանքներ վաճառելու վերաբերյալ եղած մի շարք տվյալները։

Հենց միայն 1957 թվականին ռեսպուբլիկայի բնակչությանը վաճառված է 6500 սառցարան, 8800 լվացքի մեքենա, 30300 ռադիոընդունիչ և հեռուստացույց, 15000 կարի մեքենա։

1956 թվականի համեմատությամբ, 1957 թվականին բնակչությանը ապրանքների վաճառքը կազմել է. միս՝ 138,2 տոկոս, երշիկեղեն՝ 136,4 տոկոս, կենդանական յուղ՝ 165,6 տոկոս, շաքար՝ 116,7 տոկոս, բամբակյա գործվածքեղեն՝ 106,2 տոկոս, բրդյա գործվածքեղեն՝ 117,1 տոկոս, պատրաստի հագուստ՝ 148,4 տոկոս, տրիկոտաժ՝ 154,3 տոկոս, կաշվե կոշկեղեն՝ 151,5 տոկոս, կարտոֆիլ՝ ավելի քան 4 անգամ, կամ 20 հազար տոննայից ավելի։

Ներկայումս մեր երկիրը բոլոր հնարավորություններն ունի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն արագ թափով զարգացնելու համար։ 1958 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, նախատեսված է մանրածախ ապրանքաշրջանառության աճ՝ 190 միլիոն ռուբլու չափով։ 1957 թվականի համեմատությամբ, 1958 թվականին կաթի ու կաթնամթերքի վաճառքը կկազմի 117,8 տոկոս, մսինը՝ 120 տոկոս, պանրինը՝ 142,3 տոկոս, երշիկեղենինը՝ 138,6 տոկոս, բրդյա կտորեղենինը՝ 113,3 տոկոս, կարած հագուստեղենինը՝ 130,8 տոկոս, կաշվե կոշկեղենինը՝ 106,2 տոկոս, կարի մեքենաներինը՝ 120 տոկոս և այլն։

Գնորդների սպասարկման գործը բարելավելու նպատակով առևտրական կազմակերպությունները 1957 թվականին իրականացրին առևտրի նոր, ավելի պրոգրեսիվ ձևեր։ Ճաշարանների 80 տոկոսից ավելին անցան ինքնասպասարկման, որն զգալիորեն արագացրեց ու բարձրացրեց նրանց թողունակությունը։

Բացվել են ինքնասպասարկման 15 խանութ։ Մի շարք խանութներում գնորդների հետ կատարվող հաշվումները փոխադրվել են աշխատատեղը, որն ավելի հարմար է գնորդի համար։

Քսանհինգ խանութներում և բաժանմունքներում կիրառվում է ապրանքների բաց դասավորում, որը գնորդին հնարավորություն է տալիս անմիջականորեն ընտրել իր ցանկացած ապրանքը։ Տասնմեկ խանութներում կազմակերպված է փաթեթավորված ապրանքների առևտուր և հատավաճառք։ Օդեկոլոնի վաճառքի համար տեղադրված են ավտոմատներ։

Սկսված է հացի և կաթի փոխադրում գնորդների տները, կազմակերպված է գնորդների սպասարկում՝ նախնական պատվերների սեղանների միջոցով։ Ինքնասպասարկման մեթոդը լայնորեն ծավալվել է առևտրական ձեռնարկություններում։ Մի շարք ձեռնարկություններ արժանացել են համամիութենական մրցանակների։

Խոշոր աշխատանք է կատարված նաև առևտրական ցանցի ընդարձակման ուղղությամբ։ Անցած տարում բացվեցին առևտրի ու հասարակական սննդի 104 նոր ձեռնարկություն։ Հատուկ ուշադրություն դարձվեց առևտրական ցանցի մասնագիտացմանը և նորագույն առևտրա-տեխնոլոգիական ու սառցարանային սարքավորումներով ապահովելուն։ Հենց միայն սառցարանային սարքավորումն ավելացվել է մինչև 50 տոկոսով կամ 400 միավորով, տեխնոլոգիական սարքավորումը՝ 11190 միավորով և այլն։

Ռեսպուբլիկայում առաջին անգամ բացվել են երկու ավտոմատ-նախաճաշարան և մեկ կաֆե-ավտոմատ, որտեղ տեղադրված են սառն ու տաք նախաճաշերի 37 ավտոմատ, գարեջրի 8 ավտոմատ և զովացուցիչ ջրերի 8 ավտոմատ։

Այս տարի հենց միայն պետական առևտրի գծով բացվելու է առևտրի ու հասարակական սննդի 143 նոր ձեռնարկություն։

Սակայն պետական ու կոոպերատիվ առևտրի ծավալման գործում ձեռք բերված հաջողություններն ամենևին չեն բավարարում ռեսպուբլիկայի աշխատավորների աճող պահանջները։

Հայաստանի կոմպարտիայի վերջերս կայացած XIX համագումարը ռեսպուբլիկայի առևտրի աշխատողների առջև նորանոր խնդիրներ դրեց առևտրի հետագա զարգացման ու կատարելագործման ուղղությամբ։ Առանձնապես նշվեց առևտրական ցանցի ընդարձակման և այն նորագույն սարքավորումով հագեցնելու, հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատանքի բարելավման և առևտրի կուլտուրայի բարձրացման կարևորությունը։ Խնդիր է դրված արագացնել առևտրի նոր ձևերի ու գնորդների սպասարկման մեթոդների արմատավորումը, ինչպիսիք են՝ ինքնասպասարկման նոր ձեռնարկությունների բացումը, հացը, կաթը և այլ մթերքներ տուն տանելը, կիսաֆաբրիկատների ու մթերքների հավաքածոների վաճառքը, սպասարկումը նախնական պատվերի սեղանների միջոցով, վաճառքը սալոններում առանց վաճառասեղանի, ապրանքների վաճառքը վաճառասեղանների վրա բաց դասավորումով, ըստ նմուշների և այլն։

Առևտրի սպասարկման այս պրոգրեսիվ ձևերի արմատավորումը կրճատում է շրջանառության ծախսերն առևտրի մեջ, տնտեսական մեծ արդյունք է տալիս և բարելավում է առևտրի կուլտուրան։

Արդեն աշխատանք է սկսված ՀԿՊ XIX համագումարի որոշումների կատարման ուղղությամբ։ Ընթացիկ տարում հենց միայն պետական առևտրի գծով կապիտալ ներդրումները (այդ թվում ի հաշիվ բանկային վարկի), անցյալ տարվա համեմատությամբ, աճելու են 50 տոկոսով։ Մեծ ուշադրություն է հատկացվելու առևտրական ցանցի հետագա զարգացմանը։ Լրացուցիչ բացվելու են երեք կաֆե-ավտոմատ և երեք ավտոմատ-նախաճաշարան, որտեղ տեղադրվելու են սառն ու տաք նախաճաշերի, հյութերի, պաղպաղակի, գարեջրի, զովացուցիչ ջրերի և այլ մթերքների վաճառման 225 ավտոմատ։ Բացի դրանցից տեղադրվելու են 20 ավտոմատ՝ հատով ապրանք վաճառելու համար,



20 ավտոմատ՝ կոնֆետի վաճառքի համար, 20 ավտոմատ՝ դպրոցական տետրերի, 40 ավտոմատ՝ մատիտների վաճառքի, 40 ավտոմատ՝ գլանակի ու սիգարետի և 40 ավտոմատ՝ լուցկու վաճառքի համար։

Ընդարձակվելու և զգալի չափերով բարելավվելու է թարմ բանջարեղենի, մրգեղենի ու կարտոֆիլի վաճառքի ցանցը։

Կրկնապատկվելու է սառցարանային տնտեսությունը։ Մեծ չափով ավելանալու է նաև առևտրական ցանցի հագեցումը առևտրական ու տեխնոլոգիական սարքավորումով։

Սովետական առևտրի հետագա ծավալումը պահանջում է զգալիորեն բարելավել արդյունաբերական ձեռնարկությունների և մեծաքանակ վաճառքի կազմակերպությունների աշխատանքը։ Շատ արդյունաբերական ձեռնարկություններ դեռևս ցածրորակ ապրանքներ են արտադրում։

Սա, առաջին հերթին, վերաբերում է հացին. Երևանի Քաղսովետի հացի թխման կազմակերպությունները շարունակում են հաճախ ցածրորակ և խիստ սահմանափակ ասորտիմենտի հաց արտադրել։ Շարունակվում են նաև հացը խանութները հասցնելու գրաֆիկի կոպիտ խախտումները։

Ժողտնտխորհի մսի ու կաթի արդյունաբերության վարչության Երևանի միսկոմբինատը ցածրորակ երշիկեղեն է արտադրում։ Համարյա չի արտադրվում կիսաապխտած և լրիվ ապխտած երշիկ, որի պահանջը խիստ մեծ է։

Երևանի կաթի գործարանը չի ապահովում մածունի թողարկումը մանր ամաններով, բաժակներով թողարկվող մածունի որակը ցածր է, փաթեթավորումն անորակ։ Գործարանը չի ապահովում նաև սերի, կեֆիրի, ացիդոֆիլինի, հում սերի, պանրիկի և այլ կաթնամթերքների կանոնավոր թողարկումը, որը և գնորդների արդարացի բողոքն է առաջացնում։

Շահումյանի շրջանի լիմոնադի գործարանը սահմանված 16 սորտի փոխարեն ընդամենը հինգ սորտի լիմոնադ է արտադրում։

Քիչ չեն անորակ մակարոնեղենի ու հրուշակեղենի և, առանձնապես, անորակ կահույքի թողարկման դեպքերը։

Երևանի ու Լենինականի աշխատավորները առևտրական կազմակերպություններին իրավացիորեն կշտամբում են նրա համար, որ նրանք բազմազան ասորտիմենտով սեզոնային ապրանքներ չեն ունենում։

Անցյալ տարվա գարնան-ամառային սեզոնի համար առևտրական կազմակերպություններն անհրաժեշտ պատրաստի հագուստեղենով լրիվ ապահովված չէին։ Խանութներում գրեթե չկային տղամարդու և կանացի ամառային վերարկուներ, տղամարդու և տղայի վուշե ու պարուսինե կիտելներ, տրիկոտաժի սպիտակեղեն, լավորակ մետաքսե վերնաշապիկներ։ Շատ սահմանափակ է մանկական հագուստեղենի և, մանավանդ, կանացի կոշկեղենի ասորտիմենտը։

Հայարդխորհրդի և տեղական արդյունաբերության ձեռնարկությունները հարկ եղած ուշադրություն չեն դարձնում կենցաղային սպասարկման առարկաների արտադրության վրա։ Չնայած խոշոր հնարավորությունների առկայությանը՝ լավորակ մանկական խաղալիքներ քիչ են արտադրվում։

Լրջորեն ուսումնասիրելով սպառողների պահանջը՝ առևտրական կազմակերպությունները պարտավոր են կազմակերպված ու պլանային կարգով ներգործել արդյունաբերական ձեռնարկությունների վրա՝ արտադրվող ապրանքների ասորտիմենտի ընդարձակման և որակի բարելավման համար։ Վա-

տորակ ապրանք արտադրելու դեպքում ապրանքների որակի պետական տեսչության վարչությունը պետք է խիստ կերպով ներգործի արդյունաբերական ձեռնարկության վրա՝ ընդհուպ մինչև նրա փակելը, իսկ առևտրական կազմակերպությունները ու մեծաքանակ վաճառքի բազաները այդպիսի ապրանքներ չպետք է ընդունեն վաճառքի համար։

Մեր ռեսպուբլիկայում համարյա ոչ մի ուշադրություն չի դարձվում ազգային ասորտիմենտի ապրանքների և հուշանվերների արտադրության վրա, թեև լայն հնարավորություններ կան այդպիսի ապրանքների արտադրությունը կարգավորելու համար։ Այդ նպատակով պետք է օգտագործել ագատի, հասպիսի, օբսիդաքարի, մեղեսիկի և այլ քարերի հարուստ հանքերը, որոնցից կարելի է բազմապիսի մանր իրեր պատրաստել։

Ռեսպուբլիկայի մեծաքանակ վաճառքի բազաներն ամենևին չեն զբաղվում տեղական ու կոոպերատիվ արդյունաբերության ձեռնարկություններում ապրանքների նոր տեսակներ արմատավորելու հարցով։

Մեծաքանակ վաճառքի բազաների կապը արդյունաբերական ձեռնարկությունների հետ և պահանջկոտությունը նրանց նկատմամբ թույլ է, նրանք վատ են վերահսկում թողարկվող արդյունաբերական ապրանքների որակն ու ասորտիմենտը։

Պլանավորման նոր կարգը, արդյունաբերության կառավարման վերակառուցումը և ժողտնտխորհների ստեղծումը ռեսպուբլիկական օրգանների վրա մեծ պատասխանատվություն են դնում բնակչությանը պարենային ու արդյունաբերական ապրանքների, մասնավորապես, մսեղենի ու կաթնամթերքի, բանջարեղենի ու մրգեղենի մատակարարման գործում։

Հայկական ՍՍՌ Ժողովրդական տնտեսության խորհուրդը և նրա ճյուղային վարչությունները պետք է սիստեմատիկորեն զբաղվեն սննդամթերքների ու արդյունաբերական ապրանքների ասորտիմենտի ու որակի բարելավման կոնկրետ հարցերով։ Սա մեր ռեսպուբլիկայի քաղաքի ու գյուղի գնորդների հրամայական պահանջն է։

Ռեսպուբլիկայի առևտրական կազմակերպությունները շուկա հանվող ժողովրդական սպառման ապրանքների որակի ու ասորտիմենտի հարցերում պետք է հետևողական պահանջկոտություն և սկզբունքայնություն հանդես բերեն։

Բնակչության պահանջը լիովին բավարարելու գործում էական նշանակություն ունի կոլտնտեսային առևտրի միջոցով գյուղատնտեսական մթերքների լրացուցիչ ռեսուրսների ներգրավումը։ Աշխատավորների դեպուտատների քաղաքային ու շրջանային Սովետների գործկոմները պարտավոր են ամեն կերպ ընդարձակել և բարելավել կոլտնտեսային առևտուրը։

Անհրաժեշտ է սերտ կապ հաստատել ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների հետ և աջակցել նրանց՝ կոլտնտեսային շուկաները փոխադրել ու վաճառել իրենց ունեցած գյուղատնտեսական մթերքների ավելցուկը, ամենուրեք զարգացնելով այդ մթերքների կոմիսիոն առևտուրը։

Սովետական առևտրի կուլտուրայի բարձրացումը, ասորտիմենտի ընդարձակումը և լայն սպառման ապրանքների որակի բարձրացումը պետական խոշոր կարևորություն ունեցող խնդիր է։

Այս գործում խոշոր դեր կարող են խաղալ քաղաքային ու շրջանային Սովետների առևտրի և հասարակական սննդի մշտական հանձնաժողովները։



Շատ բան կարող են անել նաև արհմիությունները, որոնք հասարակական վերահսկողություն են կազմակերպում խանութների, ճաշարանների, բուֆետների ու կրպակների աշխատանքի նկատմամբ։ Նրանք հատկապես մեծ դեր ունեն խաղալու այդ օբյեկտների սանիտարական վիճակին հսկելու և այն բարելավելու գործում։

Առևտրի բարելավման գործում հսկայական նշանակություն ունի առևտրի ու հասարակական սննդի աշխատողների սոցիալիստական մրցությունը գնորդների գերազանց սպասարկման համար։

Առևտրի աշխատողները, պետական առևտրի ու սպառկոոպերացիայի աշխատողների պրոֆմիության ռեսպուբլիկական կոմիտեն, տեղական Սովետների առևտրի բաժինները, քաղսովետների գործկոմների առևտրի վարչությունները պետք է լայնորեն տարածեն ու մասսայականացնեն առևտրի առաջավորների փորձը, մրցության մեջ ներգրավեն վաճառասեղանի, հասարակական սննդի ձեռնարկությունների աշխատողներին։

Առևտրի սիստեմում մարդկանց մեծաթիվ քանակ է աշխատում։ Այս իսկ տեսակետից սովետական առևտրի հետագա զարգացման և առևտրական ապարատի աշխատանքի կուլտուրայի բարձրացման համար կարևորագույն նշանակություն ունի կադրերի ճիշտ ընտրությունը, հանձնարարված գործի նկատմամբ նրանց պատասխանատվության բարձր զգացումով դաստիարակելու հոգատարությունը։

Վեցերորդ հնգամյա պլանով ռեսպուբլիկայի առևտրական կազմակերպությունների առջև խոշոր խնդիրներ են դրված։

Ապրանքաշրջանառությունն աճելու է 50 տոկոսով, իսկ հասարակական սննդի ձեռնարկությունների շրջանառությունը՝ 75 տոկոսով։ Մանրածախ առևտրի ցանցն աճելու է 10 տոկոսով, իսկ հասարակական սննդի ձեռնարկությունների ցանցը՝ 60 տոկոսով։ Կապիտալ ներդրումներն Առևտրի մինիստրության սիստեմում կաճեն ավելի քան 2 անգամ։ Շրջանառության ծախսերը կրճատվելու են 17 տոկոսով։

Դրա համար առևտրի աշխատողները մեր երկրի բոլոր աշխատավորների հետ միասին պետք է ավելի ակտիվորեն մասնակցեն համաժողովրդական սոցիալիստական մրցությանը, ձգտեն գերակատարել ապրանքաշրջանառության, ծախսերի իջեցման պլանները, կատարելագործեն գնորդներին սպասարկելու ձևերն ու մեթոդները։

Առևտրի աշխատողների պատվի գործն է՝ առաջիկայում էլ անդադրում զարգացնել սովետական առևտուրը, բարձրացնել նրա կուլտուրան, ավելի լավ բավարարել սովետական մարդկանց հարաճուն պահանջները։

## ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԸ ՎԵՐԱԿԱԶՄԵԼՈՒ ՀԱՐՑԻ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՈՒՄԸ

# ԽՈՇՈՐ ՔԱՅԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Ախուրյանի շրջանը ռեսպուբլիկայի դաշտավարական և անասնաբուծական խոշոր շրջաններից մեկն է։ Նա քիչ հաջողություններ ձեռք չի բերել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման բնագավառում։ Վերջին չորս տարում շրջանում հացահատիկի արտադրությունն ավելացել է 38 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 65 տոկոսով։ Զգալիորեն ավելացել է նաև կարտոֆիլի և բանջարանոցային կուլտուրաների արտադրությունը։ Կոլտնտեսականների ջանասեր աշխատանքի շնորհիվ հաղթահարվեց նաև անասնաբուծության հետ մնալը։ Այդ նույն ժամանակաշրջանում կաթի արտադրությունն ավելացել է 2,2 անգամ, մսինը՝ 50 տոկոսով, բրդինը՝ երկու անգամ և այլն։ Անբաժանելի դրամական ֆոնդը ավելացել է 11,5 միլիոն ռուբլով, կոլտնտեսությունների դրամական եկամուտները՝ երկու անգամ։*

*Կոլտնտեսային կարգի ստեղծման ու ամրապնդման, նրա մեքենայական զինվածության, բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի ամրապնդման գործում հսկայական դեր խաղացին ՄՏ կայանները։ Պետության և պարտիայի ձեռքում ՄՏ կայանները եղան այն հզոր ուժը, որի օգնությամբ իր հետագա արագ զարգացումն ապրեց սոցիալիստական գյուղատնտեսությունը։ ՄՏ կայանների շնորհիվ պատրաստվեցին կոլտնտեսային ու մեխանիզատորական լավագույն կադրեր։*

*Ախուրյանի շրջանում ՄՏ կայան կազմակերպվել է 1931 թվականին, իսկ 1940 թվականին այն բաժանվել է երկու ՄՏ կայանի՝ Ախուրյանի ու Ղարիբջանյանի։ Շիրակցիները դեռ լավ են հիշում անիվավոր տրակտորը, որն առաջինը հերկեց Շիրակի կուսական հողի կուրծքը և վերացրեց արորն ու միխոփանի գութանը։ Այդ ժամանակից շատ տարիներ չեն անցել, սակայն այժմ մեր շրջանի ՄՏ կայանները զինված են հայրենական տեխնիկայի վերջին խոսքով։ Բավական է ասել, որ 1953 թվականից հետո շրջանի ՄՏ կայանները ստացել են 80 տրակտոր, 72 հացահատիկային ու եգիպտացորենի կոմբայն, մեծ քանակությամբ շարքացաններ և կցվող գործիքներ։ Ներկայումս կոլտնտեսային դաշտերին սպասարկում են 245 տրակտոր (15 ձիու ուժ միավորով), 80 հացահատիկային և եգիպտացորենի կոմբայն, 87 հացահատիկային շարքացան և բազմաթիվ կցվող գործիքներ։ Վերջին 3—4 տարում կոլտնտեսությունները ստացել են ավելի քան 100 բեռնատար ավտոմեքենա։ Շրջանում գյուղատնտեսական հիմնական աշխատանքների 90 տոկոսը ենթարկված է մեքենայացման, բոլոր գյուղերն ունեն էլեկտրական լուսավորություն։*

*Ներկա պայմաններում, երբ կոլտնտեսությունների մեծամասնությունը կազմակերպական-տնտեսական տեսակետից ամրապնդվել է, ՄՏ կայանների միջոցով կոլտնտեսությունների արտադրա-տեխնիկական սպասարկման գո-*



*յություն ունեցող ձևը այլևս չի համապատասխանում գյուղատնտեսության արտադրական ուժերի զարգացման պահանջներին։ Կարելի է բերել առանձին փաստեր, երբ ՄՏ կայանները փափուկ վարի պլանը կատարելու համար ավելորդ ու ոչ արդյունավետ աշխատանքներ են կատարում և ծանրաբեռնում կոլտնտեսություններին։ Շատ հաճախ վեճեր են ծագում ՄՏ կայանների և կոլտնտեսությունների աշխատողների միջև վարի խորության, կոմբայնով հունձը բարձրից կատարելու, մեքենաների և գործիքների պահպանման և այլ հարցերի ուղղությամբ։ Դեռևս 1954 թվականին ՄՏ կայանները ստացան կաղամբի սածիլ տնկող մեքենաներ։ Դրանք բոլորովին չօգտագործեցին և տե-ղամբի սածիլ տնկող մեքենաներ։ Դրանք բոլորովին չօգտագործվեցին և տեվնաս են հասցնում պետությանը։*

*Կոլտնտեսությունները տնտեսապես և կազմակերպորեն ամրապնդելը, նրանց անբաժանելի դրամագլխի զգալի աճը, կոլտնտեսություններում որակյալ դաշտավարական, անասնաբուծական, մեխանիզատորական կադրերի և փորձված ղեկավարների առկայությունը հնարավորություն են տալիս հմտորեն օգտագործել ժամանակակից տեխնիկան և գիտության նվաճումները։ Այսպես, օրինակ, մեր շրջանի կոլտնտեսությունների վարչությունների նախագահների 76 տոկոսն ունեն բարձրագույն, թերի բարձրագույն կրթություն։ Գրեթե բոլոր կոլտնտեսություններն ապահովված են մասնագետներով և մեխանիզատորական որակյալ կադրերով։ Շրջանի Ազատան, Արևիկ, Ախուրյան, Մարմաշեն, Առափի, Ոսկեհասկ, Հայկավան, Կառնառուտ, Կամո և մյուս գյուղերի կոլտնտեսություններում աշխատող մեխանիզատորները տվյալ կոլտնտեսությունների անդամներ են։ Երեկվա մասնագետների ու մեխանիզատորների կողքին այսօր աճել են երիտասարդ նոր կադրեր, որոնք տիրապետում են տեխնիկային և վարպետորեն օգտագործում այն։*

*Այս ամենի առկայության դեպքում մեր շրջանի 28 կոլտնտեսություններից 14-ը այժմ ի վիճակի են պետությունից գնելու տրակտորներ և գյուղատնտեսական ուրիշ մեքենաներ ու գործիքներ։ Դրանով պետք է բացատրել այն, որ շրջանի աշխատավորները ջերմ խանդավառությամբ ընդունեցին «Կոլտնտեսային կարգի հետագա զարգացման և մեքենա-տրակտորային կայանները վերակազմելու մասին» ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումի որոշումը և ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսները։ Ամենուրեք աշխատավորներն այդ որոշումը համարում են կոլտնտեսային կարգի նկատմամբ պարտիայի ու կառավարության մեծագույն հոգատարության մի նոր, վառ արտահայտություն։ Ազատանի, Ախուրյանի, Արևիկի, Մարմաշենի, Առափիի և մյուս գյուղերի կոլտնտեսականներն ու կոլտնտեսություններում աշխատող մեխանիզատորները, քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, նշում են, որ կոլտնտեսություններն իրենց տրամադրության տակ ունենալով գյուղատնտեսական մեքենաներ, անհամեմատ սեղմ ժամկետում և բարձր որակով կկատարեն վարը, ցանքը ու դաշտային մյուս աշխատանքները։*

*Այս միջոցառումների կիրառումը թելադրում է շրջանի երկու ՄՏ կայանները վերակազմել մեկ ՄՏ կայանի մեջ և նրա վրա դնել այն կոլտնտեսությունների դաշտերի մշակման ու մյուս աշխատանքները, որոնք առայժմ հնարավորություն չունեն պետությունից մեքենաներ գնելու։ Իսկ մյուս ՄՏ կայանը վերակազմել և դարձնել նորոգման տեխնիկական կայան, որի վրա դնել մեքենաների նորոգման, կոլտնտեսություններին պահեստամասեր, վառելիք,*

քսայուղեր, մետաղ, պարարտանյութեր, թունաքիմիկատներ և գյուղատնտե-
սական արտադրության համար անհրաժեշտ այլ նյութեր մատակարարելու
գործը:

Որպեսզի մեքենաներն աշխատանքի ընթացքում պարապուրդներ չտան,
պետք է ուժեղացնել կոլտնտեսությունների արհեստանոցները, որ դրանք ի
վիճակի լինեն առաջին անհրաժեշտության դեպքում կատարել նորոգման հա-
մապատասխան աշխատանքներ:

Կոլտնտեսություններում պետությունից գնած տրակտորներն ու մյուս
մեքենաներն անխափան աշխատեցնելու, կապիտալ շինարարություն կատա-
րելու, պարարտանյութ և գյուղատնտեսական ուրիշ անհրաժեշտ ապրանքներ
գնելու, կոլտնտեսային արտադրության հետագա արագ վերելքն ապահովելու
համար նպատակահարմար է, որ պետությունից գնվող մեքենաների արժեքը
կոլտնտեսությունները վճարեն 3—5 տարվա ընթացքում, ելնելով իրենց տըն-
տեսական ու ֆինանսական դրությունից:

Մինչև այժմ եղած փորձը ցույց է տվել, որ դաշտերն անորակ մշակելու
կամ ցածր բերք ստանալու դեպքում կոլտնտեսության դաշտավարական բրի-
գադայի բրիգադիրը պատասխանատվությունը գցում է տրակտորային բրի-
գադայի բրիգադիրի վրա, կամ հակառակը, որը առաջ է բերում դիմազրկու-
թյուն և քաշքշուկ: Մեքենաները կոլտնտեսություններին վաճառելուց հետո
անհրաժեշտություն է զգացվում խոշորացնել դաշտավարական բրիգադները
և մեքենաներն ամրացնել բրիգադներին, մեխանիզատորներին դարձնելով
բրիգադայի կայուն անդամներ: Դաշտավարական բրիգադիր նշանակել փորձ-
ված մեխանիզատորների, իսկ կոլտնտեսություններում, ըստ նրանց ծավալի,
ունենալ հսկիչ մեխանիկներ, որոնք պետք է ապահովեն մեքենաների տեխ-
նիկական հսկողությունն ու անխափան աշխատանքը:

ՄՏ կայանների վերակազմումը է՛լ ավելի է բարձրացնում շրջանի ղեկա-
վար օրգանների պատասխանատվությունը գյուղատնտեսության ղեկավարման
նկատմամբ: Պարտիայի շրջանային կոմիտեն և շրջանային Սովետը իրենց
ուշադրությունը պետք է կենտրոնացնեն տրակտորներ և գյուղատնտեսական
ուրիշ մեքենաներ ունեցող կոլտնտեսությունների անմիջական ղեկավարման
հարցերի վրա: Անհրաժեշտ է լրջորեն զբաղվել նաև այն կոլտնտեսություն-
ներով, որոնք այժմ ի վիճակի չեն պետությունից մեքենաներ գնել: Պետք է
հասնել այն բանին, որ այդպիսի կոլտնտեսությունները կարճ ժամանակամի-
ջոցում անցնեն առաջավորների շարքը: Պետք է խոր կերպով թափանցել նո-
րոգման-տեխնիկական կայանների գործունեության մեջ, համապատասխան
միջոցառումներ ձեռնարկել և գործնական օգնություն ցույց տալ այդ կայան-
ներին, որպեսզի վերջիններս կոլտնտեսություններին ժամանակին ապահովեն
մեքենաների պահեստամասերով, վառելիքով և այլ նյութերով, բարձր որակով
կատարեն նորոգման աշխատանքները:

ՄՏ կայանները վերակազմելուց հետո կոմունիստ մեխանիզատորների և
մասնագետների մեծ մասը աշխատանքի կգնան կոլտնտեսությունները: Այս-
պիսով է՛լ ավելի կամրապնդվեն կոլտնտեսային պարտիական կազմակեր-
պությունները, և կաճի նրանց ազդեցությունը կոլտնտեսությունների գործու-
նեության վրա: Այս տեսակետից էլ անհրաժեշտ է, որ մեծ և բազմաճյուղ
կոլտնտեսությունները, որոնք կունենան 50-ից ավելի պարտանդամներ, ունե-
նան պարտիական կազմակերպության ազատված քարտուղար:



Մինչև այժմ էլ կոլտնտեսությունների արտադրական գործունեության
հետ կապված շատ հարցեր լուծում են ՄՏ կայանները: ՄՏ կայանների վե-
րակազմումից հետո այդ հարցերով պետք է զբաղվեն շրջանային Սովետների
գործկոմները: Ուստի պետք է ուժեղացնել շրջանային Սովետների գործկոմ-
ները: Նպատակահարմար է գործադիր կոմիտեի պլանային և վիճակագրական
բաժինները վերակազմել և ստեղծել գիտա-կազմակերպական բաժին՝ գործա-
դիր կոմիտեի նախագահի տեղակալի գլխավորությամբ: Այդ բաժինը պետք է
զբաղվի կոլտնտեսային արտադրության կազմակերպչական, կոլտնտեսու-
թյուններում գիտության և առաջավոր փորձի տարածման ու արմատավորման,
վիճակագրական հաշվետվությունների ընդունման ու ամփոփման աշխատանք-
ներով:

Նոր պայմանները թելադրում են նոր խնդիրներ: Այս տեսակետից ան-
հրաժեշտություն կլինի որոշ փոփոխություններ մտցնել նաև շրջանային կո-
միտեի կառուցվածքի մեջ: Հարկավոր է, որ եղած հաստիքների սահմաննե-
րում պարտշրջկոմներում ստեղծվեն գյուղատնտեսական բաժիններ:

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումի որոշումը և ըն-
կեր Խրուշչովի զեկուցման թեզիսները նոր հեռանկարներ են բացում սոցիա-
լիստական գյուղատնտեսության հետագա զարգացման համար:

**Կ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**

ՀԿՊ Ախուրյանի շրջկոմի քարտուղար

# ԻՄԱՍՏՈՒՆ ՈՐՈՇՈՒՄ

Մեր մեծ Հայրենիքի բոլոր աշխատավորների հետ միասին էջմիածնի
շրջանի Վ. Ի. Լենինի անվան գյուղատնտեսական արտելի անդամները մեծ
գոհունակությամբ ընդունեցին ՍՄԿՊ Կենտկոմի Փետրվարյան պլենումի՝ «Կոլ-
տնտեսային կարգի հետագա զարգացման ու մեքենա-տրակտորային կայան-
ները վերակազմելու մասին» որոշումը և ՍՍՌՄ Գերագույն Սովետի հերթա-
կան սեսիայում այդ հարցի վերաբերյալ ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման
թեզիսները:

Այդ պատմական փաստաթղթերում մենք տեսնում ենք կոլտնտեսային
կարգի հետագա զարգացման նկատմամբ պարտիայի հոգատարության նոր
դրսևորում: Այդ փաստաթղթերում նշված միջոցառումների կենսագործումը
նոր և խոշոր քայլ կլինի սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի
զարգացման գործում:

Ոչ ոք չի կարող ժխտել այն կարևոր ու վճռական դերը, որ խաղացին
մեքենա-տրակտորային կայանները կոլտնտեսությունները կազմակերպորեն և
տնտեսապես ամրապնդելու գործում: Բայց այժմ, երբ ՍՄԿՊ Կենտկոմի և
Սովետական կառավարության վերջին տարիներս ձեռնարկած միջոցառում-
ների կենսագործման շնորհիվ կոլտնտեսություններն ամրապնդվել ու հզորա-
ցել են, իսկ գյուղատնտեսությունը բռնել է շեշտակի վերելքի ուղի, մեր կար-
ծիքով ճիշտ է վարվել պարտիայի Կենտկոմը, որ առաջ է քաշել մեքենա-
տրակտորային կայանները վերակազմելու, կոլտնտեսությունների արտադրա-
տեխնիկական սպասարկման նոր կարգ սահմանելու հարցը: Այդ իմաստուն և

ժամանակին մտածված որոշում է։ Կյանքն ինքն է թելադրում այդ միջո-
ցառումը։

Մեր կոլտնտեսության կազմակերպման առաջին տարում (1928 թվակա-
նին) նրա մեջ ընդգրկված էին ընդամենը 17 տնտեսություն, որոնք չքավոր
գյուղացիներ ու բատրակներ էին, 30 աշխատող ձեռքերով։ Կոլտնտեսությունն
ուներ 30 հեկտար վարելահող, 16 հեկտար խաղողի այգի և պետության կող-
մից բաց թողնված վարկով գնած 10 զույգ եզ, 10 սայլ, 3 գութան։ Մեկ
«Ֆորձոն» տրակտոր էլ նվեր էր ստացվել «Զարյա վոստոկա» թերթի խմբա-
գրությունից, որը համապատասխան կադր չունենալու պատճառով լավ չօգ-
տագործվեց։

Կոլտնտեսականների մեծ մասը կիսագրագետ, կամ անգրագետ էին.
միայն մի քանի մարդ ունեին տարրական կրթություն։ Կոլտնտեսության
ընդհանուր եկամուտը 20—25 հազար ռուբլուց չանցավ։ Վիճակը գրեթե նույնն
էր հաջորդ երկու-երեք տարիներին։

Այդ ժամանակվանից անցել է երեք տասնամյակ։ Մեր կոլտնտեսու-
թյունը շատ ու շատ բանով է փոխվել և նույնիսկ անհարմար ենք համարում
համեմատել նախկին վիճակի հետ։ Նա դարձել է հսկա, բազմաճյուղ հա-
րուստ տնտեսություն։ Այդ մեր պարտիայի իմաստուն քաղաքականության
արդյունքն է։ Սովետական գյուղացիությունը համախմբվելով կոլտնտեսու-
թյուններում, բռնեց նոր կյանքի, պայծառ, լուսաշող և ունևոր կյանքի ուղին։

Այժմ Լենինի անվան գյուղատնտեսական արտելի մեջ ընդգրկված են 820
տնտեսություն, որոնց շնչերի թիվը հասնում է 4164-ի, իսկ աշխատող ձեռ-
քերի թիվը՝ 1620-ի։ Կոլտնտեսությունն ունի 3371 հեկտար հողային տարա-
ծություն, որից վարելահող՝ 1593 հեկտար, խաղողի և մրգի այգիներ՝ 561
հեկտար, ինչպես նաև չորս անասնաբուծական ֆերմա։ Այդ ֆերմաներում
կան 1019 գլուխ խոշոր եղջերավոր և 4161 գլուխ մանր եղջերավոր անա-
սուններ։

Անցյալ տարի կոլտնտեսությունը 630 հեկտար բամբակի պլանտացիա-
ների յուրաքանչյուր հեկտարից հավաքեց միջինը 26,8 ցենտներ բամբակի
հումք, իսկ խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից միջինը ստացավ
65,1 ցենտներ բերք։ Յուրաքանչյուր ֆուրաժային կովից միջին հաշվով ստաց-
վեց մոտ 2000 կիլոգրամ կաթ։ Կոլտնտեսության ընդհանուր դրամական
եկամուտը կազմեց մոտ 15,5 միլիոն ռուբլի, որից 2,3 միլիոն ռուբլին հատ-
կացվել է անբաժանելի դրամագլխին։ Յուրաքանչյուր աշխօրին բաշխվեց 31
ռուբլի, մթերային մասն էլ հետը վերցրած։ Մենք չենք կարող ժխտել այն
փաստը, որ այս հարստությունը ստեղծվել է Կոմունիստական պարտիայի ու
Սովետական կառավարության օգնության շնորհիվ, կոլտնտեսականների ազ-
նիվ աշխատանքի միջոցով։

Մենք այս թվերը բերինք՝ ցույց տալու կոլտնտեսության հզորությունը,
նրա միջոցներն ու կարողությունը։

Մեր կոլտնտեսության դաշտերում ներկայումս աշխատում են ՄՏ կա-
յանի տրակտորային չորս բրիգադա, որոնք վարի, ցանքի, բամբակի ու խա-
ղողի բուժման և հացահատիկի բերքահավաքի համար օգտագործում են շուրջ
37 տրակտոր, 2 կոմբայն և մոտ 100 կախովի ու կցովի գործիքներ։ Բանն
այն է, որ այդ տեխնիկայի անմիջական տերը չի հանդիսանում կոլտնտեսու-
թյունը։ Իսկ ՄՏ կայանը, որը շահագրգռված է իր պլանների կատարումը



ցույց տալ փափուկ վարի արտահայտությամբ, երբեմն մոռացության է տալիս
կատարված աշխատանքի որակը, որի համար էլ հաճախ մեծ վեճեր են ծա-
գում մեր և ՄՏ կայանների ղեկավարների միջև։

Կամ վերցնենք տրակտորների ու մյուս մեքենաների օգտագործման հար-
ցը։ Որպեսզի մի տրակտոր մի կոլտնտեսությունից մյուսը փոխադրվի, այդ
մասին կոլտնտեսության նախագահը պահանջ է ներկայացնում ՄՏ կայանի
դիրեկտորին, վերջինս կարգադրություն է անում գլխավոր մեխանիկին, սա
էլ իր հերթին կարգադրում է շրջիկ մեխանիկին, սա էլ՝ տրակտորիստին։ Մեր
օրերում բացառված չէ, որ տրակտորիստը երբեմն ձգձգում է վերադաս ղե-
կավարի կարգադրության կատարումը զանազան պատճառաբանություննե-
րով, իսկ դրա հետևանքով գործը բավականին տուժում է։

Ահա թե ինչու միանգամայն ժամանակին և իմաստուն է տրակտորներն
ու մյուս մեքենաները կոլտնտեսություններին վաճառելու մասին որոշումը։
Արդյոք կարո՞ղ են կոլտնտեսությունները գնել այդ տեխնիկան և լրիվ բեռնվա-
ծությամբ օգտագործել այն։ Այո։ Ներկայումս շատ կոլտնտեսություններ կան,
որոնք այդ հնարավորությունն ունեն։

Մեր կոլտնտեսության դաշտային աշխատանքները կատարելու համար
հարկավոր է գնել 30 տրակտոր, որից 23-ը փոքր կարողություն ունեցող՝
միջշարքային տարածություններն ու այգիները մշակելու և բուժելու համար,
երկու կոմբայն, մեկ կալսիչ և մոտ 100 կախովի ու կցովի գործիքներ։ Որ այդ
մեքենաներն ու տեխնիկան մեր կոլտնտեսությունը կարող է լրիվ բեռնվա-
ծությամբ օգտագործել, կարելի է թեկուզ հետևյալ օրինակը բերել։ Եթե մեր
պայմաններում ընդունենք յուրաքանչյուր կոմբայնի օրական արտադրանքը
10—12 հեկտար, իսկ սեզոնի ընթացքում 160—180 հեկտար, ապա երկու
կոմբայնը լրիվ բեռնվածությամբ կարող են օգտագործվել, որովհետև հաս-
կավոր կուլտուրաների ցանքատարածությունը կոլտնտեսությունում մոտ 500
հեկտար է։ Կարող է հարց առաջանալ, այդքան մեքենաներն ու տեխնիկան
մեր կոլտնտեսությունը արդյո՞ք հնարավորություններ ու միջոցներ ունի
գնելու և անխափան օգտագործելու համար։ Այո։ Այդ նպատակի համար մենք
ունենք անհրաժեշտ միջոցներ։ Բավական է ասել, որ առ 1-ը հունվարի 1958
թվականի կոլտնտեսությունը գյուղբանկում ունի մոտ մեկ միլիոն ռուբլի
անբաժանելի դրամագլուխ։ Բացի դրանից, ինչպես ընկեր Խրուշչովի զեկուց-
ման թեզիսներում է նշված, կոլտնտեսությունն իր գնած մեքենաների ու
տեխնիկայի արժեքի դիմաց կարող է հանձնել բնամթերք։ Մեր կոլտնտեսու-
թյունն այդ էլ հաճույքով կարող է կատարել, որովհետև անցյալ տարի մենք
ՄՏ կայանի կատարած աշխատանքների դիմաց վճարել ենք 1,1 միլիոն
ռուբլու բնավարձ։

Անցյալի հետ համեմատած, կոլտնտեսությունը շատ է առաջ անցել կադ-
րերի աճեցման բնագավառում, կադրեր, որոնք հիանալի կերպով կարող են
վարել այդ տեխնիկան։ Այժմ կոլտնտեսությունն ունի երկու գյուղատնտես,
երկու ագրոտեխնիկ, մեկ մեխանիկ, երկու անասնաբույժ, երկու զոոտեխնիկ,
մեկ շինարար ինժեներ, մեկ շինարար տեխնիկ, քսանհինգ բրիգադիր, չորս
ֆերմայի վարիչներ և այլն։ Մեր դաշտերում աշխատող ՄՏ կայանի տրակ-
տորների ու մյուս մեքենաների բոլոր վարորդներն էլ գրեթե մեր կոլտնտե-
սության անդամներ են։ Հարյուրավոր կոլտնտեսականներ ունեն յոթնամյա և
միջնակարգ կրթություն, որոնք կարող են կարճ ժամկետում յուրացնել գյու-

*ղատնտեսության տեխնիկան տիրապետելու արվեստը և հմուտ կերպով վարել այն։*

*Ամբողջ տրակտորային պարկի և մյուս մեքենաների անխափան աշխատանքն ապահովելու համար կոլտնտեսությանն անհրաժեշտ է ունենալ մեկ գլխավոր մեխանիկ, մեկ շրջիկ մեխանիկ, այդ էլ մենք հնարավորություն ունենք ունենալու, դրա համար կան միջոցներ և կադրեր։*

*Այս բոլորի հետ միասին, մենք ցանկանում ենք ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների III գլխի 4-րդ կետի կապակցությամբ երկու հարց առաջ քաշել, որոնք, մեր կարծիքով, ունեն կարևոր նշանակություն։*

*Մենք գտնում ենք, որ նյութական խոշոր միջոցներ և համապատասխան կադրեր ունեցող կոլտնտեսություններին, որպիսին, օրինակ, մերն է, պետք է օժանդակել կազմակերպելու սեփական փոքրիկ արհեստանոցներ՝ մեքենաների և գործիքների ընթացիկ նորոգումները տեղում կատարելու։ Ամեն մի չնչին մաս ձեռք բերելու, կամ նորոգելու համար նորոգման-տեխնիկական կայանին դիմելը կարող է ձգձգումների տեղիք տալ, որից գործը կտուժի։ Նորոգման տեխնիկական կայաններին պետք է թողնել միայն հիմնական նորոգումների պարտականությունը։*

*Այնուհետև պայմանագիր պետք է կնքվի կոլտնտեսության վարչության և նորոգման-տեխնիկական կայանի դիրեկցիայի միջև, ըստ որում առաջինը պարտավորվի ժամանակին վճարել կատարված աշխատանքի ծախսերը, երկրորդը երաշխավորի իր վերանորոգած տրակտորների, կոմբայնների և մեքենաների անխափան աշխատանքի համար։*

*Մյուսը՝ վառելանյութի և պահեստային մասերի մատակարարման հարցն է։ Ինչպես էլ կոչվի այդ հիմնարկությունը, նրա համար պետք է սահմանվի կարգ՝ մատակարարումը վիժեցնելու դեպքում ենթարկվի տույժի՝ հօգուտ վնասվողի։*

Ե. ՄԱՐԳԱՐՅԱՆ
Էջմիածնի Լենինի անվան կոլտնտեսության
վարչության նախագահ

## ՄԵՐ ԱՌԱՋԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումի որոշումը բացառիկ կարևոր նշանակություն ունի սոցիալիստական գյուղատնտեսության հետագա վերելքի համար։ Այդ որոշմամբ պարտիան գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար ստեղծում է բոլոր պայմանները, որոնք հնարավորություն կտան բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի, յուղի արտադրությամբ մոտակա տարիներին հասնել ԱՄՆ-ին։*

*Ծանոթանալով ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշման ու ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսների հետ, Մարտունու ՄՏ կայանի մեխանիզատորները միահամուռ կերպով հավանություն տվեցին պարտիայի Կենտրոնական Կոմիտեի միջոցառումներին։*

*ՄՏ կայանի մեխանիզատորները գտնում են, որ այդ վերակազմումը էլ ավելի նպաստավոր պայմաններ կստեղծի մեր հարուստ տեխնիկան ավելի*



*լավ օգտագործելու և գյուղատնտեսական մթերքների արտադրանքն ավելացնելու համար։*

*Վերջին երկու-երեք տարվա ընթացքում և, հատկապես, ՍՄԿՊ XX համագումարի պատմական որոշումներից հետո մեր շրջանի կոլտնտեսությունները ձեռք են բերել մեծ հաջողություններ։ 1957 թվականի տնտեսական տարում կոլտնտեսությունների դրամական եկամուտը կազմեց 20 849 հազար ռուբլի, 1953 թվականի 8265 հազար ռուբլու դիմաց, իսկ անբաժանելի ֆոնդը 1268 հազարից բարձրացավ մինչև 3582 հազար ռուբլի։ Վարդենիկի, Ջոլաքարի, Ալուչալուի և այլ կոլտնտեսությունների դրամական եկամուտները այդ ժամանակամիջոցում ավելացան երեք ու կեսից մինչև չորս անգամ։ Այժմ մեր շրջանի կոլտնտեսությունների մեծամասնությունը իր սեփական միջոցներով հենց այս տարի ՄՏ կայանից կարող է գնել տրակտորներ և այլ գյուղատնտեսական մեքենաներ։*

*Ընկ. Խրուշչովի զեկուցման թեզիսներում ասված է, որ ՄՏ կայանները պետք է վերակազմել նորոգման-տեխնիկական կայանների, նրանց վրա դնելով կոլտնտեսությունների բարդ տեխնիկայի նորոգումը, կոլտնտեսություններին նոր տեխնիկա, պահեստամաս, վառելանյութ, պարարտանյութ և այլ նյութեր մատակարարելը։ Այս ձևը միանգամայն ճիշտ է։ Բայց նորոգման-տեխնիկական կայանների վրա պետք է դնել ոչ միայն բարդ տեխնիկայի նորոգումը, այլև տեխնիկական սպասարկումը։*

*Քանի որ կոլտնտեսությունները դեռ չունեն համապատասխան սարքավորումներ (հաստոցներ, զոդող ապարատներ և այլն), անհրաժեշտ է ՄՏ կայանում եղած վերանորոգման շրջիկ արհեստանոցների քանակն ավելացնել այն հաշվով, որպեսզի մեկ կամ երկու կոլտնտեսության սպասարկի մեկ շրջիկ վերանորոգման արհեստանոց։ Այսպիսով, առաջիկա տարիներում նորոգման-տեխնիկական կայանները լուրջ ուշադրություն պետք է դարձնեն կոլտնտեսություններում մեքենաների տեխնիկական սպասարկման վրա, մինչև կոլտնտեսությունները իրենց մոտ ստեղծեն ընթացիկ նորոգման արհեստանոցներ։ Միանգամայն ճիշտ է, որ նորոգման-տեխնիկական կայանների տրամադրության տակ պետք է թողնել որոշ մեքենաներ-մեխանիզմներ (բուլդոզեր, սկրեպեր, ջրանցքափոր և այլն)՝ կոլտնտեսություններին վարձով սպասարկելու համար։*

*Ինչպես նշված է թեզիսներում, նոր պայմաններում առանձնապես կարևոր նշանակություն են ստանում կոլտնտեսությունների նյութա-տեխնիկական մատակարարման հարցերը։ Մինչև հիմա ստացվում էր, որ կոլտնտեսությունները իրենց արտադրական պահանջները բավարարելու համար պետք է դիմեին մի շարք գերատեսչությունների՝ «Գլավտրակտորսբիտ»-ին, «Նեֆտսբիտ»-ին, «Սելխոզսնաբ»-ին և այլ կազմակերպությունների։ Բազմաճյուղային այսպիսի մատակարարումը դժվարացնում է կոլտնտեսությունների աշխատանքը։*

*Մենք գտնում ենք, որ կոլտնտեսության արտադրության համար անհրաժեշտ բոլոր մեխանիզմների մատակարարումը պետք է դնել նորոգման-տեխնիկական կայանների վրա։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է հենց այս տարվա ընթացքում կատարել հետևյալ միջոցառումները.*

*1. Շրջանային «Սելխոզսնաբ»-ի բաժանմունքները միացնել ՄՏ կայան-*

ներին, իսկ եթե դրանք լրիվին վերակազմվել են նորոգման-տեխնիկական կայանների, ապա միացնել վերջիններս։

2. Միջշրջանային «Գլավտրակտորսբիտ»-ի բաժանմունքներից վերցնել տրակտորների և ավտոմեքենաների մասերի մատակարարման ֆունկցիան և այն հանձնել ռեսպուբլիկայի «Սելխոզսնաբ»-ի գլխավոր բազային, որտեղից նոր կայանները կարող են անմիջապես մատակարարել կոլտնտեսություններին։

Կոլտնտեսությունների ավտոմեքենաների մասերի մատակարարման գործը շատ կարևոր է, քանի որ վերջին երկու-երեք տարվա ընթացքում կոլտնտեսությունների ավտոպարկը ավելացել է 3—4 անգամ. բավական է ասել, որ մեր շրջանի կոլտնտեսություններն ունեն 104 ավտոմեքենա։

Վատ հիմքերի վրա է դրված ավտոմեքենաների հիմնական նորոգման գործը։ Ռեսպուբլիկայի ավտոնորոգման ձեռնարկությունները չեն կարողանում ապահովել կոլտնտեսությունների պահանջը։ Անհրաժեշտ ենք համարում կոլտնտեսությունների ավտոմեքենաների ընթացիկ և հիմնական նորոգումների գործը դնել նորոգման-տեխնիկական կայանների վրա։

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Սեպտեմբերյան պլենումից հետո ՄՏ կայանների վրա դրվեց նաև գյուղատնտեսական մթերքների մթերման գործը։ Այժմ այդ ֆունկցիան վերանում է, ուրեմն անհրաժեշտ է ստեղծել մի կազմակերպություն, որը զբաղվի այդ հարցով։

Նպատակահարմար կլինի շրջանային գործադիր կոմիտեներում ստեղծել կոլտնտեսային ղեկավարման խորհուրդ՝ հետևյալ կազմով. խորհրդի նախագահ (լավ կլինի գործադիր կոմիտեի նախագահ), մեկ կամ երկու ագրոնոմ, զոոտեխնիկ, անասնաբույժ, որը միաժամանակ կհանդիսանա շրջանային անասնաբուժարանի վարիչ, հողաշինարար, պլանավիկ-էկոնոմիստ, տեխնիկշինարար, հաշվապահ հրահանգիչ և մթերման գծով աշխատող անձ։ Պետք է վերացնել գործադիր կոմիտեների կոլտնտեսային շինարարության, ճանապարհաշինարարության և պլանային բաժինները, որոնց ֆունկցիան կկատարի կոլտնտեսային ղեկավարման խորհուրդը։

Յ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Մարտունու ՄՏ կայանի դիրեկտոր

# ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐ

Ախտայի շրջանի Ալափարս գյուղի կոլտնտեսությունն անցած գյուղատնտեսական տարում մեծ հաջողությունների է հասել։ 1957 թվականին, 1956 թվականի համեմատությամբ, հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը ավելացավ 34 տոկոսով, կաթի արտադրությունը՝ 50 տոկոսով, բրդինը՝ 54 տոկոսով, ծխախոտինը՝ 25 տոկոսով։ Կոլտնտեսության դրամական եկամուտներն աճեցին ավելի քան 2 անգամ, որի հետևանքով զգալի չափով ավելացան անբաժանելի ֆոնդին հատկացվող գումարները։ Կոլտնտեսությունը լրիվին հնարավորություն ունի կատարել կապիտալ շինարարություն, փակել նախկինում պետությունից վերցրած երկարատև վարկերը, ձեռք բերել տրակտորներ և այլ գյուղատնտեսական մեքենաներ։

Ժամանակն է, որպեսզի կոլտնտեսություններն ունենան իրենց սեփական



մեքենաները և դրանք օգտագործեն այնպես, ինչպես իրենք են ցանկանում։
ՄՏ կայանները շատ դեպքում խախտում են տիպային պայմանագրերով նա-
խատեսված գյուղատնտեսական աշխատանքների ժամկետները։ Կարելի է
բերել մի շարք փաստեր, երբ Ալափարսի ՄՏ կայանը, որը սպասարկում է
մեր կոլտնտեսությանը, հաճախակի խուսափում է կրկնավար կատարելուց և
չի մտածում շարահերկ կուլտուրաների մշակության աշխատանքները մեքե-
նայացնելու մասին։ Տրակտորային բրիգադան խուսափում է վերացնել միջ-
նակները (որոնք գյուղատնտեսական վնասատուների օջախ են հանդիսա-
նում), պատճառաբանելով, թե միջնակների վերացումը վառելանյութի գերա-
ծախսի հետ է կապված։

Հաճախակի տրակտորիստները շահագրգռված չեն որակյալ աշխատանք
կատարել, որովհետև նրանք երաշխավորված մինիմումով ստանում են իրենց
վարձը, անկախ նրանից, թե կոլտնտեսությունը բարձր բերք է ստանում թե
ոչ։ Ուստի նպատակահարմար է, որ տրակտորները կոլտնտեսություններին
վաճառելուց հետո տրակտորիստների վարձատրության չափը որոշի կոլտն-
տեսության ընդհանուր ժողովը, որպեսզի տրակտորիստները շահագրգռված
լինեն բերքատվության բարձրացման գործում։ Իհարկե, տրակտորիստները
պետք է վարձատրվեն բարձր վարձատրվող կոլտնտեսականներից ոչ պակաս։

Ալափարսն Ախտայի շրջանի ցածրադիր գյուղերից մեկն է։ Այստեղ ավելի
շուտ է սկսվում բերքահավաքը, հետևապես կոմբայններն առաջին հերթին
ուղարկվում են Ալափարս։ Որոշ ժամանակից հետո այդ կոմբայնները ՄՏ
կայանը ստիպված է ուղարկել մյուս կոլտնտեսությունները, իսկ Ալափարսի
կոլտնտեսությունը մնում է առանց կոմբայնի, որը տեղիք է տալիս բերքի
կորուստների։

Այսպես, օրինակ, երբ առանց բերքահավաքը ավարտելու № 2 բրիգա-
դայի դաշտից հանեցին կոմբայնը, մեկ հեկտարի բերքատվությունն ընկավ 5
ցենտներով։ Կամ մեկ ուրիշ փաստ։ Ալափարսի կոլտնտեսությունն ունի սե-
փական մեկ «ХТЗ» տրակտոր, որը ցանովի խոտհնձի ժամանակ կատարեց
ավելի շատ աշխատանք, քան ՄՏ կայանի 3 տրակտորը միասին վերցրած։

Այս բոլորից հետո դժվար չի պատկերացնել, թե գործը ինչ չափով կշա-
հի, երբ կոմբայնները և տրակտորները դառնան կոլտնտեսության սեփակա-
նությունը և նրանց տնօրինողը լինի կոլտնտեսությունը։

Ալափարսի կոլտնտեսությունն իր սեփական մեքենաներն ունենալուց հե-
տո գյուղատնտեսական բարձրորակ կադրերի կարիք կունենա։ Գյուղում գոր-
ծում է միջնակարգ դպրոց, որն ամեն տարի 15—20 շրջանավարտներ է տա-
լիս, բայց նրանցից ոչ մեկին չի հաջողվում ընդունվել գյուղատնտեսական
բարձրագույն ուսումնական հաստատություն։ Նպատակահարմար է, հաշվի
առնելով կոլտնտեսությունների պահանջները, կոնկուրսից դուրս, կոլտնտե-
սությունների վարչությունների երաշխավորությամբ, միջնակարգ դպրոցն
ավարտած լավագույն, ընդունակ երիտասարդներին ընդունել բարձրագույն
ուսումնական հաստատություն, նրանց պարտադրելով անպայման վերադառ-
նալու տվյալ կոլտնտեսությունը։

Մ. ԱԴԱՄՅԱՆ
Ախտայի շրջանի Ալափարս գյուղի կոլտնտեսության № 2
բրիգադայի բրիգադիր

## ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՇՎԱՌՈՒՄԸ

Վ. Ս. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ

Մարդկային հասարակության գոյության հիմքը, նրա ամենաանհրաժեշտ պայմանը նյութական բարիքների արտադրությունն է, իսկ մարդկանց աշխատանքը, որ ստեղծում է այդ նյութական բարիքները, բնության հետ միասին ամբողջ հասարակական հարստության աղբյուրն է:

Աշխատանքի արտադրողականության աճում կամ բարձրացում ասելով հասկանում ենք ընդհանրապես աշխատանքի պրոցեսի ամեն մի փոփոխություն, որն ավելացնում է արտադրվող արդյունքների քանակությունը և կրճատում այդ արդյունքների յուրաքանչյուր միավորն արտադրելու համար հասարակականորեն անհրաժեշտ աշխատաժամանակը: Ուրեմն, աշխատանքի արտադրողականության աճման դեպքում, աշխատանքային միևնույն ծախսումներով, արտադրվում է ավելի շատ, քան արտադրվում էր առաջ, որի հետևանքով և իջնում է միավորի վրա ծախսվող աշխատաժամանակը:

Աշխատանքի արտադրողականության աճումը կարելի է դիտել երկու տեսանկյունով՝ կենդանի աշխատանքի արտադրողականության աճման և հասարակական աշխատանքի արտադրողականության աճման տեսանկյունով:

Կենդանի աշխատանքի արտադրողականության աճման տակ հասկացվում է ժամանակի միավորի ընթացքում միևնույն կենդանի աշխատանքային ծախսումներով արտադրվող արդյունքների ավելացում:

Հասարակական աշխատանքի արտադրողականության աճման հասկացողությունն ավելի լայն է. նրա տակ հասկացվում է կենդանի և անցյալ աշխատանքային միևնույն ծախսումներով արտադրվող արդյունքների ավելացում, կամ որ միևնույն է՝ արտադրության պրոցեսի արդյունավետության բարձրացում: Հետևաբար, հասարակական աշխատանքի արտադրողականության աճումը ենթադրում է ինչպես կենդանի, այնպես էլ առարկայացած աշխատանքի տնտեսում, և, առհասարակ, ամեն մի անօգտակար աշխատանքի վերացում ու արտադրվող արդյունքների ավելացում:

Քանի որ աշխատանքն առանձին ձեռնարկություններում, ճյուղերում և ենթաճյուղերում, նյութական արտադրության մեջ և, վերջապես, ամբողջ հասարակական արտադրության մեջ հասարակական է, այդ պատճառով էլ աշխատանքի արտադրողականությունը նրանց մեջ հանդես է գալիս որպես հասարակական աշխատանքի արտադրողականություն: Հետևաբար, պետք է տարբերել հասարակական աշխատանքի արտադրողականությունը առանձին ձեռնարկության, ենթաճյուղի, ճյուղի, նյութական արտադրության և ամբողջ հասարակական արտադրության մեջ:

Արտադրության մեջ ամեն մի նոր մեթոդի կիրառում աշխատանքի արտադրողականության իրական բարձրացում է ներկայացնում միայն այն դեպ-



քում, երբ առանձին արդյունքին աշխատամիջոցների մաշվածքի մի ավելի փոքր լրացուցիչ մաս է փոխանցում, քան աշխատանքի այն հանելի մասը, որը տնտեսվում է կենդանի աշխատանքի կրճատումից, մի խոսքով՝ այդ մեթոդը պետք է իջեցնի արդյունքի արժեքը: Բանն այսպես պետք է լինի նաև այն ժամանակ, երբ, ինչպես պատահում է առանձին դեպքերում, արդյունքի մեջ քանակորեն աճում է հումքի և օժանդակ նյութերի մասը, կամ նրանց թանկ տեսակներն են օգտագործվում: «Արժեքի բոլոր հավելուրդներից պետք է գերակշռի արժեքի այն նվազումը, որը կենդանի աշխատանքի կրճատումից է ծագում» (Կ. Մարքս, «Կապիտալ», հ. 3, մաս 1, Հայպետհրատ, 1947 թ., էջ 245): Կենդանի և առարկայացած միևնույն աշխատանքային ծախսումներով սպառարժեքների մեծ քանակություն ստեղծելու հետևանքով իջնում են նրանց յուրաքանչյուր միավորի արտադրության ծախսերը՝ նրանց արժեքը:

Ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերի կամ առանձին ձեռնարկությունների մասշտաբով մեկ բանվորի հաշվով արտադրվող արտադրանքը, որն օգտագործվում է ՍՍՌՄ սոցիալիստական տնտեսության պրակտիկայում որպես աշխատանքի արտադրողականության ցուցանիշ, ունի չափազանց կարևոր նշանակություն: Այն ցույց է տալիս, թե ժամանակի միավորի ընթացքում մեկ բանվորի կողմից որքան արտադրանք է արտադրվում և, հետևաբար, դրանով իսկ արտացոլում է այս կամ այն արդյունքի արտադրության վրա կատարվող կենդանի աշխատանքի ծախսումների շարժումը: Այդ ցուցանիշը կարևոր նշանակություն ունի արտադրության աճը պլանավորելիս, որովհետև դրա հիման վրա է պարզվում, թե արտադրանքի աճի ո՛ր մասը պետք է ձեռք բերվի կենդանի աշխատանքի արտադրողականության աճման հաշվին և ո՛ր մասը՝ բանվորների թվաքանակի ավելացման հաշվին: Այնուհետև, չի կարելի կազմել ժողովրդական տնտեսության աշխատանքի հաշվեկշիռ, առանց հաշվի առնելու մեկ բանվորի և կոլտնտեսականի հաշվով արտադրվող արտադրանքի ցուցանիշը և այլն:

Մեկ բանվորի հաշվով արտադրվող արտադրանքի հաշվառումն ու պլանավորումը կատարվում է բնաձևային և դրամական արտահայտությամբ: Լայն կիրառում ունեն դրամական արտահայտությամբ կատարվող հաշվառումն ու պլանավորումը:

Սակայն աշխատանքի արտադրողականության հաշվառումն իր բնույթով ամենից առաջ ենթադրում է բնաձևային հաշվառում, այսինքն՝ աշխատաժամանակի միավորին ընկնող սպառարժեքների քանակի հաշվառում: Հետևաբար, աշխատանքի արտադրողականության ցուցանիշի հենց բնույթը պահանջում է բնաձևային ցուցանիշներով կատարվող հաշվառման զարգացում: Այդ պատճառով էլ անհրաժեշտ է սոցիալիստական տնտեսության մեջ որքան հնարավոր է ավելի շատ զարգացնել աշխատանքի արտադրողականության հաշվառման բնաձևային և պայմանական-բնաձևային ցուցանիշները:

Բնաձևային արտահայտությամբ հաշվառումը և պլանավորումը կատարվում է և հնարավոր է կատարել բոլոր այն ձեռնարկություններում ու ճյուղերում, որոնք արտադրում են միատեսակ (համասեռ) արտադրանք. օրինակ՝ ածխարդյունաբերության, էլեկտրաէներգիայի արտադրության, ցեմենտի, տորֆի և նյութական արտադրության այլ ճյուղերում: Եթե նման ճյուղերում աճում է մեկ բանվորի հաշվով արտադրվող արտադրանքի քանակու-

թյունը (հատ, տոննա, կիլովատ-ժամ, մետր և այլն), ապա, ուրեմն, աճում է կենդանի աշխատանքի արտադրողականությունը:

Տարասեռ արտադրանք տվող ձեռնարկություններում բնաձևային հաշվառման մեթոդը կիրառվում է առանձին ցեխերի, բրիգադաների և բանվորական տեղամասերի շրջանակներում. օրինակ՝ ձուլման ցեխում, մեխանիկական ցեխում, դարբնոցային ցեխում և այլն:

Անհրաժեշտ է նշել նաև այն, որ այսպիսի ձեռնարկություններում ու ճյուղերում, մեկ բանվորի հաշվով արտադրվող արտադրանքի բնաձևային արտահայտությամբ կատարվող հաշվառման հետ միասին, կիրառվում է նաև դրամական արտահայտությամբ հաշվառումը: Այսպիսի հաշվառումը կապված է արժեքի օրենքի և դրամի գոյության հետ, ինչպես նաև ամբողջ արդյունաբերության մասշտաբով մեկ բանվորի հաշվով արտադրվող արտադրանքի աճը ցույց տալու հետ և, վերջապես, այն բանի հետ, որ դրամական արտահայտությամբ կատարվող հաշվառումը ելնում է նաև արդյունաբերական բնույթի այլ աշխատանքներից, որոնք կատարում են տվյալ ձեռնարկության կամ ճյուղի բանվորները (օրինակ՝ սարքավորումների և տրանսպորտային միջոցների հիմնական նորոգումները):

Ժողովրդական տնտեսության այն ձեռնարկություններում ու ճյուղերում, որտեղ արտադրվում են տարբեր տեսակի արտադրանքներ, հնարավոր չէ օգտագործել մեկ բանվորի հաշվով արտադրվող արտադրանքի ցուցանիշը բնաձևային արտահայտությամբ: Այդ պատճառով էլ օգտագործվում է դրամական արտահայտությամբ ցուցանիշը, իսկ որոշ դեպքերում կիրառվում է միայն պայմանական-բնաձևային ցուցանիշը. օրինակ, վագոնաշինության մեջ արտադրվող բոլոր տեսակի վագոնները վեր են ածվում երկսռնանի վագոնների, կամ տրակտորաշինության մեջ բոլոր տեսակի տրակտորները վեր են ածվում 15 ձիաուժանոցի և այլն: Այս կատարվում է բոլոր այն դեպքերում, երբ ձեռնարկությունը կամ ցեխը թողարկում է նույնանուն, բայց տարբեր չափերի, կամ նույնանման կոնստրուկցիաների արտադրանք:

Սակայն ներկայումս պրակտիկայում կիրառվող այս ցուցանիշը ունի էական թերություններ:

Ինչպես հայտնի է, կենդանի աշխատանքի արտադրողականությունը որոշելիս վերցվում է համախառն արտադրանքը և այն բաժանվում բանվորների միջին ցուցակային թվի վրա [1]:

Այս մեթոդով կատարվող հաշվարկումը տնտեսավարներին շահագրգռում է արտադրել այնպիսի արդյունքներ, որոնք ավելի նյութատար են, կամ օգտագործել ավելի թանկ տեսակի հումք և այլն: Հաշվարկման այս մեթոդը տանում է դեպի նախատեսված ասորտիմենտի խախտում, արգելակում է մեքենաների քաշի պակասեցումը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը և

[1] Բանվորների միջին ցուցակային թվի մեջ են մտցվում բոլոր հիմնական, սեզոնային և ժամանակավոր աշխատող բանվորները, որոնք աշխատանքի են ընդունվել ոչ պակաս քան 5 օր ժամանակով, իսկ եթե նրանք կատարում են ձեռնարկության հիմնական գործունեության գծով աշխատանքներ՝ ոչ պակաս քան մեկ օրով: Ցուցակում մտցվում են ո՛չ միայն տվյալ ժամանակաշրջանում փաստացի աշխատողները, այլ նաև ինչ-որ պատճառներով բացակայողները. հանգստյան օրերը, հերթական արձակուրդները, ծննդաբերության հետ կապված արձակուրդները, հիվանդության, պետական ու հասարակական պարտականություններ կատարելու պատճառներով աշխատանքի չներկայանալը, գործուղումները, վարչական թույլտվությունները և այլն:



այլն: Համախառն արտադրանքի և կենդանի աշխատանքի արտադրողականության պլանների կատարումը և գերակատարումը հաճախակի ձեռք է բերվում «շահավետ» ասորտիմենտի հաշվին կամ անավարտ արտադրանքի կրկնապատկման և եռապատկման հաշվին: Ընդհանուր հետևանքն այն է լինում, որ այն ձեռնարկությունները, որոնք ձեռք են բերում աշխատանքի արտադրողականության անհամեմատ ավելի բարձր մակարդակ, քան միջին ճյուղայինն է, համարվում են հետամնաց, իսկ այն ձեռնարկությունները, որոնք ունենում են աշխատանքի անհատական համեմատաբար ցածր արտադրողականություն, քան միջին ճյուղայինն է, համարվում են առաջավոր:

Որպեսզի վերացվեն կենդանի աշխատանքի արտադրողականության այսպիսի մեթոդով կատարվող հաշվարկման թերությունները, անհրաժեշտ է փոփոխություններ մտցնել այդ մեթոդի մեջ: Անհրաժեշտ է՝ 1) արդյունաբերական ճյուղերի մեծամասնությունում հրաժարվել ընթացիկ (ամսական, եռամսյակային և այլն) համախառն արտադրանքի հաշվառումից ու պլանների կատարումը գնահատել և արտադրության ծավալի դինամիկան ու աշխատանքի արտադրողականությունը չափել միայն ըստ ապրանքային, պատրաստի արտադրանքի: Համախառն արտադրանքի հաշվառումը պահպանել միայն տարեկան հաշվետվության մեջ՝ կապված ֆինանսական և հաշվեկշռային հաշվարկների հետ: Այսպիսի հաշվարկումը և պլանների կատարման գնահատումը բարերար ներգործություն կունենա արտադրական ցիկլի կրճատման վրա, անավարտ արտադրանքի չափերի փոքրացման վրա, անավարտ արտադրանքի չափերի և նրա գների կամայականորեն որոշման վրա: 2) Այսպես կոչված «այլ» արտադրանքը՝ հիմնական նորոգումները, ծառայությունները և այլն, պլանների կատարողականում հաշվել միայն պլանով նախատեսվածի չափով, որն էապես կսահմանափակի այժմ բավականին լայն կերպով օգտագործվող ապրանքային ծավալի ուռճացման հնարավորությունները՝ երկրորդական, երբեմն ոչ անհրաժեշտ և կամայականորեն բարձր գնահատվող աշխատանքների հաշվին: 3) Ամբողջ արդյունաբերության մասշտաբով կենդանի աշխատանքի արտադրողականությունը չափել համախառն արտադրանքի մեթոդով: 4) Համախառն արտադրանքը վերցնել համեմատելի գներով, որոնք պետք է լինեն միասնական (ընդհանուր միութենական) գներ և չպետք է փոփոխվեն մի շարք հաշվետու ժամանակաշրջանների ընթացքում: Համեմատելի գները նոր արտադրանքի համար պետք է լինեն նրանց իրացման գները՝ յուրացման ժամանակաշրջանի ուղղումով:

Պատրաստի արտադրա՞նքն է արդյոք վերցվում, թե՞ համախառն արտադրանքը, միևնույն է, այդ «նյութատարության» վրա ոչ մի ներգործություն չի ունենում: Երկու դեպքում էլ կարելի է բարձրացնել նյութատարությունը: Իսկ որպեսզի ձեռնարկությունը նյութատար արտադրանք արտադրելու հակում չունենա, անհրաժեշտ է ամենուր պարգևատրում սահմանել նաև ինքնարժեքի իջեցման համար և դրանով իսկ պայմաններ ստեղծել նյութատարությունը կրճատելու համար:

Ժողովրդական տնտեսության պլանավորումը, հատկապես հեռանկարային պլանավորումը, պահանջում է կենդանի աշխատանքի արտադրողականության հաշվառում նաև ամբողջ նյութական արտադրության մասշտաբով: Սակայն պրակտիկայում այդպիսի հաշվառում չկա, բայց դրա կիրառումը

չափազանց կարևոր է, որովհետև այն ցույց կտա կենդանի աշխատանքի օգտագործման արդյունավետությունը ողջ նյութական արտադրության ոլորտում։

Հայտնի է, որ այժմ կենդանի աշխատանքի արտադրողականությունը որոշելիս վերցվում են հիմնական և օժանդակ բանվորները։ Սակայն, ըստ մեր կարծիքի, բանվորների միջին ցուցակային թվի մեջ, բացի հիմնական և օժանդակ բանվորներից, պետք է մտցնել նաև ինժեներա-տեխնիկական և կրտսեր տեխնիկական անձնակազմին, որովհետև նրանք կազմում են «հավաքական բանվորների» առանձին օրգանները։ Այստեղ, ֆիզիկական աշխատողների հետ միասին, հաշվի մեջ են մտցվում նաև մտավոր աշխատանքով զբաղվողները (գիտնականները, ինժեներները և այլն), որոնք նյութական առարկաների արտադրությանը մասնակցում են ոչ անմիջաբար, այլ միջնորդաբար, բայց նրանք կազմում են «հավաքական բանվորի» մի առանձին օրգանը։ Մարքսը գրում է, որ արտադրության ու նրա տեխնիկայի զարգացումով ոչ թե «...առանձին բանվորը, այլ աշխատանքի նկատմամբ ավելի ու ավելի սոցիալ-կոմբինացված ունակությունն է դառնում աշխատանքի ամբողջական պրոցեսի իրական կատարողը և աշխատանքի նկատմամբ տարբեր ունակությունները, որոնք համախմբում են իրենց ուժերը և առաջացնում հավաքական արտադրողական մեքենա, բոլորովին տարբեր կերպ են մասնակցում ապրանքների, կամ այստեղ ավելի լավ է ասել արդյունքների, արտադրության անմիջական պրոցեսին — մեկն ավելի շատ աշխատում է ձեռքերով, մյուսը՝ գլխով, մեկը որպես կառավարիչ է, ինժեներ, տեխնոլոգ և այլն, մյուսը՝ վերակացու, երրորդը՝ անմիջականորեն որպես ֆիզիկական աշխատանքի բանվոր կամ նույնիսկ որպես հասարակ օգնական — ապա աշխատանքի նկատմամբ ֆունկցիաների ունակության ավելի մեծ քանակություն ներառվում է արտադրողական աշխատանքի անմիջական հասկացողության մեջ, իսկ նրա կրողները՝ արտադրողական բանվորների հասկացողության մեջ» (К. Маркс и Ф. Энгельс, Архив, Т. II (VII), стр. 129—131)։

Որոշ տնտեսագետներ այն կարծիքն են հայտնում, թե իբր աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ որոշելիս պետք է վերցնել ամբողջ արդյունաբերական-արտադրական անձնակազմին (բանվորներ, աշակերտներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ, ծառայողներ, կրտսեր սպասարկող անձնակազմ, պահակային և հրդեհային պահպանության աշխատողներ), որպեսզի արտադրության ղեկավարները շահագրգռված լինեն վարչական ապարատի էժանացմամբ, կրճատեն վարչական ապարատի ուռճացված հաստիքները։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ նման ձևով հաշվարկում կատարելը ճիշտ չի արտացոլի կենդանի աշխատանքի արտադրողականությունը. բանվորի աշխատանքի արտադրողականությունն արհեստականորեն կիջեցվի։ Ուռճացված հաստիքների կրճատումը ամենևին չի կարելի կապել աշխատանքի արտադրողականության հաշվարկման հետ, քանի որ հաստիքների չափը որոշվում է պետության կողմից և անհրաժեշտ է միայն հետևել, որպեսզի սահմանված հաստիքների խախտում տեղի չունենա։ Միայն ամբողջ նյութական արտադրության մեջ կենդանի աշխատանքի արտադրողականությունը որոշելիս պետք է վերցնել ամբողջ աշխատողներին, որովհետև այն ցույց կտա ամբողջ նյութական արտադրության մեջ կիրառվող կենդանի աշխատանքի օգտագործման արդյունավետության աստիճանը։

Կարևոր է պարզել նաև այն հարցը, թե կենդանի աշխատանքի արտա-



դրողականությունը որոշելիս արդյոք վերցնել բանվորների միջին ցուցակային թի՞վը, թե՞ միայն փաստացի աշխատանքի ներկայացածների թիվը։

Փաստացի աշխատանքի ներկայացած բանվորների թիվը մոտավորապես 3—5 տոկոսով փոքր է նրանց միջին ցուցակային թվից, իսկ տեքստիլ արդյունաբերության մեջ, որտեղ գլխավորապես կանայք են աշխատում՝ 10—12 տոկոսով։ Այս տարբերությունը, իհարկե, արտացոլվում է աշխատանքի արտադրողականության մակարդակի մեջ. բանվորների միջին ցուցակային թիվը վերցնելիս աշխատանքի արտադրողականության մակարդակը ցածր է լինում։ Սակայն այսպիսի հաշվարկումը նպաստում է աշխատանքային կարգապահության բարձրացմանը։

Առանձին գործողություններում աշխատանքի արտադրողականությունը հաշվարկելիս կարելի է և պետք է վերցնել իրականում ծախսված աշխատաժամանակը, բայց երբ հարցը վերաբերում է ձեռնարկությանը, ճյուղին կամ ամբողջ արդյունաբերությանը, այդ դեպքում պետք է վերցնել բանվորների միջին ցուցակային թիվը։ Եթե ձեռնարկություններում աշխատանքի արտադրողականությունը հաշվարկվի փաստացի ներկայացված բանվորների թվաքանակով, ապա այդ դեպքում շատ տնտեսվարների մոտ կթուլանա կարգապահության համար մղվող պայքարը։ Բայց բանվորական ուժի օգտագործման բնագավառում ունեցած ռեզերվներն ի հայտ բերելու համար անհրաժեշտ է միաժամանակ օգտագործել նաև այս հաշվարկումը։ Որքան մեծ լինի բանվորների միջին ցուցակային և փաստացի ներկայացված թվերի միջև եղած ճեղքվածքը, այնքան մեծ կլինի աշխատանքի արտադրողականության այդ երկու ցուցանիշների տարբերությունը։ Իսկ այդ տարբերությունը կվկայի, որ ձեռնարկության կամ ճյուղի մեջ գոյություն ունեն աշխատուժի օգտագործման և աշխատանքի կազմակերպման մեծ թերություններ, և ընդհակառակը։

Մեկ բանվորի հաշվով արտադրվող արտադրանքի ցուցանիշը, արտացոլելով կենդանի աշխատանքի օգտագործման արդյունավետությունը, լրիվ պատկերացում չի տալիս ամբողջական հասարակական աշխատանքային ծախսումների մասին։ Կարող է այնպես լինել, որ կենդանի աշխատանքի արտադրողականությունը բարձրանա, բայց դրա հետ միասին տեղի ունենա առարկայացած աշխատանքի գերածախս։ Այս դեպքում կենդանի աշխատանքի տնտեսումը կկլանվի առարկայացած աշխատանքի գերածախսերի կողմից, որի հետևանքով և հասարակական աշխատանքի արտադրողականությունը չի բարձրանա, այսինքն՝ չեն իջնի արտադրվող արդյունքների յուրաքանչյուր միավորի արտադրության հասարակական ծախսերը։ Արտադրանքի յուրաքանչյուր միավորի արտադրության վրա կատարվող հասարակական աշխատանքային ծախսերի իջեցման մեջ իր արտացոլումն է ստանում հասարակական աշխատանքի արտադրողականության աճումը։ Որքան փոքր լինի արտադրվող արտադրանքի յուրաքանչյուր միավորի արտադրության հասարակական աշխատանքային ծախսերի մեծությունը, այնքան բարձր կլինի հասարակական աշխատանքի արտադրողականությունը։ Մարքսը գրում է. «...ապրանքի մեջ մտնող աշխատանքի ամբողջ քանակի այս նվազումը պետք է աշխատանքի արտադրողական ուժի էական հատկանիշը լիներ, ինչ հասարակական պայմաններում էլ կատարվեր արտադրությունը, միևնույն է։ Մի հասարակության մեջ, որտեղ արտադրողներն իրենց արտադրությունը կարգավորում են առաջուց կազմած պլանի համաձայն, նույնիսկ ապրանքային

*պարզ արտադրության ժամանակ աշխատանքի արտադրողականությունը կը-
չափվեր անպայման այս մասշտաբով»* (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 3, մաս 1,
Հայպետհրատ, 1947, էջ 245)։

*Սոցիալիստական հասարակարգում, որտեղ գործում են արժեքն իր ձևե-
րով և արժեքի օրենքը, գործնականում կենդանի ու առարկայացած աշխա-
տանքային ծախսերի հաշվառումն իրականացվում է արտադրանքի ինքնար-
ժեքի և նրա գնի միջոցով։ Բայց, ինչպես արդեն ասել ենք, ճիշտը բնաձևային
արտահայտությամբ հաշվառումն էր։*

*Արդյո՞ք տվյալ ցուցանիշները կարելի է օգտագործել հասարակական
աշխատանքի արտադրողականության մակարդակի և դինամիկայի չափման
ու պլանավորման համար։*

*Կենդանի ու առարկայացած աշխատանքային ծախսերի հաշվառումը և
հասարակական աշխատանքի արտադրողականության դինամիկայի հաշվար-
կումը, արտադրանքի ինքնարժեքի և նրա իջեցման միջոցով, ունի էական թե-
րություններ. նախ՝ արտադրանքի ինքնարժեքն արտահայտում է հասարակա-
կան աշխատանքային ծախսերը միջնորդավորված ձևով։ Գների որոշման հա-
մար կարևորագույն հիմք հանդիսացող արտադրանքի ինքնարժեքն իր հերթին
որոշվում է ծախսված արտադրության միջոցների գների հիման վրա, որոնք
ուժեղ կերպով շեղվում են նրանց արտադրության վրա կատարված իսկական
աշխատանքային ծախսերից։ Երկրորդ՝ այդ անուղղակի ձևում արտադրանքի
ինքնարժեքն արտահայտում է հասարակական աշխատանքային ծախսերի մի
մասը։ Արտադրանքի ինքնարժեքի մեջ են մտնում բոլոր տեսակի նյութական
ծախսերը, բանվորների և ծառայողների աշխատավարձն ու աշխատավարձի
վերադիրը, վարչա-կառավարչական ծախսերը, վարկի համար կատարվող
վճարումները և այլն։ Նրա մեջ չեն մտնում այն աշխատանքային ծախսում-
ները, որոնք անցնում են հասարակության տրամադրության տակ որպես զուտ
եկամուտ, և որոնք ավելացվելով ինքնարժեքի վրա, կազմում են արտադրան-
քի արտադրության հասարակական աշխատանքային ծախսերը կամ նրա
արժեքը։*

*Ձեռնարկության մեծածախ գները, որոնք իրենց մեջ ընդգրկում են
ինքնարժեքը և զուտ եկամտի մի մասը, ինչպես նաև արդյունաբերության
մեծածախ գները, որոնք իրենց մեջ ընդգրկում են ինքնարժեքը և ամբողջ
զուտ եկամուտը (ձեռնարկության գին գումարած շրջանառության հարկ),
հարմար չեն որպես հասարակական աշխատանքի արտադրողականության
մակարդակի փոփոխությունների ցուցանիշ օգտագործելու համար։ Արտա-
դրանքի ինքնարժեքի նման նրանք էլ են անուղղակի արտահայտում հասա-
րակական աշխատանքի արտադրողականության փոփոխությունները։ Բայց,
ի տարբերություն արտադրանքի ինքնարժեքի, մեծածախ գները փոփոխվում
են համեմատաբար ավելի մեծ ժամանակաշրջանի ընթացքում։*

*Արտադրանքի ինքնարժեքի և գնի վրա ազդեցություն են գործում նաև
փողի արժեքի փոփոխությունները։*

*Եթե հասարակական աշխատանքի արտադրողականության դինամիկան
չափելու համար վերցնենք արտադրված արտադրանքը համեմատելի գներով
և այն բաժանենք ընթացիկ գներով արտահայտած կենդանի և առարկայացած
աշխատանքային ծախսումների վրա, ինչպես առաջարկում են որոշ տնտեսա-
գետներ, ապա կստանանք արտադրանքի ինքնարժեքի փոփոխությունը։ Հայտ-*



*նի է, որ մեծածախ գները ներկայումս հիմնականում իջնում են արտադրանքի
ինքնարժեքի իջեցմանը համապատասխան և ոչ թե աշխատանքային բոլոր
ծախսումների իջեցմանը համապատասխան։ Այդ պատճառով էլ այդ ձևով
հաշվարկելը ոչ մի նոր բան չի տալիս, բացի ինքնարժեքի փոփոխությունից։
Այնուհետև, եթե որպես համարիչ վերցնենք համեմատելի մեծածախ գների
գումարը, իսկ որպես հայտարար՝ տվյալ ձեռնարկության կամ ճյուղի ընթա-
ցիկ մեծածախ գների գումարը, և եթե այդ ընթացիկ մեծածախ գները տվյալ
տարում չեն փոխվել, ապա ոչ մի փոփոխություն տեղի չի ունենա այդ հա-
րաբերության մեջ և, հետևաբար, այն չի արտացոլի հասարակական աշխա-
տանքի արտադրողականության տվյալ տարում տեղի ունեցած տեղաշարժերը։
Իսկ եթե ընթացիկ մեծածախ գները փոխվել են, ապա ոչ մի երաշխիք չկա
ասելու, որ այդ փոփոխությունը. լիովին համապատասխանում է կենդանի
և առարկայացած աշխատանքային ծախսումների մեջ եղած փոփոխություն-
ներին։ Հետևաբար, հասարակական աշխատանքի արտադրողականության
դինամիկան այս մեթոդով հաշվելը ճիշտ լինել չի կարող։ Նա ճիշտ կարող է
լինել միայն թեորիական անալիզի ժամանակ, բայց ոչ պրակտիկ կյանքում։*

*Այսպիսով, կոմունիզմի առաջին փուլում ամբողջ ժողովրդական տըն-
տեսության մեջ արդյունքների արտադրության վրա կատարվող հասարակա-
կան աշխատանքային ծախսումներն անմիջաբար աշխատաժամանակով որո-
շելու համար տնտեսական ու կազմակերպական նախադրյալների բացակա-
յությունը ստիպում է մեզ գնալ ցուցանիշների սիստեմի օգտագործման
ուղիով։ Ցուցանիշների այդ սիստեմը ելնում է սոցիալիզմի արտադրահարա-
բերությունների առանձնահատկություններից, տնտեսվարման և պլանավոր-
ման կենսական պահանջներից։ Այդ ցուցանիշներն են. մեկ բանվորի հաշ-
վով արտադրվող արտադրանքը, արտադրանքի ինքնարժեքը և ձեռնարկու-
թյունների եկամտաբերությունը։ Այս ցուցանիշները, իրենց ամբողջության
մեջ, հնարավորություն են տալիս, դուրս չգալով աբստրակցիայի շրջանակ-
ներից, ճիշտ պլանավորել արտադրանքի յուրաքանչյուր միավորի արտադրու-
թյան համար հասարակականորեն անհրաժեշտ աշխատանքային ծախսումների
մեծությունը։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսությունն ամեն մի ձեռնարկությու-
նից ու ճյուղից պահանջում է որոշակի չափի և համապատասխան տեսակա-
նու ամբողջական արտադրանքի թողարկում՝ կենդանի ու առարկայացած
աշխատանքային հնարավորին չափ ցածր ծախսումներով։ Ապրանքային ար-
տադրանքի քանակը, ամեն մի ձեռնարկության մեջ մշակված արտադրանքի
արժեքը, արտադրանքի ինքնարժեքը և եկամտաբերության չափը,— ահա այն
ցուցանիշները, որոնց օգնությամբ հնարավոր է լրիվ կերպով հաշվի առնել
աշխատանքի արտադրողականության արդյունքները։ Եթե արտադրվող ար-
դյունքի ծավալը և ինքնարժեքի իջեցումը ճիշտ որոշվի, ապա այդ դեպքում
հնարավոր կլինի սահմանել հասարակական աշխատանքի արտադրողականու-
թյան աճի մոտավոր տոկոսը՝ հաշվի առնելով ինչպես կենդանի, այնպես էլ
առարկայացած աշխատանքային ծախսումները։ Այդ տոկոսը հավասար է
արտադրանքի գումարին և ինքնարժեքի իջեցումից ստացված տնտեսմանը
(համեմատելի գներով)՝ բաժանած ձեռնարկության կամ ճյուղի արտադրանքի
գումարի վրա։ Այս ցուցանիշը կարելի է կիրառել սոցիալիստական տնտե-
սության պրակտիկայում մեկ բանվորի հաշվով արտադրանքի ցուցանիշի հետ
միասին։*

---

Շարունակելով իր շարադրանքը, Հ. Գաբրիելյանը գրքի 265 էջում ասում է. «սեր դեպի ազատություն, դեպի ժողովրդի կուլտուրական բարգավաճումն ու տնտեսական բարեկեցությունը, ահա թե ինչն է Խորենացու ուշադրության կենտրոնում»: Սա հարկավ հեղինակի հնարանքն է, որը նա «հիմնավորում» է Խորենացուց բերված այն տողերով, թե «Տիգրանը յուղով և մեղրով կերակրեց ամեն հասակի մարդիկ» (էջ 266): Ափսո՜ս, որ Մ. Աբեղյանի գործերին ծանոթ Հ. Գաբրիելյանը մոռացել է նրա կարևոր նկատանքը, թե Խորենացու մոտ «կան բաներ, որ մտացածին ու անստույգ են, հետևվանք սխալ քննադատության կամ անվավեր աղբյուրների» (Մ. Աբեղյան, «Հայ հին գրականության պատմություն», հ. 1, էջ 283): Ստույգ աղբյուրների բացակայության շնորհիվ, — գրում է Ստ. Մալխասյանցը,— Խորենացին ակամայից ընկնում է խոշոր սխալների մեջ (տե՛ս Մ. Խորենացու «Հայոց պատմություն», էջ 40—41):

Ակներև է, որ Հ. Գաբրիելյանն անցյալի շատ գործիչներին մոտենում է ոչ հետևողական-քննադատական տեսակետից: Նա առանց որևէ փաստի Խորենացուն վերագրում է այն ընդհանրացված միտքը, որ իբր թե «հայ նախնի մինչև իսկ ղեկավարների հիմնական հոգսը միշտ էլ երկրի անկախության պահպանումն է եղել, ժողովրդի բարեկեցության ապահովումն ու զարգացումը» (էջ 266): Մինչդեռ ինքը հատուկ գլուխ է գրել պավլիկյանների մասին, ուր ջանում է ապացուցել, որ հայ ավատատերերն ու հոգևորականները, ինչպես և Գրիգոր Լուսավորիչը հրով ու սրով բնաջնջել են ըմբոստ հակառակորդներին: Բայց չէ՞ որ դա հակասում է վերոհիշյալ դրույթին:

Տվյալ դեպքում զարմանք է հարուցում այն հանգամանքը, երբ այդ տողերի հեղինակը մոռանում է այն պատմական իրողությունը, որ հայ ազգի ղեկավարները ունեցել են ոչ միայն Վարդանանք, այլև Վասակյանք, որոնց բոլոր ձգտումների հիմքում դրված է եղել ամենից առաջ դասակարգային, անգամ դասային շահը:

Ո՞ր դասակարգի իդեոլոգն է Մ. Խորենացին: Հ. Գաբրիելյանն այս հարցին չի պատասխանում: Միայն թե ասվում են ընդհանուր, մշուշապատ ֆրազներ, որոնք մտքին սնունդ չեն տալիս: Միանգամայն ճիշտ է նա, երբ Խորենացուն գնահատում է իբրև իր դարաշրջանի գիտուն, առաջավոր մտածող, որը կանգնած էր իր ժամանակի գիտության բարձրության վրա: Բայց նա նրան վերագրում է մտքեր ու ընդհանրացումներ, որոնք խորթ են Խորենացու ժամանակին և նրա դասակարգին: «Խորենացին հանդես եկավ որպես ժամանակի առաջավոր տարրերի ներկայացուցիչ: Որպես գիտության մարդ՝ նա կարողացավ յուրացնել ժամանակի առաջադիմական մտքերը և, հակառակ իր ընդհանուր աշխարհայեցողության, հաճախ մեծ հաջողություններով քարոզել այդպիսիք, օգնել իր ժողովրդի ընդհանուր պրոգրեսին» (269): Այս ձևակերպումը թյուրըմբռնման տեղիք է տալիս: Ընթերցողը կարող է կարծել՝ ինչ որ Խորենացու մոտ դրական և պրոգրեսիվ է, դա չի բխել նրա աշխարհայացքից: Ո՞վ էր ստիպում Խորենացուն իր աշխարհայացքին դեմ գնալ: Մի՞թե նրա ընդհանուր աշխարհայացքը պրոգրեսիվ չէր: Ահա այսպիսի տարակուսանքներ է հարուցում հեղինակի վերոհիշյալ պարբերությունը: Բայց տարակուսանքն ավելանում է, երբ կարդում ենք Հ. Գաբրիելյանի մի այլ թեզը. Խորենացին «նեղ-համքարային, կուսակցական համոզումների գերի չէ, ընդհակառակը, նա լայն աշխարհայեցողության տեր մտածող է» (էջ 268), այսինքն՝ անկուսակցական է մտածողության բնագավառում:

Ահա թե ի՞նչ: Նրանք, ովքեր փիլիսոփայության հարցերին մոտենում են կուսակցական տեսակետից, նրանք նեղ համքարներ են, որովհետև իրենց պարտիական համոզմունքներին գերի են: Բայց չէ՞ որ Խորենացուն նման գնահատական տվողին քաջ հայտնի է, որ Լենինը հաճախ էր կրկնում, թե «նորագույն փիլիսոփայությունը նույնպես պարտիական է, ինչպես և երկու հազար տարի սրանից առաջ» (հ. 14, էջ 480): Մենք չենք կասկածում, որ Մ. Խորենացուն ևս վերաբերում է Լենինի ճշմարիտ թեզը:

Խորենացու արժեքավոր ժառանգությունը որևէ մեկին հիմք չի տալիս վաղ ֆեոդալիզմի առաջավոր գործիչներին դեմոկրատացնել, անպարտիականացնել և արդիականացնել: Դա վնասակար և ոչ գիտական փորձ է:

Իր աշխատության 64-րդ էջում Հ. Գաբրիելյանը մի միտք է արծարծում, որի հետ համաձայնել չենք կարող: Նա ասում է, որ Արտավազդ Թագավորի օրոք կար հայկական սոցիոլոգիա: «Մենք կարող ենք ասել, որ Արտավազդի ու նմանների ներկայացրած անտիկ շրջանի սոցիոլոգիական միտքը, շատ կարևոր հարցերում դուրս գալով տիրող անարդարությունների դեմ, այնուամենայնիվ, շարունակել է մնալ գոյություն ունեցող հասարակական սիստեմի տեսական հիմնավորումը, չգնելով դրա արմատական բացաման



հարցը»: Այդ էր պակաս, որ ինքն արքան հասարակական սիստեմի արմատական բացաման մտքին հանգեր: Որքան մեզ հայտնի է, Արտավազդի «սոցիոլոգիայից» և ոչ մի վավերաթուղթ չկա: Մանավանդ անհիմն է ասել, որ այդ սոցիոլոգիան ծառայել է տիրող անարդարությունների դեմ: Եթե ճիշտ է, որ Քրիստոսից առաջ մենք սոցիոլոգիա ենք ունեցել, ապա այդ ինչպե՞ս է, որ «Եզնիկը տակավին սոցիալական կատեգորիայի մասին գիտակցված պատկերացում չուներ» (էջ 180): Չէ՞ որ Եզնիկը ապրել է Արտավազդից 500 տարի անց: Արտավազդյան սոցիոլոգիան կատարյալ մտացածին մի բան է, և անցյալի գունազարդման մի նմուշ:

Հեղինակի դատողություններից հետևում է, որ կարծես թե նախքան քրիստոնեությունը հայ ֆեոդալները չունեին իրենց իդեոլոգիան: Եվ ահա, Հայաստանի տերերը «պարզապես ուզում էին իդեոլոգիական տեսակետից ևս հիմնավորել իրենց տնտեսական ու քաղաքական տիրապետությունը» (էջ 99), ուստի մուծեցին քրիստոնեությունը: Քրիստոնեությունը ներմուծված է Հայաստան՝ երկրի անկախությունը պահպանելու միտումով, ասում է Հ. Գաբրիելյանը: Չենք առարկում, որ մասամբ դա ճիշտ է: Սակայն հեղինակը անտեսում է այն էական հանգամանքը, որ շատ երկա՜ր ժամանակ քրիստոնեական կրոնը տարածվում էր հայ շինականության և ռամկության շրջաններում, որտեղ սոցիալական բազա կար դրա համար: Այն պարագային, երբ հայ ավատատերերի իշխանությունը քրիստոնեությունը սահմանեց իբրև պետական կրոն, վերջինս արդեն բավականին տարածված էր: Լինելով ստրուկների և ճնշվածների կրոն, նախնական քրիստոնեությունը բնականաբար պետք է արձագանք գտներ և հայ կեղեքվող զանգվածների շրջանում, հակառակ տերերի կամեցողության: Ուրեմն, երբ հայ իշխող դասակարգը հրաժարվեց իր հեթանոսական գաղափարախոսությունից և որդեգրեց քրիստոնեությունը, նա արդեն կանգնած էր այն փաստի առաջ, որ այն հաղթահարելի չէ: Իհարկե, Հ. Գաբրիելյանի մատնանշած քաղաքական հանգամանքն էլ որոշ դեր խաղաց: Բայց, քրիստոնեության «ներմուծման» այդ բացատրությունը ակներև միակողմանի է:

Անդրադառնալով քրիստոնեության համաշխարհային կրոն դառնալու հարցին, Էնգելսը նշում է, որ նրա արշալույսին Արևելքի երկրներում ամենայն դաժանությամբ տիրապետում էր զանազան կրոնների ծեսերի և արգելքների պրակտիկան, որն ի վերջո հին աշխարհի «մոտալուտ անկման պակաս չնպաստեց»: Բազմաստվածության օրոք տարբեր կրոններ դավանող ժողովուրդները չէին կարողանում առօրյա գործերին ընթացք տալ, թշնամական կրոնների արգելքների հետևանքով, ասում է Էնգելսը: «Մարդու այս անջատումը մարդուց՝ հին Արևելքի կործանման հիմնական պատճառներից մեկն էր: Մինչդեռ քրիստոնեությունը չուներ մարդկանց անջատող ծեսեր, չուներ անգամ զոհաբերություն և կլասիկ հին աշխարհի թափորները: Այսպիսով, ժխտելով բոլոր ազգային կրոնները և նրանց ամենին հատուկ ծիսականությունը, դիմելով անխտիր բոլոր ժողովուրդներին, ինքը քրիստոնեությունը դառնում է առաջին հնարավոր համաշխարհային կրոնը»: Սա հարկավ հարցի մի կողմն է: Իսկ մյուսն էլ այն է, որ «քրիստոնեությունը հնչել ստիպեց այն լարին, որը պետք է արձագանք գտներ բազմաթիվ սրտերում» (Маркс—Энгельс «О религии», стр. 157): Հայաստանում քրիստոնեության տարածման հարցն արծարծելիս պետք է հաշվի առնել վերոհիշյալ կարևոր հանգամանքը:

Մտքի հստակություն, հետևողականություն, կոնկրետություն՝ ահա թե ինչն է պակասում Հ. Գաբրիելյանին: Թե ոչ, ինչպե՞ս հասկանալ, որ «Զունենալով իրավունքներ, կամ ունենալով այդպիսիք շատ «սահմանափակ «շրջանակներում» հայ շինականները մեծ պարտավորություն էին կրում»: Մեզ թվում է, որ նման ձևակերպումները ընթերցողին խանգարում են որոշակի գաղափար կազմելու պատմական անցյալի կարևոր երևույթների մասին:

Իրականում, հեղինակի եզրակացությունները հաճախ քմածին են և ոչ մի կապ չունեն բերված նյութի հետ: Ահա, օրինակ, կարդում ենք, որ «ըստ Ագաթանգեղոսի՝ նոր բույսի և կամ թե կենդանու առաջացման համար անհրաժեշտ է սովորական բնական մի գործողություն, այն է՝ բեղմնավորում: Ոչինչ առանց բեղմնավորման առաջանալ չի կարող»: Սրան հաջորդում են Ագաթանգեղոսի խոսքերը, որ «սերմանի նախ սերմն յարգանդ, և ապա ծառացեալ մարդահասակ պատկեր աստուածութեանն»: Հեղինակը հեղինակավոր տոնով ասում է, թե «ստացվում է, որ բուսական կամ կենդանական աշխարհի ուսումնասիրության համար մենք բնության օրենքների ուսումնասիրությանը, և ոչ թե գերբնական ուժերի օգնությանն է, որ պիտի դիմենք» (էջ 115):

Որ կենդանական աշխարհում (կաթնասուններ, ողնաշարավորների մոտ) առանց բեղմնավորման չկա բազմացում, դա գիտեին Ագաթանգեղոսից էլ առաջ: Եվ պետք է ենթադրել, որ Ագաթանգեղոսն էլ այդ տարրա-

վանդ, որ Հ. Գաբրիելյանը գրում է, թե «Դավիթը հնարավորություն է ունենում հիմնականում մնալու իրականության ու դրա երևույթների ճանաչողության մակարդակի վրա և ոչ թե իջնել ամեն բանին կուրորեն հավատալու աստիճանին, որը կրոնի սկզբունքն է» (էջ 413)։ Նա գրում է, որ «ըստ Դավթի՝ գիտության զարգացումը ոչ թե աստվածաբանությունից է սկսվում... այլ բնագիտությունից, նյութի ճանաչողությունից, որը մեր բնությունն է և մեր կեցության աղբյուրը։ Ընդհանուր առմամբ Դավիթը ճիշտ է դատում» (էջ 415)։ Եթե սրան ավելացնենք այն, որ «Դավթի մտքերը պարզ են, արևելյան ֆանտազիայից, կրոնական միստիցիզմից զերծ» (էջ 422), ապա Հ. Գաբրիելյանը իրականում կրկնում է Վ. Չալոյանի asածները։ Այստեղ է ասված, որ թեև գերմանացին ֆրանսիացուն չի սիրում, բայց նրա գինին մեծախորժակով է խմում։ Հ. Գաբրիելյանի մոտ Դավիթ Անհաղթը գերազանցապես մատերիալիստի կերպարանքով է հանդես գալիս։

Անդրադառնալով Մայրավանեցու սոցիալական հայացքին, Հ. Գաբրիելյանը գրում է. «Մայրավանեցին հարուստների ընչազրկման հարց չի դնում, համարելով այդ անարդարացի, բռնություն։ Նա բռնության հակառակորդ է և այդ տեսակետից նախորդների՝ ոչ միայն պավլիկյանների, այլև Եզնիկ Կողբացու, Մովսես Խորենացու և Եղիշեի, ճիշտ հակադիրն է» (էջ 489)։ Հետևաբար, վերջին մտածողները կողմնակից են, որպեսզի բռնությամբ հարուստները ընչազրկվե՞ն։ Սա թեև մի գյուտ է, բայց կատարյալ անհեթեթություն։ Մերթ Մայրավանեցին հանդես է գալիս ֆեոդալական անհավասարությունները մերկացնողի դերում (էջ 485) և մերթ նա «կոչ արեց համակերպվել գոյություն ունեցող իրերի վիճակի հետ» (էջ 555)։ Եվ Հ. Գաբրիելյանի գրքում բոլոր մտածողների մոտ այսպես հակասալի և անհասկանալի է իրերի բուն վիճակը, որից գլուխ հանելը հեշտ գործ չէ։

Անդրադառնալով Շիրակացու հայացքներին, Հ. Գաբրիելյանը հետևելով նրան շեշտում է, որ «հայերը հնում զարգացած բնագիտություն են ունեցել, և իր արածը ոչ այլ ինչ է, բայց եթե կրճատումը, ավելացումը և հանրամատչելի շարադրումն այն ամենի, ինչ ստեղծված է եղել մեր նախնիքների կողմից» (էջ 494)։ Այսպիսով, ճիշտ է վարվում հեղինակը, երբ նշում է մեր ժողովրդի մտավոր զարգացման կապը։ Գաբրիելյանը համաձայն է Շիրակացու հետ, որ «հայերի մեջ էս այսպես կոչված ճշգրիտ գիտությունները տարածված են եղել» մինչև իր հանդես գալը։ Նա համաձայնվում է նրա հետ և այն դեպքում, երբ Շիրակացու օրոք «հայ միտքը տակավին ամենուրեք անոտիապաշտության գերի է» (էջ 506—507), և «չկար մի հայ մարդ, որն իմաստության ուսմունքին ծանոթ լիներ»։ Մեզ թվում է, որ Հ. Գաբրիելյանը պետք է նկատեր, որ երկու դեպքումն էլ որոշ չափազանցություններ կան Շիրակացու մոտ և դրանք կրկնելու հարկ չկար։ Նմանապես հարկ չկար խոսել մեծ մտածողի «մանկական անիմաստ հնարամտությունների» մասին։

Հ. Գաբրիելյանը բերում է Շիրակացու խոսքերը, թե հեթանոս փիլիսոփաները բանդագուշանք էին թույլ տալիս գոյը նյութ համարելով։ «Թվում է թե հարցը պարզ է, Շիրակացին հրաժարվում է մատերիալիստների մասին անգամ խոսք ասել, ուստի նա հետևողական աստվածաբան է։ Սակայն դա միայն թվում է. իրականն այն է, որ մի երեք տող հետո նույն Շիրակացին գրում է. «Բայց հաւանիմ յիսկզբանն փոքր ինչ հիշատակել և զանաստուածիցն բարբաջանս» (էջ 516)։ Շիրակացին ցանկանում է հիշատակել և անաստվածների «բարբաջանքներ»-ը։ Այս պարզ ու փիլիսոփայազուրկ մտքից Հ. Գաբրիելյանը կատեգորիկ տոնով ասում է. «Աստվածաբան Շիրակացին իր տեղը զիջում է գիտնական Շիրակացուն» (էջ 516), որը «հին մատերիալիզմի վերականգնման մի փորձ է» անում (էջ 518)։ Անգամ, ըստ Շիրակացու, «բնության մեջ իշխում է հակասությունների միասնության օրենքը», որը «հերակլիտյան ուսմունքի առողջ արձագանքն էր Հայաստանում» (էջ 522)։ Բայց անհիմն չէ՞ Շիրակացուն Հերակլիտի աշակերտ համարելը, որը «բոլոր տեսակի շարժումների վերջնական պատճառը աստվածն է» համարում (էջ 523), ըստ որի «կյանքի ստեղծողն աստվածն է» (էջ 523) և այլն։

Հ. Գաբրիելյանը ջանում է մի շարք անցյալի մտածողների ինչ գնով էլ լինի արդի պատմուճան հագցնել։ Որպեսզի Շիրակացուն հակակղերական դարձնի, նա ցիտում է. «Այսօր փաստ է, որ «բազում ամիսք նոյն են զոր թագաւորք յիւրեանց անուանն անուանեցին». օրինակ ձեզ այն, որ «Հռոմի առաջին կայսրը Կայիոս, որ Յուլիոս անվանվեց, իր թագավորության ամիս Կունտիլիոսը իր անվան նմանողությամբ հուլիս անվանեց»։ Իհարկե,— ասում է Հ. Գաբրիելյանը,— սա ձևավորված մատերիալիստական իմացաբանություն չէ, բայց դրա հակակղերական, հակաիդեալիստական ընդհանուր տենդենցը ակնհայտ է» (էջ 527)։ Եվ ոչ մի հակակղերականություն և ոչ մի մատերիալիստական իմացաբանություն չկա այդ տողերի մեջ։ Այդ պարզ ու հասարակ հավաստիացումից չի կարելի մտածողին վե-



րագրել չեղած բաներ։ Սա առնվազն լուրջ չէ։

Հեղինակը գրում է, թե Շիրակացին ծառացել է ֆեոդալական անհավասարության դեմ։ Սրա օգտին չի բերվում ոչ մի փաստ։ Միայն թե ասվում է, որ ըստ Շիրակացու, մարդկանց չար կամ բարի լինելը ի բնե չէ, այլ հանգամանքների հետևանք։ Բայց դա ապացույց չէ։ Մինչդեռ հեղինակի մոտ Շիրակացու բնագիտական հայացքները շատ աղոտ են շարադրված։

Բնավ լավ հետևանքներ չեն ստացվում, երբ Հ. Գաբրիելյանը կորցնում է չափի զգացումը։ Այս դեպքում նա պարզապես հնարում է իրողություններ և անցքեր, որոնք պատմականորեն գոյություն չեն ունեցել։ Իր աշխատության մեջ նա այն միտքն է պնդում, որ իբր թե մինչև հայկական այբուբենի կիրառումը Հայաստանում եղել է հարուստ գրականություն, այդ թվում և փիլիսոփայական գրականություն, որը ոչնչացվել է Գրիգոր Լուսավորչի և նրա գաղափարակիցների կողմից։ Նա վկայակոչում է Պլուտարքոսին, ըստ որի, 53 թվականին (մ.թ.ա.), «Հայկական բեմի վրա ցուցադրվում էին ոչ միայն օտար, այլև ազգային հեղինակների գործերը... Արտավազդ Բ ժամանակի հայ մեծ գրողներից մեկն էր, որը բազմաթիվ տրագեդիաներ է գրել» (էջ 32)։ Սակայն իրականում Պլուտարքոսը հիշատակել է միայն այն, որ Արտավազդը հունարեն լեզվով տրագեդիաներ և այլ գործեր է գրել։ Բայց նա և ոչ մի խոսք չի ասել ազգային այլ գրողների մասին։ Հ. Գաբրիելյանն է հորինում, որ Արտավազդի օրոք «հայ լեզուն... արդեն գրավոր լեզու էր, հայերեն գրքեր էին գրվում։ Այդ մասին վկայություններ են տալիս Մովսես Խորենացին և մյուս հայ հին պատմագիրները» (էջ 32—33)։ Խորենացին կամ մեկ այլ պատմիչ նման բաներ չեն գրել։

Հ. Գաբրիելյանը լուրջ տոնով «համոզում» է ընթերցողին, որ իբր թե քրիստոնեությունից առաջ Հայաստանի «բոլոր խոշոր քաղաքներում էլ» թատրոնական «հատուկ շենքեր կային հատկացված», որ «գործել է հայկական ինքնատիպ գուսանների թատրոնը» և այլն և այլն (էջ 32)։ Այստեղ էլ կարդում ենք, որ «Արտաշատում բեմադրվում էր Եվրիպիդեսի «Վակխանալները»։ Իսկ հայտնի է, որ Եվրիպիդեսը գրել է «Բաքոսուհիներ» («Вакханки»), բայց ոչ «Վակխանալներ»։ Նման հեհորինվածքների թվին է պատկանում նաև հեղինակի այն հաղորդումը, որ իբր թե, ոմն Աբգար մեծ գործ է կատարել և հույն-հռոմեական հեղինակներին թարգմանել է հայերեն (էջ 33)։ Պատմագիտությանն Աբգար թարգմանիչ հայտնի չէ։

Քննարկվող գրքում կարդում ենք, որ Հայաստանում մինչ քրիստոնեության մուտքը եղել են ստոյիկյաններ (էջ 49), էպիկուրի (էջ 50), Հերակլիտի (էջ 52) և Դեմոկրիտի (էջ 53) հայ հետևորդներ։ Այս հիպոթեզը «ապացուցվում» է Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոց»-ի վկայակոչությամբ։ Իսկ պատմագետները վաղուց ապացուցել են, որ Եզնիկի գրքի հենց այդ մասին խոսող հատվածները՝ ուղղակի թարգմանություններ են հունական աղբյուրներից առնված։

Ճիշտ չէ միաժամանակ Հ. Գաբրիելյանը, երբ ասում է, թե «հայերի մասին մեր ունեցած գրավոր տեղեկությունները գալիս են դեռ 7-րդ դարից (մ.թ.ա.)» (էջ 26)։ Գիտությունը հայտնաբերել է գրավոր վկայություն հայերի մասին 6-րդ դարում։ Նա գրում է, որ Արտաշեսյան դինաստիան «երկրի և ժողովրդի քաղաքական միավորման առաջին քայլն է» (էջ 26—27)։ Պատմագիտությունը վաղուց ապացուցել է, որ Հայաստանի տերիտորիայի վրա եղել են և այլ պետական ու քաղաքական միավորումներ՝ Երվանդյանները և այլն։

Այլոց ազգային սնապարծության մեջ մեղադրող Հ. Գաբրիելյանն առանց որևէ ապացույցի պնդում է, թե Պարույր Հայկազնը խոշոր գործ է կատարել «ընդհանուր փիլիսոփայական կուլտուրայի զարգացման գործում» (էջ 68)։ Կամ թե որևէ հիմք կա՞ ասելու, որ աստվածաբան Մամբրեն «երկրագործի աշխատանքը մեծ հեղափոխիչ ուժ է համարում» (էջ 287)։ Իհարկե ոչ։ Աշխատության 212-րդ էջում կարդում ենք. «Պարսկաստանից այլևս վտանգ չէր սպասվում։ Այդ հանգամանքը մեծ չափով նպաստում է ֆորմալ տրամաբանության զարգացման գործին»։ Նման տրամաբանությամբ ֆորմալ տրամաբանության ծագումը չես բացատրի։ Ինչպես և անհարիր է ասել, թե «Մերժելով աստծու գոյությունը՝ մատերիալիստները մերժում էին նաև թեոլոգիան» (էջ 42)։ Եթե գիրքը չունենար վրիպակների ցանկ, կարելի էր խորհել, թե խոսքը թեոլոգիայի մասին է։

Դժբախտաբար այս կարգի հորինվածքներ շատ կան Հ. Գաբրիելյանի աշխատության մեջ։

Հ. Գաբրիելյանի գիրքն ունի լուրջ թերություններ և իր գիտական ապարատում։ Մենք գտնում ենք, որ բնավ հարկ չկար ցիտատները հրապարակել գրաբար ձևով, որոնք հնարավորություն չեն տալիս ընթերցողին համոզվելու հեղինակի հետևությունների ճշտության մեջ։ Տարօրինակն այն է, որ հաճախ միևնույն էջում զետեղված են թե՛ գրաբար և

թե՛ աշխարհաբար ցիտատներ միևնույն գրքից։ Ընթերցողը մնում է խիստ տարակուսանքի մեջ այն առթիվ, թե միևնույն գիրքը գրաբա՞ր է, թե՞ աշխարհաբար։ Այսպիսի երևույթներ կան 49—50, 114—115, 130, 142, 147, 155 և բազմաթիվ այլ էջերում։

Բացի այդ, շատ և շատ ցիտատների աղբյուրները երբեք չեն նշվում։

Աշխատության մեջ նկատվում են ոճական ու լեզվական դարձվածքներ, որոնք փիլիսոփայության պատմության մեջ տեղ չպետք է գտնեն։ Գրքում ասված է «ապոլոգետիկ», փոխանակ ապոլոգետ (էջ 152), «քաղցրալուր խոսքերը մատուցելու ժամանակ», փոխանակ արտասանելու ժամանակ (էջ 258), «կոնկրետ պայմաններում դարավերջում Հայաստանում», փոխանակ Հայաստանի դարավերջի կոնկրետ պայմաններում (էջ 304), փիլիսոփա Ցամբլիխը աստվածներից «ամբողջ երամակներ ստեղծել», երամակ լինում է ձիերի կամ ավանակների, բայց աստվածների՝ խումբ (էջ 422), «երևութական շարժման պարագլուխ», փոխանակ շարժման երևութական ըմբռնման (էջ 484), «պայքար ծավալեց զգայականի դեմ», փոխանակ զգայական ըմբռնման դեմ (էջ 90), «մրուրից ազատագրված նյութը», փոխանակ զերծ նյութը (էջ 173), «հարեց պերիպատիկներին», փոխանակ պերիպատետիկներին (էջ 322), «Դիոգենես Լարեցին», փոխանակ Լայերցին (էջ 48), «կենդանական մատերիա», փոխանակ կենդանի մատերիա, (էջ 51), «հանձին քաղաքների զարգացման», փոխանակ շնորհիվ (էջ 85), «ձևավորելով նրա առաջավոր թևը, որպես մեր ազատագրական կռվի տեսական ընդհանրացումը» (էջ 84)։ Ինչպե՞ս կարող է թևը տեսական ընդհանրացում լինել։ Ինչպե՞ս կարդալ. «Իրեն՝ Տիգրան Բ, նրա որդու՝ Արտավազդ Բ» (էջ 27)։ Հեղինակն ամենուր գրում է Զ ա ր ե հ ա ն ե լ յ ա ն, (էջ 33 և այլուր) փոխանակ Զարեհանալյան։ Ի՞նչ է նշանակում թե «հայ եկեղեցին... ազգայնացված էր» (էջ 77)։

Հայ փիլիսոփայական մտքի պատմության հեղինակի աշխատության 299—300 էջերում մի հատված է բերված «Գիրք թղթոց»-ից, որը բացահայտորեն աղավաղված է։ Այստեղ կարդում ենք. «Ասում են, որ աստված ունեցել է երկու որդի. մեկը՝ բանն աստվածը հար և նման (իրեն)»։ Մինչդեռ տեքստում ասված է ոչ թե հար և նման, այլ հոր հավասար։ Այնուհետև կարդում ենք. «Եվ ասում են, թե պետք է տարբերել և պարզապես ասել՝ կատարյալ մարդ, այսինքն՝ ա ս տ վ ա ծ ծ ա ռ, կատարյալ մարդ Հիսուս Քրիստոսը»։ Տեքստում այդ անհեթեթ «աստված ծառ»-ի փոխարեն ասված է՝ կատարյալ աստված։ Այս հատվածի ամենաբնորոշ տողը՝ «կատարյալ աստվածը մարմնացավ կատարյալ Քրիստոսի մեջ» քմահաճորեն հապավել է մեջբերողը։

Ինչպես ցույց է տալիս փաստը, Հ. Գաբրիելյանը միանգամայն անստույգ ցիտումներ է անում երկրորդ ձեռքից, որի հետևանքն էլ տհաճ է լինում։ Այսպես, օրինակ, իր գրքի 371 էջում նա մի նախադասություն է ցիտում Դավիթ Անհաղթի երկից (Հ. Մանանդյանի մեջբերման հիման վրա) և ընթերցողին հղում է «Արարատ» ամսագրի 1904 թվականի համարը, որտեղ զետեղվել է Մանանդյանի հոդվածը Դավթի մասին։ Մանանդյանը ցիտել է Դավթից. «Արդ այսպէս և Աթենա Կ ո յ լ ս լսի. վասն զի ասէին արտաքինքն զԱթենայէ, եթէ ի գլխոյն Արամազդայ ծնաւ»։ Այս խորհրդավոր Կոյլս-ը Դավթի «Սահմանք իմաստասիրութեան» աշխատությունից (էջ 185, Վենետիկ, 1833 թ.) առնված կոյս-ի աղավաղումն է պարզապես, որը «Արարատ»-ում դարձել է Կոյլս, իսկ Հ. Գաբրիելյանն էլ վերցրել է առանց ստուգելու։ Գաբրիելյանի ցիտման մեջ ասված է՝ եթէ գլխոյն, իսկ բնագրում՝ եթէ ի գլխոյն։

Այս բոլորից երևում է, որ մենք չենք կարող համաձայնվել Վ. Ղազանչյանի այն գնահատականին, որը նա տալիս է Հ. Գաբրիելյանի աշխատությանը, դիտելով վերջինս իբրև հայ փիլիսոփայության «ամբողջական» շարադրանք, որում վեր են հանված հայ փիլիսոփայության «ազգային առանձնահատկությունները, սպեցիֆիկ գծերը»։ Մեր կարծիքով, Հ. Գաբրիելյանի աշխատության գլխավոր թերություններից մեկն էլ այդ «առանձնահատկությունների» գրեթե բացակայությունն է։ Մենք համամիտ ենք Վ. Ղազանչյանի հետ, որ Հ. Գաբրիելյանին չի հաջողվել «խուսափել նախօրոք կառուցված սոցիոլոգիական սխեմաներից»։

Չի կարելի մոռացության տալ այն երևույթը, երբ հեղինակը մի շարք մեռած և կենդանի գիտնականներին անհիմն մեղադրանքներ է ներկայացնում։ Այսպես, օրինակ, քննադատելով Մանանդյանին իբրև «բուրժուական նիհիլիստի» (էջ 18), Հ. Գաբրիելյանը եզրակացնում է. «դուրս է գալիս, որ հայերը հնում այնքան էլ անընդունակ չեն եղել, ինչպես Մ ա ն ա ն դ յ ա ն ն է կ ա ր ծ ու մ. համենայն դեպս, կարելի է ենթադրել, որ նրանք ինքնուրույն մեկնություններ ևս գրելու կարողություն են ունեցել» (էջ 358)։ Այս տողերի հեղինակը և ոչ մի փաստ չի կարող բերել, որն ապացուցի, թե Մանանդյանը հայերին ինքնուրույն մտածելու անընդունակ է համարում։ Դա աբսուրդ է։



Հ. Գաբրիելյանը Մ. Աբեղյանին կշտամբում է այն բանի համար, որ իբր թե վերջինս հակամետ է խորհելու, թե «իդեական հոսանքները հրամաններով» են ստեղծվում։ Ընթերցողը հեշտ կնկատի, որ Աբեղյանից բերված ցիտատը հակասում է նրա եզրակացությանը (էջ 475)։

Բոլորովին հնարովի է նրա մեղադրանքը պրոֆ. Ա. Աբրահամյանի հասցեին Շիրակացու սոցիալական ծագման հարցում։ Ինչպես նաև միանգամայն շինծու է նրա հայտարարությունը, թե որպես Զալոյանը «Եզնիկին դնում է Հոլբախի, մինչև իսկ Մարքսի կողքին» (էջ 184)։

Հ. Գաբրիելյանի գրքի առթիվ գրված Վ. Զալոյանի գրախոսության մեջ առանձնապես շեշտված էր, որ «Հայ փիլիսոփայական մտքի պատմության» «մեծագույն մասը... նըվիրված է հայկական աստվածաբանության պատմությանը. մասամբ և հայ ժողովրդի պատմությանը»։ Անշուշտ, Վ. Զալոյանի քննադատությունը զերծ չէ չափազանցությունից։ Բայց իրողությունն այն է, որ գրքի նշանակալի մասը չի վերաբերում փիլիսոփայության պատմությանը։ Որ գիրքը համեմված է աստվածաբանական անհամ ու գիտական որևէ արժեքից զուրկ նյութերով՝ դա Հ. Գաբրիելյանը հերքել չի կարող։ Զալոյանի փաստերը՝ բերված այս նպատակով, կարելի է տասնապատկել, որը համարում ենք ավելորդ։

Փիլիսոփայական մտքի էվոլյուցիայի իրական պատկերը բացակայում է Հ. Գաբրիելյանի գրքում։ Այստեղ իդեաների, կատեգորիաների և մտածելակերպերի ու մեթոդների ծագումն ու պատմական զարգացումը, սրանց օրգանական և տրամաբանական կապը անզգալիության չափ թույլ է։ Սրա պատճառները, մեր կարծիքով, երկուսն են. 1) նախ, հեղինակը չի կարողացել ճիշտ վերծանել սկզբնաղբյուրները, որից և բխում են նրա երբեմն հնարովի, հաճախ անհիմն եզրակացությունները։ Դեռ Մ. Աբեղյանն է ասել, որ «Արիստոտելի, Պորփյուրի և ուրիշ մեծ ուսուցիչների թարգմանությունների լեզուն այնքան բառացի հունարեն է, այնքան «հունարեն է հայերեն բառերով», որ դրանք դժվար է հասկանալ առանց հունարեն բնագրի» (Մ. Աբեղյան, «Հայոց հին գրականության պատմություն» հատոր առաջին, էջ 99)։ Կարծում ենք, որ այս ճըշմարտությունը պետք է հաշվի առնի յուրաքանչյուր ոք, ով ձեռնարկում է հայ փիլիսոփայական մտքի պատմության շարադրանքին։ 2) Իդեաների, հասկացությունների և կատեգորիաների կապը նրա գրքում բացակայում է նաև այն պատճառով, որ գրքում տեղ գտած փիլիսոփաների մի մասը պարզապես փիլիսոփաներ չեն (Մաշտոց, Մամբրե, Մանդակունի և այլք)։ Հ. Գաբրիելյանի աշխատությունը զուրկ է նյութի խոր վերլուծումից և մանավանդ՝ ընդհանրացումներից։

Հ. Գաբրիելյանի և Վ. Զալոյանի միջև ծագած վեճի հիմնական հարցերից մեկն էլ՝ հայ փիլիսոփայական մտքի պարբերացումն է։ Իհարկե ճիշտ չի վարվում Գաբրիելյանը, երբ հասարակական ֆորմացիայի գաղափարը փոխարինում է «անտիկ» շրջանի հասկացությամբ։ Սա արդեն խճճվածության մի աղբյուր է։ Ինչպես երևում է, Վ. Զալոյանը և Հ. Գաբրիելյանը հելլենիզմը դիտում են գերազանցապես իբրև կուլտուրական երևույթ։ Մինչդեռ իրականում հելլենիզմը մի ամբողջ էտապ էր ստրկատիրական հասարակության զարգացման մեջ, որը հասարակական առումով, իհարկե, խարխլում էր տոհմատիրական և համայնատիրական հարաբերությունների ուժեղ մնացորդներն արևելյան ժողովուրդների մոտ և այս առումով՝ պրոգրեսիվ էր։ Քաղաքների և առևտրի զարգացումը հելլենիզմի դրական կողմերից մեկն էր։ Այն ծագելով որպես հունական և արևելյան ստրկատիրության ճգնաժամի արդյունք, չլուծեց և չէր էլ կարող լուծել որևէ սոցիալական հակասություն։ Վիճող մեր երկու փիլիսոփաներն էլ կոնկրետ չեն վերհանում այն կարևոր իրողությունը, որ արևելյան երկրներն էլ պակաս չազդեցին հելլենիզմի վրա՝ այն ընդունելով յուրովի։ Մանավանդ հելլենիզմն ընդունող հայ ժողովուրդն ուներ իր կուլտուրան և իդեոլոգիան, ավելի հին, քան հելլենիզմն էր բերում։

Թե՛ Գաբրիելյանը և թե՛ Զալոյանը անտեսում են նաև այն կարևոր հանգամանքը, որ թեև հելլենիզմը բավարար հիմքեր չուներ համաշխարհային կրոն ստեղծելու համար, բայց և այնպես այն իր տեղությամբ արագացրեց քրիստոնեության համաշխարհային կրոն լինելու պրոցեսը։ Ուստի, երբ խոսք է լինում Հայաստանի և առհասարակ Արևելքի հելլենացման մասին, չպետք է մոռանալ, որ կատարվեց և Արևմուտքի արևելացման պրոցեսը։ Եթե Հ. Գաբրիելյանը համոզիչ փաստերով ցուցահաներ այս իսկությունը, դա կնշանակեր, որ նա մասամբ կցուցահաներ և հայ փիլիսոփայական մտքի առանձնահատկությունները։ Չէ՞ որ աստվածաշնչի բնագրի թարգմանությունը հունարենի՝ խոշոր ազդեցություն ունեցավ և՛ հունական, և՛ ողջ Արևմուտքի մտածողության վրա։ Հ. Գաբրիելյանը եթե մեզ ցուցահաներ, թե ինչպես հելլենիզմը Հայաստանում զգալի չափով խթանեց մոնոթեիզմին, իհարկե, դա շնորհակալ գործ կլիներ։ Մոնոթեիզմի գաղափարը,

որը բերեց Արևելք հելլենացումը: դա ըստ էության հուդայական Յեհովայի պաշտամունքն էր՝ առանց հուդայականության ծեսերի:

***

«Հայ փիլիսոփայական մտքի պատմության» շուրջը ծագած վիճաբանությունից հետևում է, որ Հ. Գաբրիելյանի գործը կարիք ունի արմատական վերամշակման: Ոչ թե պետք է բավարարվել հայտնի աղբյուրների կրկնողական ուսումնասիրությամբ, այլ անհրաժեշտ է երկարատև ու բրտնաջան աշխատանքով հետազոտել այն բազմաթիվ սկզբնաղբյուրները և ձեռագրերը, որոնք սպասում են իրենց մարքսիստ հետազոտողներին:

Հայ փիլիսոփայության պատմության գիտական մշակման լավագույն և հուսալի ձևերից մեկը պետք է համարել մեր մտածողների հայտնի և դեռ չուսումնասիրած երկերի հիման վրա՝ մոնոգրաֆիաների հրապարակումը: Այդ ուղղությամբ կատարված Վ. Չալոյանի, Լ. Խաչիկյանի, Արևշատյանի և այլոց աշխատանքները պետք է համարել լուրջ քայլեր մեր փիլիսոփայական մտքի պատմության մշակման գործում: Անհրաժեշտ է, որպեսզի ՀԳԱ փիլիսոփայական սեկտորն իր ուժերի զգալի մասը կենտրոնացնի հայ փիլիսոփայության պատմության հարցերի մշակման վրա:

Մյուս կողմից չի կարելի նորմալ համարել, երբ ՀԳԱ հրատարակչությունը անբավարար աշխատանք է ծավալում անցյալի հայ մատենագիրների և փիլիսոփաների երկերն աշխարհաբար լույս ընծայելու ուղղությամբ: Նախաձեռնության դեպքում, ՀԳԱ կարող է առաջիկա ութ-տասը տարում հրապարակել հայ պատմագետների և փիլիսոփաների աշխատությունները աշխարհաբար լեզվով, որը մեծ չափով կնպաստի հայ մտքի պատմության մշակման գործին:

Հայ փիլիսոփայական մտքի պատմության մշակումը պահանջում է մեր բոլոր կարող ուժերի ստեղծագործական աշխատանքն այդ կարևոր գործը գլուխ բերելու համար: Եթե առաջիկա տարիներում հայ մտքի կարևոր ներկայացուցիչների և տարբեր շրջանների ուսմունքներին նվիրված մենագրություններ հրապարակվեն, ապա դրանով իսկ կստեղծվեն ռեալ նախապայմաններ փիլիսոփայության պատմության մի ընդհանուր կուրս մշակելու համար:

Պատասխանելով Վ. Չալոյանին, Հ. Գաբրիելյանը փաստորեն խույս տվեց ըստ էության խոսելուց և փորձեց ընթերցողների ուշադրությունը շեղել այլ ուղղությամբ: Զպետք է մոռանալ Լենինի խոսքերը, որ կուլտուրայի և հասարակական մտքի հարցերի մշակման բնագավառում ամեն մի հապճեպություն խիստ վնասակար է: Մտքի զարգացման բարդ հարցերը լուծելու համար հարկավոր է վերցնել ո՛չ թե օրինակներ և ո՛չ թե առանձին տվյալներ,— ասում է Լենինը,— (հասարակական կյանքի երևույթների վիթխարի բարդության առկայությամբ կարելի է ուզած քանակի օրինակներ և առանձին տվյալներ որոնել ու գտնել՝ ուզած դրույթը հաստատելու համար), այլ քննվող երևույթը վերլուծել իր ա մ բ ո ղ ջ ա կ ա ն ո ւ թ յ ա ն, միջնորդավորված, հաճախ խճճված կապակցությունների մեջ: Իսկ այդ անելու համար անհրաժեշտ է մեծ և ինքնուրույն աշխատանք թափել, առանց որի հնարավոր չէ հասնել ճշմարտությանը:

Հուսով ենք, որ Հայպետհրատի ղեկավարները, ինչպես և «Հայ փիլիսոփայական մտքի պատմություն» աշխատության պատասխանատու խմբագիր (փիլիսոփայական գիտությունների դոկտոր) Ա. Կարապետյանը առաջիկայում ավելի պատասխանատվության գիտակցումով կվերաբերվեն հրատարակչական գործին:

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք,
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении. тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 02671 Պատվեր 732 Տիրաժ 6400

Տպ. 8 մամուլ, մամուլում 63.840 նիշ: Ստորագրված է տպագրության 15/III 1957 թ.

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51: